ISSN 0130—8114



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10·1979

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е










## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում

# ԻՐԱՎԱԿԱՐԳԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ԵՎ ԻՐԱՎԱԽԱԽՏՈՒՄՆԵՐԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՆ ՈՒԺԵՂԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննության է առել իրավակարգի պահպանության աշխատանքը բարելավելու և իրավախախտումների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու հարցը։*

*Ընդունված որոշման մեջ նշվում է, որ մեր երկրում, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներին, ՍՍՀՄ սահմանադրության դրույթներին համապատասխան, հետևողականորեն վարվում է սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդման կուրս։ Կարևոր միջոցառումներ են իրականացվել օրենսդրությունը կատարելագործելու, իրավապահպան մարմինների գործունեությունը բարելավելու, հասարակայնության ակտիվությունը զարգացնելու և իրավակարգի պահպանության գործում նրա դերը բարձրացնելու ուղղությամբ։ Այս ամենը անհրաժեշտ պայմաններ է ստեղծում իրավակարգի ամեն տեսակ խախտումներն արմատախիլ անելու, հանցագործությունները, դրանք ծնող պատճառները վերացնելու համար։*

*Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ իրավակարգի ամրապնդման խնդիրները առայժմ բավարար արդյունավետությամբ չեն լուծվում։ Իրավախախտումների դեմ մղվող պայքարում լրիվ չեն օգտագործվում պետական և հասարակական ներգործության, մարդկանց դաստիարակության միջոցները։ Այդ աշխատանքում պակասում են նպատակասլացությունը, կոմպլեքսային մոտեցումը և կուսակցական, պետական, տնտեսական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների գործողությունների միասնությունը, հաճախ դրանում չեն ներգրավվում աշխատավորների լայն մասսաները։*

*ՍՄԿԿ Կենտկոմը սահմանել է կոնկրետ միջոցառումներ, որոնք նպատակամղված են իրավախախտումների կանխարգելման հետագա բարելավմանը, հանցագործությունների և այլ հակահասարակական դրսևորումների դեմ պայքարի ուժեղացմանը, բոլոր քաղաքացիների և պաշտոնատար անձանց կողմից սովետական օրենքների անշեղ կիրառմանը։*

*Հատուկ ուշադրություն է հրավիրված այն բանի վրա, որ անհրաժեշտ է կատարելագործել դատախազության, ներքին գործերի, արդարադատության մարմինների և դատարանների գործունեությունը, որոնք կոչված են կանգնած լինելու սովետական օրինականության, հասարակության շահերի, սովետական քաղաքացիների իրավունքների պաշտպանության դիրքերում։ Իրավապահպան մարմինները պետք է անզիջում կերպով և վճռականորեն պայքար մղեն հանցագործությունների դեմ, զարգացնեն և ամրապնդեն կապերը աշխատավորական կոլեկտիվների ու հասարակայնության հետ։ Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ կուսակցությունը այդ մարմիններից սպասում է «է՛լ ավելի մեծ նախաձեռնո-*

թյուն, սկզբունքայնություն, անհաշտություն սովետական իրավակարգի ամեն տեսակ խախտումների դեմ մղվող պայքարում»:

ՍՍՀՄ դատախազությանը և ՍՍՀՄ ներքին գործերի մինիստրությանն առաջարկված է վերացնել ենթակա մարմինների աշխատանքում եղած թերությունները, բարձրացնել կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ամրապնդել աշխատողների կարգապահությունը և բարելավել նրանց պրոֆեսիոնալ պատրաստությունը, ապահովել նրանց գործունեության մեջ սոցիալիստական օրինականության խստագույն կիրառումը:

Կուսակցական կոմիտեները կոչված են ուժեղացնելու վերահսկողությունը իրավապահպան մարմինների աշխատանքի նկատմամբ, միջոցներ ձեռնարկելու դրանք պատրաստված կադրերով ամրապնդելու համար, բարձրացնելու կուսակցական կազմակերպությունների դերը աշխատողներին կոմունիստական կուսակցության գործին անսահման նվիրվածության, իրենց ծառայողական պարտքի անբասիր կատարման, իրենց աշխատանքի արդյունքների քննադատական գնահատման, քաղաքական բարձր զգոնության ոգով դաստիարակելու համար: Մշտական հոգատարություն ցուցաբերել հասարակայնության հետ իրավապահպան մարմինների կապերն ընդլայնելու և ամրապնդելու, նրանց շուրջը հարգանքի և աջակցության մթնոլորտ ստեղծելու նկատմամբ:

Կուսակցական կոմիտեներին և սկզբնական կուսակցական կազմակերպություններին առաջարկված է սիստեմատիկաբար քննության առնել իրավակարգի պահպանության և իրավախախտումների դեմ մղվող պայքարի հարցերը, իրավապահպան մարմինների հետ համատեղ նախատեսել և իրականացնել այդ աշխատանքի հետագա բարելավման և նրա արդյունավետության բարձրացման կոնկրետ միջոցառումներ: Անհրաժեշտ է ընդմին հաշվի առնել սովետական մարդկանց ավելի մեծ անհանդուրժողությունը ամեն տեսակ հակահասարակական դրսևորումների նկատմամբ: Հաստատակամորեն հասնել հանցագործությունների խսպառ վերացման, այդ համապետական խնդրի լուծման համար ոտքի հանել աշխատավորների լայն մասսաներին: Ապահովել, որ յուրաքանչյուր ղեկավար, կոմունիստ և կոմերիտական լինի բարոյական մաքրության, սովետական օրենքների անշեղ կիրառման օրինակ, օրինակելի սոցիալիստական իրավակարգի համար պայքարող ակտիվ մարտիկ:

Կուսակցական կոմիտեներն իրավախախտումների դեմ մղվող պայքարում պետք է միավորեն և կոորդինացնեն կուսակցական, պետական, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների, գաղափարախոսական հիմնարկների, ընտանիքի և դպրոցի ջանքերը: Անհրաժեշտ է համարվել, որ աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների աշխատանքի հեռանկարային և տարեկան պլաններում բովանդակվեն իրավախախտումների կանխարգելման կոմպլեքսային միջոցառումներ:

Միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին հանձնարարված է բարձրացնել սովետական մարմինների դերն ու պատասխանատվությունը օրինականության և իրավակարգի ամրապնդման համար, այդ գործում սովետների գործկոմների հանձնաժողովների, դեպուտատական խմբերի, յուրաքանչյուր դեպուտատի ակտիվությունը: Կանոնավոր կերպով այդ հարցերը քննարկել սովետների նստաշրջաններում և գործկոմների նիստերում: Լսել իրավապահպան մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների ղեկավարների հաշվետվություններն ու հաղորդումները հասարակական կարգի պահպանության ուղղությամբ կատարվող աշխատանքի և իրավախախտումների դեմ մղվող պայքարի մասին:

Կուսակցական, սովետական, իրավապահպան մարմինների, մյուս պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների առջև խնդիր է դրված՝

**Բարելավել հասարակական կարգի պահպանությունը քաղաքներում և մյուս բնակավայրերում:** Ամրապնդել միլիցիայի պարեկապահակային ծառայությունը: Կատարելագործել քրեական հետախուզության և հետաքննության աշխատանքը:

Բարձրացնել միլիցիայի տեղամասային տեսուչների դերը իրավակարգի պահպանության գործում, ընդլայնել նրանց կապը բնակչության հետ: Կազմակերպել միլիցիայի ամենօրյա փոխգործողություն կամավոր ժողովրդական դրուժինաների հետ:

**Հետևողականորեն ու հաստատակամորեն պայքար մղել հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ:** Ստուգել այդ հարցերի վերաբերյալ ավելի վաղ ընդունված որոշումների կատարման ընթացքը և արդյունքները քննարկել կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում: Առավել ներգործուն միջոցառումներ իրականացնել հարբեցողության կանխարգելման, հարբեցողների վրա հասարակական և իրավական ներգործությունն ուժեղացնելու, ոգելից խմիչքների առևտրի սահմանված կանոնները խստիվ կիրառելու, նարկոլոգիական հիմնարկների ցանցը ընդլայնելու ուղղությամբ, այդ թվում՝ ձեռնարկություններում: Ակտիվացնել հակաալկոհոլային պրոպագանդան, այն դարձնել ավելի համոզիչ ու ներգործուն:

**Կատարելագործել ուսումնական հաստատություններում, աշխատավորական կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի անչափահասների շրջանում իրավախախտումները կանխելու աշխատանքը:** Բարելավել անչափահասների հետ կատարվող անհատական աշխատանքը: Ավելի լայնորեն զարգացնել վարպետ-դաստիարակների շարժումը, շեֆությունը: Սովետական, արհմիութենական, կոմերիտական և սպորտային կազմակերպությունները, կուլտուրայի հիմնարկները, լուսավորության և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության մարմինները, ստեղծագործական միությունները և իրավապահպան մարմինները պետք է լրացուցիչ միջոցառումներ մշակեն անչափահասների շրջանում կատարվող դաստիարակչական աշխատանքը բարելավելու և իրավախախտումները կանխելու ուղղությամբ:

**Ուժեղացնել պայքարը սոցիալիստական սեփականության վրա կատարվող ոտնձգությունների դեմ:** Ամենուրեք խիստ կարգ ու կանոն հաստատել նյութական արժեքների հաշվառման ու պահպանման գործում, վճռականորեն արմատախիլ անել անտնտեսավարությունը, շռայլությունը, հավելագրումներն ու աչքակապությունը: Հատուկ ուշադրություն դարձնել գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, շինարարության մեջ հափշտակությունների դեմ պայքարն ուժեղացնելու վրա: Բարելավել վերահսկիչ-վերստուգիչ ապարատի գործունեությունը: Ամրապնդել միլիցիայի ԲԽՍՍ-ի ծառայությունը: Բարձրացնել սոցիալիստական սեփականության պահպանման վերաբերյալ օրենքների կիրառման նկատմամբ դատախազական հսկողության սրությունն ու սկզբունքայնությունը:

**Ակտիվացնել պորտաբուծության և սպեկուլյացիայի դեմ մղվող պայքարը:** Ապահովել հանրօգուտ աշխատանքից խուսափող անձանց ժամանակին հայտնաբերելը: Հասնել կոլեկտիվներում նրանց աշխատանքի տեղավորմանը և ամրացմանը: Օրենքով նախատեսված ներգործության միջոցներ կիրառել նրանց նկատմամբ, ովքեր համառորեն չեն ուզում աշխատել:

Իրավախախտումների կանխարգելման գործում հիմնական ուղղությունը պետք է դառնա այդ աշխատանքի ուժեղացումը աշխատավորական կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի: Ղեկավարվելով «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, անհրաժեշտ է զգալիորեն բարելավել գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակությունը յուրաքանչյուր կոլեկտիվում, բնակչության բոլոր խմբերի և մանավանդ երիտասարդության, դեռահասների շրջանում: Անհանդուրժողության մթնոլորտ ստեղծել ժողովրդական բարիքը հափշտակողների, անուղղելի խուլիգանների, կաշառակերների նկատմամբ:

Իրավակարգի ամրապնդման գործում պետք է բարձրացնել բանվորական ժողովների, ձեռնարկություններում իրավախախտումների կանխարգելման խորհուրդների, գյուղական հավաքույթների և հասարակական ներգործության

մյուս ձևերի դերը։ Սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս հաշվի առնել կարգապահության և դաստիարակչական աշխատանքի վիճակը։

Ձեռնարկությունների, կառույցների, հիմնարկությունների ղեկավարների, կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների, արհմիությունների կոմիտեների նախագահների, արտադրամասերի, հերթափոխությունների, աշխատամասերի պետերի և բրիգադավարների ուշադրությունն է հրավիրված այն բանի վրա, որ նրանք անձնական պատասխանատվություն են կրում կարգապահության և իրավակարգի վիճակի համար, որ ժամանակին և սուր կերպով պետք է արձագանքեն կոլեկտիվների առանձին անդամների հակահասարակական վարքագծի փաստերի վերաբերյալ հաղորդումներին ու ահազանգերին։ Հարկավոր է խիստ պատասխան պահանջել նրանցից, ովքեր անտարբերություն և անհոգություն են ցուցաբերում այդ գործում։

Անհրաժեշտ է համարվել բարելավել աշխատավորների իրավական դաստիարակության աշխատանքը։ Այդ նպատակներով ավելի լրիվ և արդյունավետ օգտագործել կուլտուր-լուսավորական հիմնարկները։ Իրավապահպան մարմինների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակայնության ջանքերը ավելի ակտիվորեն նպատակամղել ընտանեկան և կենցաղային հարաբերությունների հողի վրա առաջացող տարբեր տեսակի կոնֆլիկտների կանխմանը. ընդսմին պահպանելով պատշաճ տակտ և ուշադրություն։ Խնդիր է դրված կատարելագործել սովետական օրենսդրության հիմունքների ուսումնասիրությունը դպրոցներում, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում և մյուս ուսումնական հաստատություններում, կուսակցական ուսուցման, տնտեսագիտական կրթության և կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմում։ Նախատեսել իրավական թեմաներով ելույթներ միասնական քաղօրեր անցկացնելիս։ Ուժեղացնել իրավադաստիարակչական աշխատանքը նրանց շրջանում, ովքեր կարգապահության և հասարակական կարգի խախտումներ են կատարում։ Բարձրացնել դատավարությունների դաստիարակչական նշանակությունը, պրակտիկա դարձնել դրանց անցկացումը ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում։

Կուսակցական, սովետական, իրավապահպան մարմիններին և հասարակական կազմակերպություններին հանձնարարված է մշակել և իրականացնել կամավոր ժողովրդական դրուժինաների, ընկերական դատարանների, կարգի պահպանության հասարակական կետերի և հասարակական ինքնագործունեության այլ մարմինների գործունեության հետագա բարելավման գործնական միջոցառումներ։ Պաշտպանել և զարգացնել աշխատավորների նախաձեռնությունը բնակավայրերում ու ձեռնարկություններում օրինակելի կարգ ու կանոն ապահովելու ուղղությամբ։ Ընդհանրացնել և տարածել իրավախախտումների դեմ մղվող պայքարին հասարակայնության մասնակցության դրական փորձը։ Ապահովել ուշադիր և զգայուն վերաբերմունք քաղաքացիների առաջարկությունների և քննադատական դիտողությունների նկատմամբ, դրանք ավելի լրիվ հաշվի առնել հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումներ մշակելիս և իրականացնելիս։ Պրակտիկա դարձնել այդ հարցերի վերաբերյալ կուսակցական, սովետական, իրավապահպան մարմինների պատասխանատու աշխատողների կանոնավոր ելույթները կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի, մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։

ՀԱՄԿԽ-ին, արհմիությունների կենտրոնական կոմիտեներին, հանրապետական, երկրամասային և մարզային խորհուրդներին հանձնարարված է լրացուցիչ միջոցառումներ մշակել իրավախախտումների կանխման գործում արհմիութենական կազմակերպությունների դերն ուժեղացնելու նպատակով։ Ավելի ակտիվորեն օգտագործել սոցիալիստական մրցությունը, որպես մարդկանց դաստիարակության, կարգապահության ամրապնդման, գործալքությունների դեմ պայքարելու, նյութական արժեքները հոգատարությամբ օգտագործելու կարևոր միջոց։ Միջոցներ ձեռնարկել զգալիորեն բարելավելու աշխատավորների ժամանցի և ազատ ժամանակի կազմակերպումը։



ՀամԼԿԵՄ Կենտկոմը, միութենական հանրապետությունների ԼԿԵՄ կենտկոմները, կոմերիտմիության կոմիտեները պարտավոր են բարձրացնել կոմերիտական կազմակերպությունների դերը իրավախախտումների դեմ մղվող պայքարում, վերլուծել երիտասարդության և դեռահասների շրջանում հակահասարակական դրսևորումների պատճառները, կոնկրետ միջոցներ ձեռնարկել դրանք վերացնելու համար, ապահովել յուրաքանչյուր կոմերիտականի ակտիվ մասնակցությունը իրավակարգի ամրապնդմանը։

ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեին և նրա տեղական մարմիններին առաջարկված է ուժեղացնել պայքարը պետական կարգապահության և սոցիալիստական սեփականության պահպանության վերաբերյալ օրենքների խախտումների դեմ, վճռականորեն խափանել պետությանը խաբելու փաստերը։ Հաստատակամորեն հասնել այն պատճառների վերացմանը, որոնք ծնում են հափշտակություններ, կաշառակերություն, անտնտեսավարություն, զանազան չարաշահումներ։

Թերթերի և հանդեսների խմբագրություններին, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմին, ՍՍՀՄ պետկինոյին, ՍՍՀՄ հրատպետկոմին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը հանձնարարված է բարելավել իրավախախտումների, հարբեցողության, պորտաբուծության, ընչաքաղցության դեմ մղվող պայքարի հարցերի լուսաբանումը, կոնկրետ ու համոզիչ կերպով բացահայտել այդ երևույթների հակահասարակական էությունը։ Սիստեմատիկաբար ցույց տալ իրավակարգի պահպանությանը աշխատավորական կոլեկտիվների ու հասարակայնության մասնակցության դրական փորձը, իրավապահպան մարմինների աշխատողների անձնվեր աշխատանքը հանցավոր ոտնձգություններից պետության շահերը և քաղաքացիների իրավունքները պաշտպանելու ասպարեզում։

ՍՍՀՄ դատախազությանը, ՍՍՀՄ ներքգործմինիստրությանը, ՍՍՀՄ արդարադատության մինիստրությանը, ՍՍՀՄ գերագույն դատարանին առաջարկված է բարելավել իրենց և ենթակա մարմինների գործողությունների կոորդինացումը, այդ հիման վրա ապահովել իրավախախտումների դեմ մղվող պայքարի պրակտիկայի համակողմանի ուսումնասիրությունը, անհրաժեշտ միակերպությունը սովետական օրենսդրության նորմերի կիրառման գործում։

---

# ԿԱՐԵՎՈՐ ՓՈՒԼ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՊԼԱՆԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

**Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ**
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ,
ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակարգի կառուցումը մեր երկրում սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի արդյունքն է, լենինյան գաղափարների հաղթանակը։ Զարգացած սոցիալիզմի հիմնական հատկանիշներն ու օրինաչափություններն իրենց մարմնավորումն են գտել ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ։

Այժմ մեր էկոնոմիկան բնութագրվում է բազմակիորեն աճած մասշտաբներով, գիտատեխնիկական հեղափոխության ակտիվ ծավալմամբ, ամբողջ հանրային արտադրության հետևողական կողմնորոշմամբ՝ հանուն ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման։ Ավելի ու ավելի լրիվ չափով են բացահայտվում սոցիալիստական հասարակական սիստեմի ստեղծարար ուժերն ու մեծագույն առավելությունները, աշխատավորները առավել լայնորեն են օգտվում իրենց հասումների պտուղներից։ Այսօր գլխավորն է՝ առավել լրիվ ու ռացիոնալ օգտագործել մեր երկրում ստեղծված վիթխարի տնտեսական պոտենցիալը, ապահովել արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացումը։

ՍՄԿԿ XXV համագումարի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի հետագա պլենումների որոշումներում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթներում սահմանված են այդ խնդրի լուծման հիմնական պայմանները՝ էկոնոմիկայի պլանային ղեկավարման հետագա կատարելագործումը, արտադրության կառավարման դեմոկրատական հիմունքների զարգացումը, աշխատանքային կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնության բարձրացումը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, կատարելագործելով էկոնոմիկայի պլանային կառավարումը, մշտապես ղեկավարվում են դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքով, կոմունիստական շինարարության արդի փուլի պայմաններում ստեղծագործաբար զարգացնելով և կիրառելով այն։ Հենվելով առաջավոր գիտության հասումների և ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններ կազմելու ավելի քան կեսդարյա պրակտիկ փորձի վրա, կուսակցությունը հետևողականորեն վարում է կենտրոնացված ղեկավարությունն ամրապնդելու և մասսաների ըստ ամենայնի ակտիվացման ու սոցիալիստական արտադրության կառավարման գործի մեջ նրանց ուղղակի ներգրավման միջոցով դեմոկրատական հիմքերն ընդլայնելու կուրս։

ՍՄԿԿ XXIII համագումարի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի մարտյան և սեպտեմբերյան (1965 թվական) պլենումների որոշումներում նոր



հնարավորությունների ու պահանջների համեմատ կառավարման կատարելագործման սկիզբը դրվեց։ Մշակվեց ու իրականացվեց պլանավորումն ու տնտեսական խթանումը բարելավելու միջոցառումների սիստեմը։ Դրա կենսագործումը մեծապես նպաստեց կազմակերպական-տնտեսական հարաբերությունների ամրապնդմանը, ժողովրդական տնտեսության հետագա վերելքին, սոցիալ-տնտեսական մի շարք խոշոր պրոբլեմների լուծմանը։

Անցած տարիներին մեծապես փոխվել է ժողովրդական տնտեսության դեմքը։ Ազգային եկամուտը մեծացել է ավելի քան 2 անգամ, արդյունաբերական արտադրության ծավալը՝ 2,5 և գյուղատնտեսության արտադրանքինը՝ 1,4 անգամ։ Կապիտալ շինարարության լայն ծրագրի իրականացման շնորհիվ երկրի հիմնական արտադրաֆոնդերն աճեցին 2,8 անգամ, դրանց արժեքը գերազանցեց տրիլիոն ռուբլին։

Հանրային արտադրության անշեղ աճը հնարավորություն ընձեռեց ապահովելու ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա էական վերելքը։ 1965 թվականի համեմատությամբ, բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձն ավելացել է 66 տոկոսով, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը հանրային տնտեսությունից՝ ավելի քան 2 անգամ։ Անցած ժամանակաշրջանում սպառման հանրային ֆոնդերն աճել են 2,5 անգամ, բարելավվել են ավելի քան 140 մլն մարդկանց բնակարանային պայմանները։

Մեր երկիրն այժմ ունի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ամուր ինդուստրիալ բազա, բարձրորակ կադրեր։ Ակտիվորեն զարգանում են տնտեսական կապերը արտասահմանյան երկրների և ամենից առաջ սոցիալիստական համագործակցության երկրների հետ։

Հանրային տնտեսության զգալիորեն աճած մասշտաբները, էկոնոմիկայում և արտադրաուժերի տեղաբաշխման գործում կատարված կառուցվածքային խոր տեղաշարժերը, սոցիալ-տնտեսական քաղաքականության նոր, առավել հոյակապ խնդիրները, որ առաջադրել է կուսակցությունը, պահանջում են պլանավորման, սոցիալիստական տնտեսավարման ամբողջ սիստեմի հետագա կատարելագործում։ Ընդ որում հարկավոր է հաշվի առնել, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1978 թվական) պլենումում, որ ժողովրդական տնտեսության մեջ խոշոր և աներկբայելի հաջողությունների կողքին կան մի շարք նեղ տեղեր և չլուծված պրոբլեմներ։

Ի կատարումն ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու մասին կուսակցության XXV համագումարի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմը ընդունեց որոշում տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին։ Ընդունվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի համատեղ որոշումը «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին»։ Այդ երկու փաստաթղթերն էլ մի նպատակ ունեն՝ բարձրացնել պլանավորման ու տնտեսավարման մակարդակը, դրանք համապատասխանեցնել ներկա փուլի՝ զարգացած սոցիալիզմի փուլի պահանջներին, հասնել հանրային արտադրության արդյունավետության էական բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարելավման և այդ հիմքի վրա ապահովել երկրի էկոնոմիկայի ու սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքը։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված միջոցառումների սիստեմը պլանավորման և ամբողջ տնտեսական մեխանիզմի կատարելագործման կարևորագույն միջոց է։ Այն մշակվել է՝ ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից և սովետական սահմանադրության դրույթներից, հաշվի առնելով պլանավորումն ու տնտեսական խթանումը կատարելագործելու նպատակով ինչպես առանձին ձեռնարկություններում, այնպես էլ ճյուղերի և երկրի շրջանների մասշտաբներով վերջին տարի-

ներին իրականացված մի շարք խոշոր փորձերի ու միջոցառումների արդյունքները:

Միջոցառումների նշված սիստեմի իրականացումն առաջիկա տարիներին կդառնա բոլոր պլանային, տնտեսական ու ֆինանսական մարմինների գործունեության հիմնական ուղղությունը կենտրոնում և տեղերում: Անհրաժեշտ կլինի ապահովել այդ աշխատանքի իրականացումն արտադրական յուրաքանչյուր օղակում: Բարձր կազմակերպվածությունը, որոշման մեջ նշված բոլոր միջոցառումների ժամանակին կատարումը, ունեցած ռեզերվների հայտնաբերումն ու գործադրումը նոր հաջողությունների գրավականն են սովետական էկոնոմիկայի զարգացման, նրա առավելությունների օգտագործման համար:

## ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՕՂԱԿՆ Է

Պլանը կուսակցության տնտեսական քաղաքականության իրագործման գլխավոր գործիքն է: Պլաններում մարմնավորվում են ժողովրդի, բնակչության բոլոր սոցիալական խավերի ու խմբերի, յուրաքանչյուր սովետական մարդու արմատական շահերը: Սոցիալիստական պլանավորման ողջ պատմությունը՝ ԳՈԷԼՌՈ-ի լենինյան պլանից ու առաջին հնգամյակներից սկսած մինչև մեր օրերը, սոցիալիստական կարգի առավելությունների, մեր կուսակցության ծրագրային նպատակների ստեղծագործական կիրառման վառ ապացույցն է:

Այդ պայմաններում ավելի է մեծանում պլանավորման դերը էկոնոմիկայի կառավարման սիստեմում: «... Խնդիրն այն է,— շեշտում էր ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ բարձրացնենք պլանավորման և տնտեսավարման մակարդակը, այն համապատասխանեցնենք ներկա փուլի՝ զարգացած սոցիալիզմի փուլի, պահանջներին»: Դա թելադրում է բարձրացնել ողջ պլանային աշխատանքի գիտական մակարդակը: Խոսքը վերաբերում է ո՛չ թե պարզապես պլանը կազմելու կարգի փոփոխմանը և մի քանի կազմակերպական ու մեթոդական հարցերի լուծմանը, այլ պլանների բուն բովանդակության էական բարելավմանը: Դա նշանակում է նախ, ապահովել այդ պլանների ժողովրդատնտեսական վերջնական բարձր արդյունքների, էկոնոմիկայի դինամիկ ու համամասնական զարգացման հասնելու առավել արդյունավետ ուղիների ընտրությունը:

Սոցիալական և տնտեսական պրոբլեմները հաջողությամբ լուծելու, գիտատեխնիկական առաջընթացը արագացնելու համար առավել կարևորվում է փոխկապակցված հեռանկարային և ընթացիկ պլանների սիստեմը: Ընդունված որոշման մեջ հստակորեն սահմանված են այդ սիստեմը և պլանների մշակման կարգը: Այդ սիստեմն ընդգրկում է գիտատեխնիկական առաջընթացի 20 տարվա կոմպլեքսային ծրագիրը (բաժանված ըստ հնգամյակների), ՍՍՀՄ-ի 10 տարվա տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունները (ըստ հնգամյակների), ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման հնգամյա պլանը (ըստ տարիների) և տարեկան պլանը: Աշխատանքի նման կազմակերպումն ապահովում է հեռանկարային պլանների գործողության անընդհատությունը և դրանց անհրաժեշտ կայունությունը: Դա ձեռք է բերվում, մասնավորապես, այն բանի շնորհիվ, որ յուրաքանչյուր 5 տարին մեկ անհրաժեշտ ճշգրտումներ են արվում գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային ծրագրի և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում և միաժամանակ առաջադրանքներ են նախատեսվում հաջորդ հնգամյակի համար:

Այդ սիստեմում կենտրոնական տեղը գրավում է հնգամյա պլանը՝ ըստ տարիների առաջադրանքների բաշխմամբ: Այն պետք է դառնա մինիստրությունների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների տնտեսական գործունեության հիմքը, նրանց աշխատապլանը: Հնգամյակի առաջադրանքներին համեմատ նաև ձևավորվելու են երկարատև տնտեսական կապերը և պայմանագրեր են կնքվելու արտադրամիավորումների, ձեռնար-



կությունների և մատակարարող-վաճառող, առևտրական, տրանսպորտային, գիտահետազոտական կազմակերպությունների միջև:

Հնգամյա պլանի մշակումը պետք է հիմնվի պրոգրեսիվ տեխնիկատնտեսական նորմաների ու նորմատիվների վրա՝ ըստ աշխատանքների տեսակների, ըստ աշխատանքի, հումքի, նյութերի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների ծախսումների, ինչպես նաև արտադրակարողությունների և տեսակարար կապիտալ ներդրումների օգտագործման նորմատիվների վրա: ՍՍՀՄ պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է ապահովեն նշված նորմաների ու նորմատիվների սիստեմի ժամանակին մշակումը՝ այն հաշվով, որ դրանք լայնորեն կիրառեն տասնմեկերորդ հնգամյա պլանը կազմելիս:

Հնգամյա պլանի դերի բարձրացման ու դրա կայունության ապահովման կարևոր պայմաններն են նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների հաշվեկշիռների, բնակչության դրամական եկամուտների ու ծախսերի հաշվեկշիռների, արտադրակարողությունների հաշվեկշիռների մշակումը այդ պլանում՝ դրանք բաշխելով ըստ տարիների, ինչպես նաև անհրաժեշտ ռեզերվների ստեղծումը և մեծածախ գների անփոփոխ պահպանումը ամբողջ հնգամյա ժամանակաշրջանի ընթացքում: Հնգամյա պլանի կատարումը գնահատվելու է հարաճուն արդյունքով՝ հնգամյակի սկզբից:

Հնգամյա պլանի դերի բարձրացման կապակցությամբ փոփոխվում է տարեկան պլանավորման պրակտիկան: ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման տարեկան պլանները մշակվելու են հնգամյա պլանի տվյալ տարվա տնտեսական նորմատիվների ու առաջադրանքների հիման վրա և պետք է նախատեսեն նշված առաջադրանքների անհրաժեշտ կոնկրետացում, ինչպես նաև դրա կատարումն ապահովող տնտեսական և կազմակերպական միջոցառումների իրագործում:

Պլանավորվող ցուցանիշներն ավելի լավ հիմնավորելու նպատակով պետք է լայնորեն կիրառվեն տնտեսական և ինժեներական հաշվարկները, ինչպես նաև ձեռնարկությունների պասպորտի տվյալները, որոնք բացահայտում են արտադրական ֆոնդերի առկայությունը և օգտագործման աստիճանը, արտադրության տեխնիկական մակարդակը և մյուս տեխնիկատնտեսական ցուցանիշները:

Սահմանվող կարգը նախատեսում է հնգամյա և տարեկան պլանների մշակումը ներքևից՝ անմիջականորեն արտադրամիավորումների (ձեռնարկությունների) և կազմակերպությունների կողմից:

Պլանի ներգործությունը արդյունավետության և որակի վրա մեծապես պայմանավորված է դրա ցուցանիշներով: Նախատեսվում է որակական ցուցանիշների դերի բարձրացումը: Ընդլայնվում է նատուրալ արտահայտությամբ պլանավորվող արտադրանքի անվանացուցակը: Նատուրալ ցուցանիշների կիրառման դեպքում նկատի է առնվում ավելի լրիվ բնութագրել արտադրանքի որակական պարամետրերը և սպառողական հատկությունները: Ուժեղանում է միավորումների ու ձեռնարկությունների պատասխանատվությունը հաստատված անվանացուցակով արտադրանքի մատակարարման պարտավորությունների կատարման և դրա որակի բարելավման համար:

Սկզբունքորեն նոր կերպ է լուծվում արտադրության ընդհանուր ծավալը արժեքային արտահայտությամբ պլանավորելու հարցը: Իրականացվելու է աստիճանական անցումը զուտ (նորմատիվային) արտադրանքի ցուցանիշի լայն արմատավորմանը: Այս ցուցանիշի առկայությամբ, ի տարբերություն համախառն և ապրանքային արտադրանքի, հաշվի չի առնվում հումքի, նյութերի և կոմպլեկտավորող առարկաների արժեքը ու դրանով առավել ճիշտ է չափվում յուրաքանչյուր ձեռնարկության և միավորման, յուրաքանչյուր ճյուղի ներդրումը երկրի ազգային եկամտի աճի սահմաններում: Զուտ արտադրանքի ցուցանիշի հիման վրա պլանավորվելու է աշխատանքի արտադրողականության աճը, ինչպես նաև կազմվելու է աշխատավարձի ֆոնդը:

Նախատեսվում է փոխել ձեռնարկությունների վերաբերմունքը արտադրանքի իրացման պլանի կատարման գնահատման, իսկ համապատասխանաբար նաև տնտեսական խթանման սիստեմում այդ ցուցանիշի կիրառման

գործում։ Այդ ցուցանիշը այսուհետև օգտագործվելու է պայմանագրերի ու պատվեր-կարգագրերի համապատասխան անվանացուցակով (տեսականիով) արտադրանքի մատակարարումների պլանների ու պարտավորությունների կատարումը գնահատելիս։ Այդ դեպքում էականորեն բարելավվում է հաշվարկների կարգը սպառողներին առաքված արտադրանքի համար։

Հնգամյա և տարեկան պլաններում հաստատվող ցուցանիշներից բացի լայնորեն կիրառվելու են տնտեսական կայուն նորմատիվները։ Դա պետք է նպաստի լարված պլանների մշակման գործում մինիստրությունների, միավորումների ու ձեռնարկությունների նախաձեռնության ընդլայնմանը և ռեսուրսների օգտագործման համար նրանց պատասխանատվության բարձրացմանը։

ՍՍՀՄ սահմանադրության մեջ վավերագրված է այն դրույթը, որ պետական պլանները տնտեսական և սոցիալական զարգացման պլաններ են։ Սոցիալական ասպեկտն այժմ ավելի շատ, քան նախկինում երբևէ, գիտատեխնիկական և տնտեսական առաջընթացի խնդիրները մշակելիս պետք է լինի տեսադաշտում։

ՍՍՀՄ-ի, միութենական և ինքնավար հանրապետությունների, երկրամասերի, մարզերի, քաղաքների ու շրջանների, ինչպես նաև մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների կազմում պետք է լինի ամփոփիչ բաժին՝ սոցիալական բնագավառի միջոցառումների ողջ կոմպլեքսի վերաբերյալ։ Դրանցից են՝ աշխատողների աշխատապայմանների բարելավման, նրանց որակավորման և պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործման, բնակչության հանրակրթական և կուլտուրական մակարդակի բարձրացման, կյանքի, բնակարանային ու կուլտուր-կենցաղային պայմանների, բուժսպասարկման բարելավման և մյուս միջոցառումները՝ զուգորդելով արտադրության զարգացման, կապիտալ շինարարության և դրանց արդյունավետության բարձրացման առաջադրանքների հետ։

Ընդունված որոշմամբ հատկապես առանձնացված են ըստ աշխատանքի և սոցիալական զարգացման ցուցանիշները։ Դրանցից է այնպիսի մի կարևոր ցուցանիշ, որպիսին ձեռքի աշխատանքի կիրառման կրճատումն է։ Համապատասխան ծրագիր է նախատեսված այն նպատակային կոմպլեքսային նախագծումների շարքում, որոնք պետք է առաջնահերթ կարգով մշակվեն մոտակա հեռանկարի համար։

Ժողովրդատնտեսական պլանները կազմելիս պետք է լայնորեն կիրառվի ծրագրային-նպատակային մեթոդը։ Նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական, ինչպես նաև առանձին ռեգիոնների և տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների զարգացման ծրագրերը կդառնան տնտեսական և սոցիալական զարգացման պետական հեռանկարային պլանների կարևորագույն բաղկացուցիչ մասը։ Ճյուղային հնգամյա պլանների կազմում մշակվելու են արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, մեքենաների նոր սիստեմների ստեղծման ծրագրեր, որոնք հնարավորություն կընձեռեն կոմպլեքսային ձևով մեքենայացնելու ու ավտոմատացնելու արտադրապրոցեսները և այլն։

Արտադրության արդյունավետության աճի, գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր պայմանն է արտադրանքի տեխնիկատնտեսական ցուցանիշների մշտական բարելավումը։ Արտադրաօբյեկտների նախագծումն ու շինարարությունն անհրաժեշտ է իրականացնել միայն նորագույն բարձր արդյունավետ տեխնիկայի ու տեխնոլոգիայի բազայի դեպքում, և նոր գործարկվող ձեռնարկությունների արտադրանքն իր տեխնիկատնտեսական պարամետրերով ու սպառողական հատկություններով պետք է համապատասխանի հայրենական և արտասահմանյան արտադրության առաջնակարգ հասումներին կամ գերազանցի դրանց։

Մեծ ուշադրություն է նվիրված արդյունաբերության և առևտրի տնտեսական կապերի բարելավման նպատակով նախատեսված միջոցառումներին,



որոնց միտումը ժողովրդական սպառման ապրանքների որակի ու տեսականու բարձրացումն է։

Հաճախ մանրածախ առևտրի սիստեմն են առաքվում այնպիսի ապրանքներ, որոնք չեն համապատասխանում բնակչության պահանջարկին։ Միաժամանակ այդ ոչ գնայուն ապրանքներն արտադրած ձեռնարկությունների պլանները համարվում են կատարված, և աշխատողներն ստանում են պարգև-հավելումներ։ Արտադրությունն ու առևտուրը ավելի սերտ կապելու, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանները կազմելիս սպառողի դերն առավել նշանակալից դարձնելու համար որոշման մեջ նախատեսված է բարձրացնել գլխամասային մինիստրությունների պատասխանատվությունը ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը կազմակերպելու և բնակչության պահանջարկը բավարարելու համար, ավելի լայնորեն զարգացնել սպառողական ապրանքներ վաճառող ֆիրմային խանութների ցանցը և բարելավել աշխատանքը մեծածախ տոնավաճառներում։ Սահմանված է, որ առևտրի մարմինների ու արդյունաբերական միավորումների միջև կնքվեն հնգամյա համաձայնագրեր։ Դրանցում պետք է նախատեսվեն տեսականիի նորացում, առարկաների վերջնամշակման ու արտաքին տեսքի բարելավում, ապրանքների փաթեթավորում և արտադրող ձեռնարկության այլ պարտավորություններ, որոնք ապահովեն բնակչության պահանջարկի բավարարումը։ Այդ համաձայնագրերի հիման վրա առևտրական ու արդյունաբերական ձեռնարկությունները կնքում են տարեկան պայմանագրեր, որոնցում, բնակչության պահանջարկը հաշվի առնելով, կոնկրետացվում են ապրանքների ծավալը, տեսականին և առաքման պայմանները։

Մեր էկոնոմիկայի զարգացման, ճյուղերի թվի աճի և նոր խոշոր տնտեսական շրջանների ստեղծման հետ մի շարք բարդ պրոբլեմներ են ծագում կառավարման և ճյուղային ու տերիտորիալ պլանավորման ռացիոնալ զուգակցման ոլորտում։ Խնդիրն այն է, որ, պահպանելով արդյունաբերության կառավարման ճյուղային սկզբունքը, ապահովենք մինիստրությունների, միավորումների ու ձեռնարկությունների ավելի համաձայնեցված մասնակցությունը առանձին տնտեսական շրջանների պլանաչափ զարգացմանը։ Միաժամանակ անհրաժեշտ է բարձրացնել տերիտորիալ պլանավորման ու կառավարման մակարդակն այն հաշվով, որ ապահովվի տնտեսության ավելի կոմպլեքսային զարգացումը յուրաքանչյուր հանրապետությունում, մարզում և տնտեսական շրջանում։ Այդ կապակցությամբ պահանջվում է ուժեղացնել ՍՍՀՄ մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների գործունեության կոորդինացումը՝ տերիտորիալ տեսակետից ճյուղերի զարգացման պլանները մշակելիս։ Հարկավոր է նաև բարձրացնել միութենական հանրապետությունների պլանային մարմինների աշխատանքի մակարդակը՝ նրանց էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացումն ապահովելու համար։

Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին տնտեսության ղեկավարման բնագավառում տրվում են լրացուցիչ իրավունքներ, որոնց իրականացումը հնարավորություն կընձեռի ուժեղացնելու նրանց դերն արտադրաուժերի զարգացման և սոցիալական պրոբլեմների լուծման գործում։ Մասնավորապես, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային և շրջանային սովետների գործադիր կոմիտեներին է հանձնարարված տեղական շինանյութերի արտադրության, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ամփոփիչ հնգամյա և տարեկան պլանների, բնակարանային-կոմունալ և կուլտուր-կենցաղային շինարարության պլանների կազմումն ու հաստատումը, ինչպես նաև վերահսկողությունը դրանց կատարման նկատմամբ։

Հաշվի առնելով Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջանների աճող նշանակությունը երկրի էկոնոմիկայում և տերիտորիալ-արտադրական խոշոր կոմպլեքսների ստեղծումն այդ շրջաններում, հարկավոր է ուժեղացնել ուշադրու-

Նյութական խրախուսման ֆոնդը կազմվում է երկարաժամկետ տնտեսական նորմատիվներով, որոնք, որպես կանոն, սահմանվում են տոկոսներով՝ շահույթի (հաշվարկային շահույթի) նկատմամբ։ Ընդ որում ֆոնդի չափը պայմանավորված է լինելու աշխատանքի արտադրողականության աճով, բարձրագույն կարգի որակի արտադրանքի թողարկման ավելացումով և կնքված պայմանագրերին ու պատվերներին համապատասխան սպառողներին արտադրանքի մատակարարումների ապահովմամբ։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդը կազմվում է՝ հաշվի առնելով աշխատողների ապահովվածությունը բնակարանով և սոցիալ-կուլտուրական ծառայություններով։ Ընդ որում թույլատրվում է այդ նպատակների համար օգտագործել նաև նյութական խրախուսման ֆոնդի միջոցների մի մասը։

Արտադրության զարգացման ֆոնդի ստեղծումն ու օգտագործումը ավելի սերտորեն են առնչվում ձեռնարկությունների տեխնիկական վերազինումն արագացնելու խնդիրների հետ։ Այդ ֆոնդի միջոցների հաշվին իրականացվող միջոցառումները ինքնուրույն կերպով մշակում և հաստատում են արտադրամիավորումները (ձեռնարկությունները)։ Համապատասխան ծախսումները լրիվ ծավալով ներառվում են մինիստրությունների ու գերատեսչությունների կապիտալ շինարարության պլանի մեջ՝ առաջնահերթ կարգով անհրաժեշտ նյութական ռեսուրսներով ու կապալային աշխատանքների ծավալներով ապահովելու համար։

Արտադրամիավորումների (ձեռնարկությունների) տնտեսական հաշվարկն ամրապնդելու և աշխատանքի տնտհաշվարկային մեթոդները մինիստրությունների նկատմամբ կիրառելու գործում մեծ դեր է վերապահված շահույթի բաշխման կարգի փոփոխմանը։ Այստեղ նորը աստիճանական անցումն է շահույթի բաշխմանը ըստ այն նորմատիվների, որոնք սահմանվում են հնգամյա պլանում՝ բաշխելով ըստ տարիների։ Շահույթից կատարվող մասհանումների կայուն նորմատիվները, որպիսիք անցնում են մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների տրամադրության տակ, ուժեղացնում են նրանց տնտեսական պատասխանատվությունը ֆինանսատնտեսական գործունեության արդյունքների համար և բարձրացնում շահագրգռվածությունը նյութական ու ֆինանսական ռեսուրսների արդյունավետ օգտագործման նկատմամբ։ Այդ շահույթի հաշվին մինիստրությունները, միավորումներն ու ձեռնարկությունները ապահովում են արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման և տնտեսական խթանման ֆոնդերի ստեղծման համար կատարվող բոլոր ծախսումների ֆինանսավորումը։ Շահութաբերության անբավարար մակարդակ ունեցող ճյուղերում ռեսուրսների լրացուցիչ պահանջը կարող է բավարարվել բանկային վարկի, իսկ առանձին դեպքերում նաև պետական բյուջեի միջոցների հաշվին։

Գիտատեխնիկական առաջընթացը և նոր բարձր արդյունավետ արտադրանքի թողարկումն արագացնելու համար նախատեսվում է 1980 թվականին ավարտել գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային-կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների, փորձնական կազմակերպությունների, գիտաարտադրական և արտադրամիավորումների (ձեռնարկությունների), արդյունաբերական մինիստրությունների փոխադրումը նոր տեխնիկայի ստեղծման, յուրացման ու արմատավորման գծով աշխատանքների կազմակերպման տնտհաշվարկային սիստեմի։ Այդ սիստեմն ընդգրկում է նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման պլանավորումն ըստ պատվեր-կարգագրերի, որոնք սահմանում են աշխատանքների բոլոր փուլերը՝ գիտական հետազոտություններից մինչև արտադրանքի թողարկումը արդյունաբերական մասշտաբով, կայուն նորմատիվներով գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդի ստեղծումը մինիստրություններում, աշխատողների պարգևատրումը գիտատեխնիկական նվաճումների օգտագործումից ժողովրդական տնտեսության ստացած փաստական գումարի համեմատ։

Հարկ է նշել, որ մի շարք տարիներ այդ սիստեմով են աշխատում մի քանի մինիստրությունների գիտական և այլ կազմակերպություններ։ Նրանց աշ-



խատանքի փորձը ցույց է տալիս, որ առաջարկվող սիստեմի արմատավորումը, գործի ճիշտ կազմակերպման դեպքում, կարող է զգալի արդյունքներ տալ։

Հանրային արտադրության ներկա մասշտաբների պայմաններում բավական խոշոր գումարներ են կազմում հումքի և նյութերի, վառելիքի և էներգիայի համար կատարվող ծախսումները։ Նյութական ծախսումների կրճատումը, աշխատանքի ներկա առարկաների փոխարինումը ավելի էժանագիններով և կորուստների վերացումը արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր աղբյուրներից են։ Որոշվել է, որ արտադրության մեջ այժմ կիրառվող նյութերի համեմատ ավելի էժանագին նյութեր օգտագործելու և միաժամանակ արտադրանքի որակը նախկին մակարդակի վրա պահելու դեպքում արտադրանքի մեծածախ գները անփոփոխ են մնում մինչև հնգամյակի վերջը։ Շահութաբերությունը արդյունաբերության մշակող ճյուղերում ըստ արտադրատեսակների սահմանվելու է որպես շահույթի հարաբերակցություն ոչ թե ամբողջ ինքնարժեքի նկատմամբ, այլ ինքնարժեքի նկատմամբ՝ հանած օգտագործված հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի, կիսաֆաբրիկատների և կոմպլեկտավորող առարկաների արժեքը։

Ընդունված որոշմամբ նախատեսված է միջոցառումների կոմպլեքս, որոնք վերացնում են տնտեսական մեխանիզմի այն թերությունները, որոնց դեպքում հաճախ արտադրող ձեռնարկությունների համար ձեռնտու է լինում այն, ինչ չի համապատասխանում սպառողների և ողջ հասարակության շահերին։

Բարձրորակ արտադրանքի թողարկումն ընդլայնելու և արտադրանքի սիստեմատիկ նորացումն ապահովելու նպատակով հետագա զարգացում կստանա արտադրատեխնիկական նշանակության թողարկվող արտադրանքը ատեստավորելու և նրա որակի բարձրացումը խթանելու սիստեմը։ Ավելացվում են խրախուսիչ հավելավճարները նոր բարձր արդյունավետ արտադրանքի և պետական որականիշի արժանացած արտադրանքի մեծածախ գնին։ Ժողովրդական սպառման ապրանքների համար ուժեղանում է շահագրգռվածությունը տնտեսական խթանման ֆոնդերի օգտին կատարվող մասհանումները մեծացնելու միջոցով նրանց որակը բարձրացնելու նկատմամբ։ Միաժամանակ խստացվում են նյութական սանկցիաները ցածրորակ արտադրանք թողարկելու համար։

Ամենամոտ ժամանակաշրջանում առանձնահատուկ նշանակություն ձեռք կբերեն աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացումը։ Գիտատեխնիկական առաջընթացի հետ միասին աշխատանքի արտադրողականության աճի կարևոր աղբյուր պետք է լինի նրա կազմակերպման ու նորմավորման հետագա կատարելագործումը։ Պրակտիկան ցույց է տվել աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի տնտեսական ու սոցիալական հսկայական առավելությունները։ Տասնմեկերորդ հնգամյակում բրիգադային ձևը պետք է դառնա հիմնականը։ Արտադրական բրիգադների կոլեկտիվ շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը մեծապես պայմանավորված են բուն բրիգադում աշխատանքի կազմակերպմամբ, բրիգադների կոլեկտիվների (խորհուրդների) ունեցած իրավունքներով։ Այդ իրավունքները էականորեն ընդլայնվում են աշխատանքի կազմակերպման բնագավառում, նրա նյութական ու բարոյական խրախուսման գործում։

Անցումը աշխատավարձի նորմատիվ պլանավորմանը հնարավորություն կընձեռի ընդլայնելու նաև միավորումների ու ձեռնարկությունների իրավունքները ըստ նորմատիվի աշխատավարձի ֆոնդի խնայողության օգտագործման բնագավառում՝ աշխատանքի արտադրողականության աճը լրացուցիչ կերպով խթանելու, աշխատողների որակավորումը բարձրացնելու և կադրերին ձեռնարկությանը ամրացնելու համար։

Պետական սոցիալական ապահովագրության ներկայումս գործող տարիֆները չեն ապահովում աշխատուժի վերարտադրության վրա կատարվող ծախսումները և արտադրամիավորումներին (ձեռնարկություններին) չեն խթանում կրճատելու ձեռքի աշխատանքի, հատկապես ծանր աշխատանքի կիրառումը։

Տասնմեկերորդ հնգամյակում այդ տարիֆները բարձրացվում են, որը կնպաստի աշխատուժի ավելի ռացիոնալ օգտագործմանը:

Վաստակի խթանիչ դերն ուժեղացնելու, աշխատողների նյութական խրախուսման հարցերի լուծման գործում աշխատանքային կոլեկտիվների իրավունքների ընդլայնման ասպարեզում ձեռնարկված միջոցների նպատակն է միաժամանակ բարձրացնել մինիստրությունների, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների պատասխանատվությունը աշխատավարձի միջոցները ռացիոնալ ծախսելու համար:

Հարկ է շեշտել, որ տնտեսական լծակներն ու խթանները, իրենց ողջ կարևորությամբ հանդերձ, ինքնին ի վիճակի չեն ապահովելու առաջադրված նպատակների իրականացումը: Անհրաժեշտ է ուժեղացնել կազմակերպչական աշխատանքը կառավարման բոլոր մակարդակներով: Տնտեսական հաշվարկի և տնտեսական լծակների ու խթանների ողջ սիստեմի զարգացումն ու ամրապնդումը լրջորեն բարձրացնում են պահանջները տնտեսական ղեկավարների նկատմամբ: Տնտեսական քաղաքականության իմաստի ու խնդիրների ըմբռնում, կուսակցական լուրջ մոտեցում գործի նկատմամբ, բարձր կազմակերպվածություն և հետևողականություն առաջադրված նպատակներին հասնելու համար, մարդկանց հետ աշխատելու, նրանց նախաձեռնությունը զարգացնելու, նորը, առաջավորը ամեն կերպ խրախուսելու և պաշտպանելու ունակություն՝ ահա ինչ է պահանջվում այսօր ամեն պաշտոնակարգի տնտեսական ղեկավարներից:

Ակտիվորեն կիրառելով նյութական խրախուսման առաջավոր ձևերը, մենք պետք է ամեն կերպ զարգացնենք նաև աշխատանքային գործունեության բարոյական խթանները, մասսաների ստեղծագործական եռանդը, սոցիալիստական մրցությունը:

«Է՛լ ավելի լրիվ մոբիլիզացնել ժողովրդի ստեղծագործական ուժերը, գտնել ու գործի դնել տնտեսական աճի նոր ռեզերվներ՝ այս է հիմա բոլոր կուսակցական կազմակերպությունների, կուսակցության բոլոր անդամների գործունեության հիմքերի հիմքը»: Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ձևակերպած այդ կարևորագույն խնդրի լուծումն է հետապնդում վերջին հաշվով նաև ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ նախատեսված միջոցառումների սիստեմը: Ահա սա է նրա քաղաքական խոր նշանակությունը:

Մեր երկիրն ավարտում է տասներորդ հնգամյա պլանի կատարումը և գտնվում է տասնմեկերորդ հնգամյակի շեմին: Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու միջոցառումները, որոնք նախատեսված են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ, նպաստելու են տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը: Տասնմեկերորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական զարգացման պլանը պետք է մշակվի նշված միջոցառումներին համապատասխան:

Տնտեսական մեխանիզմի վերակառուցումը բարդ գործ է. այն պահանջում է ինչպես կենտրոնական տնտեսական մարմինների, այնպես էլ մինիստրությունների, գերատեսչությունների, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների, տեղական մարմինների, միավորումների ու ձեռնարկությունների աշխատանքի բարձր կազմակերպում:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունված որոշմամբ նախատեսված միջոցառումների ժամանակին ու լրիվ իրականացումը համարում են ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ պետմատի, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետշինի, ՍՍՀՄ ֆինանսների մինիստրության, ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեի, ՍՍՀՄ գների պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետբանկի, ՍՍՀՄ շինբանկի, ինչպես նաև մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների կարևորագույն խնդիրներից մեկը: Նրանք պետք է կարճ ժամկետներում մշակեն բազմաթիվ նորմատիվ



ակտեր, ինչպես նաև մեթոդական փաստաթղթեր՝ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման հիմնական դրույթներին համապատասխան: Հարկավոր է նկատի ունենալ, որ այդ որոշման առանձին դրույթներ պետք է ուժի մեջ մտնեն արդեն 1980 թվականին:

Այդ աշխատանքը կրում է ստեղծագործական բնույթ և դրա իրականացումը շատ պատասխանատու գործ է, քանի որ մեթոդական նյութերի որակով է զգալի չափով պայմանավորված պլանավորման և տնտեսական հաշվարկի կազմակերպման՝ որոշման մեջ պարունակվող սկզբունքների լրիվ ու հետևողական իրականացումը: Մեթոդական փաստաթղթերը մշակելիս անհրաժեշտ է հաշվի առնել առանձին ճյուղերի առանձնահատկությունները և ապահովել որոշման հիմնական դրույթների հետևողական կիրառումը նրանցից յուրաքանչյուրի գործունեության մեջ:

Որոշմամբ նախատեսված միջոցառումների համակողմանի քննարկումը և դրանց արմատավորման վերաբերյալ պրակտիկ հանձնարարականների մշակումը պետք է ուղեկցվեն արտադրության աճի ռեզերվների, արդյունավետության և որակի ցուցանիշների զգալի բարելավման հնարավորությունների որոնման հետ:

Այդ աշխատանքին ակտիվորեն պետք է լծվեն արտադրամիավորումների (ձեռնարկությունների) և շինկազմակերպությունների կոլեկտիվները: Կոնտրոլ թվերի հիման վրա նրանք պետք է ապահովեն իրենց հնգամյա պլանների որակական մշակումը, համակողմանիորեն հիմնավորեն դրանք ինժեներական և տնտեսական հաշվարկներով: Լարված, բայց ռեալ հնգամյա պլանի մշակումը կհանդիսանա տնտեսական հաշվարկի հետագա զարգացման ու ամրապնդման, տնտեսական լծակների ու խթանների ներգործունության բարձրացման, ինչպես նաև տնտեսական գործունեության բարձր ցուցանիշների հասնելու գործում աշխատանքային կոլեկտիվների նախաձեռնության լայն զարգացման կարևոր նախադրյալը:

Հարկավոր է նկատի ունենալ, որ արտադրամիավորումների (ձեռնարկությունների) հնգամյա պլանների որակը մեծապես պայմանավորված է լինելու մինիստրությունների, համամիութենական (հանրապետական) արդյունաբերական միավորումների պլանային-տնտեսական աշխատանքի մակարդակի բարձրացումով:

Մինիստրություններին և միավորումներին ավելի շատ իրավունքներ են վերապահվում տնտեսական գործունեությունը պլանավորելու և կազմակերպելու գործում: Բայց դրա հետ մեկտեղ դա պահանջում է բարձրացնել նրանց պատասխանատվությունը յուրաքանչյուր ձեռնարկության և ամբողջ ճյուղի աշխատանքի վերջնական արդյունքների համար:

Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունը ուժեղացնելու միջոցառումների պրակտիկ իրականացման գործում մեծ դեր է վերապահված տնտեսագիտությանը: Մեր տնտեսագետ գիտնականները պետք է ո՛չ միայն աշխատանք կատարեն պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդների կիրառման փորձն ընդհանրացնելու նպատակով, այլև պետք է իրենց հանձնարարականներով ավելի ակտիվորեն աջակցեն դրանց հետագա արմատավորմանը և ամենաբարձր արդյունքների ստացմանը:

Պլանավորումը և տնտեսական խթանումը կատարելագործելու միջոցառումները, որոնք նախատեսված են որոշմամբ, տարածվում են արդյունաբերության և շինարարության բոլոր ճյուղերի վրա: Պլանի ցուցանիշների, ձեռնարկությունների աշխատանքի գնահատման չափանիշները կիրառելիս պետք է ուշադրության առնվեն առանձին ճյուղերի առանձնահատկությունները:

Հաշվի առնելով ներկայումս տրանսպորտի առջև ծառացած մեծ խնդիրները, անհրաժեշտ է համարվել մշակել տրանսպորտի բոլոր տեսակների ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեության պլանավորումը և տնտեսական խթանումը կատարելագործելու միջոցառումներ այն սկզբունքների համեմատ, որոնք արմատավորվելու են արդյունաբերության

մեջ: Այդ միջոցառումները պետք է արմատապես բարելավեն ժողովրդատնտեսական բեռների և ուղևորների փոխադրումների կազմակերպումը ու աշխատանքների մյուս տեսակները: Տրանսպորտային մինիստրությունները պետք է քննադատաբար վերլուծեն պլանավորման և խթանման գործող սիստեմը և արդյունավետ միջոցներ մշակեն առաջադրված խնդիրը լուծելու համար:

Կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական բոլոր կազմակերպությունների առջև ծառացած են մեծ ու պատասխանատու խնդիրներ կուսակցության և կառավարության մշակած միջոցառումների կազմակերպված իրագործման նպատակով: Անհրաժեշտ կլինի մեծ աշխատանք կատարել նոր որոշման բովանդակությունը պարզաբանելու և այն անմիջականորեն յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի սեփականությունը դարձնելու համար:

Նշված միջոցառումների հետևողական իրականացումն ունենալու է ժողովրդատնտեսական մեծ նշանակություն: Դրանց իրագործումը պետք է նպաստի երկրի տնտեսական հզորության հետագա ուժեղացման և սովետական մարդկանց բարեկեցության անշեղ աճի ապահովման նպատակով Սովետական Միության կոմունիստական կուսակցության առաջադրած խնդիրների հաջող լուծմանը:

«Коммунист» № 12, 1979

---



# ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

**Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-
կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ

ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 1-ԻՑ ՄԻՆՉԵՎ նոյեմբերի 1-ը հանրապետության բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպություններում (բացառությամբ կուսկոմիտեներ ունեցողների) անցկացվում են հաշվետու-ընտրական ժողովներ: Դրանք քաղաքական նշանակալի իրադարձություն են կուսակցության ու երկրի կյանքում և վճռական դեր են խաղում կուսկազմակերպությունների մարտունակության հետագա բարձրացման գործում: Յուրաքանչյուր ձեռնարկությունում, տնտեսությունում ու հիմնարկությունում գործերի հաջողությունը էապես պայմանավորված է այդ կարևոր քաղաքական կամպանիայի խելացի նախապատրաստմամբ, կազմակերպական ու գաղափարական բարձր մակարդակով անցկացմամբ, ժողովներին կոմունիստների ակտիվ մասնակցությամբ, դրանցում քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալմամբ:

Ելնելով հաշվետու-ընտրական ժողովների հույժ կարևորությունից՝ ՀԿԿ Կենտկոմը, կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները կազմակերպել են դրանց նախապատրաստմանն ու անցկացմանը նվիրված սեմինար-խորհրդակցություններ և ջանացել են ամենուրեք ստեղծել այնպիսի իրավիճակ, որպեսզի հնարավոր լինի այդ ժողովներում խորությամբ ու բազմակողմանիորեն քննարկել ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումների և կոմունիստական շինարարության հարցերի վերաբերյալ ընկ. Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների, զեկուցումների ու հոդվածների դրույթների և հետևությունների իրականացման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների ծավալած գործունեությունը, վերլուծել մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, տնտեսության ու կուլտուրայի զարգացման նկատմամբ կուսակցական ղեկավարման մակարդակը, ճիշտ գնահատել ընտրովի կուսակցական մարմինների գործունեությունը, որոշել հետագա անելիքներն ու խնդիրները:

Հաշվետու-ընտրական կամպանիայի հաջողությունն ապահովելու համար հարկ է հետադարձ հայացք ձգել անցած ճանապարհին, քննադատորեն գնահատել վերջին տարիների հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները: Ընդհանրացնելով նախորդ տարիների փորձը՝ այսօր կարող ենք ասել, որ նկատելիորեն բարձրացել են ժողովների քաղաքական-կազմակերպական ու գա-

ղափարական մակարդակը և կոմունիստների ակտիվության աճին։ Այսպես, 1978 թվականին կուսակցական հաշվառման մեջ գտնվող կոմունիստների 97,4 տոկոսը մասնակցել է սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներին, հաշվետվությունների շուրջ ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես է եկել ժողովների մասնակիցների 29,1 տոկոսը։ Ընդ որում, ելույթ ունեցողների 34,5 տոկոսը եղել են բանվորներ ու կոլտնտեսականներ։ Այդ նույն ժողովներում արվել են 7.000 քննադատական դիտողություններ ու առաջարկություններ, որոնց գերակշռող մասը ընթացք է ստացել։

Այս տարվա հաշվետու-ընտրական ժողովների տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ դրանք անցնում են կոմունիստների առավել ակտիվության պայմաններում։ Կուսակցական կազմակերպությունների ճնշող մեծամասնությունում հաշվառման մեջ գտնվող կոմունիստների 98 տոկոսից ավելին մասնակցել են մինչև այժմ տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովներին, իսկ նրանց մեկ երրորդը՝ հաշվետու զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը։ Սիսիանի շրջանում առաջին տասնհինգօրյակում տեղի ունեցած 32 ժողովներում հաշվետու զեկուցումների քննարկմանը մասնակցել է ժողովականների 61,4 տոկոսը։ Նախորդ տարվա համեմատությամբ նկատելիորեն աճել է ելույթ ունեցող բանվորների ու կոլտնտեսականների թիվը։ Սրանք վիճակագրական չոր թվեր չեն, այլ ժողովների քաղաքական-գաղափարական բարձր մակարդակի յուրօրինակ արտահայտություն։ Կոմունիստների մեծ ակտիվությունը բնորոշ էր նաև արտադրամասային կուսկազմակերպությունների ու կուսխմբերի ժողովներին, որոնք արդեն ավարտվել են։

Հաշվետու-ընտրական ժողովների կազմակերպված ու արդյունավետ անցկացումը նպաստել է կուսակցական ակտիվի քաղաքական-գաղափարական կոփմանը և ընտրովի մարմինների որակական կազմի բարելավմանը։ Ընթացիկ հաշվետու-ընտրական կամպանիայի նախօրյակին կազմակերպությունների քարտուղարների 60,6 տոկոսն ուներ բարձրագույն կրթություն, շուրջ 30 տոկոսը ինժեներատեխնիկական աշխատողներ ու գյուղատնտեսության մասնագետներ էին, 13,7 տոկոսը՝ բանվորներ ու կոլտնտեսականներ, 32,5 տոկոսը՝ կանայք։ Այս տարի որակական դրական տեղաշարժն առավել նկատելի է. զգալիորեն ավելացել է կուսկազմակերպությունների քարտուղարներ, բյուրոների անդամներ ընտրված կանանց, բանվորների, կոլտնտեսականների և բարձրագույն կրթությամբ մարդկանց թիվը։ Այսպես, սեպտեմբերի 15-ի վիճակով, Երևանի Լենինյան շրջանում կուսկազմակերպությունների նորընտիր 47 քարտուղարների 32 տոկոսը բանվորներ են, 19 տոկոսը՝ ինժեներատեխնիկական աշխատողներ, իսկ կուսբյուրոների կազմում ընտրվածների 48 տոկոսը բանվորներ են, 34 տոկոսը՝ կանայք։ Գուգարքի շրջանում բյուրոների կազմի 50 տոկոսից ավելին բանվորներ են և այլն։

Նախորդ ընտրությունների ժամանակ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների միայն 23 տոկոսն է փոխվել, որն այդ կարևոր օղակի ակտիվի կայունացման վկայությունն է։ Բարելավվել է նաև կուսակցական խմբերի կազմակերպիչների, արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմը։ Այս ամենն էապես նպաստել է տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման գործում հանրապետության կուսկազմակերպության աշխատանքի մակարդակի բարձրացմանը, ներկուսակցական կյանքի աշխուժացմանը, աշխատավորների արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվության աճին։ Եվ օրինաչափ է, որ ընդհանուր առմամբ ամրապնդվել է կարգապահությունը, բարձրացել կոմունիստների, ղեկավար կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, զարգացել է կոմունիստների նախաձեռնությունը։ Մեր հանրապետությունը համամիութենական սոցիալիստական մրցությունում երեք տարի անընդմեջ հաղթող է ճանաչվել և այդ բանում, անշուշտ, մեծ նշանակություն ունի արտադրության կուսակցական ղեկավարման բարելավումը։

Անցյալ տարիների հաշվետու-ընտրական ժողովների արդյունքների ուսումնասիրությունն ու վերլուծությունը միաժամանակ ցույց են տվել, որ այդ



կարևոր կամպանիայի ընթացքում նկատվել են նաև անցանկալի փաստեր ու երևույթներ, որոնք իջեցրել են ժողովների մակարդակը, խանգարել կուսկազմակերպությունների առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Այդ հարցերի վրա հրավիրեց ՀԿԿ Կենտկոմը հաշվետու-ընտրական ժողովների անցկացման առթիվ կայացած հանրապետական խորհրդակցության մասնակիցների ուշադրությունը։

Կուսակցական ժողովների, մասնավորապես հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստության և անցկացման գործում չկան մանրուքներ։ Այդ պրոցեսի ամեն մի օղակ իր առանձնահատուկ դերն ունի ժողովների կազմակերպական ու քաղաքական բարձր մակարդակով անցկացման գործում։ Ամենից առաջ պետք է լրջորեն վերաբերվել ժողովի նախապատրաստմանը։ Կարևոր է, որ նախապատրաստման ողջ ծանրությունը չընկնի միայն սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարի կամ, լավագույն դեպքում, բյուրոյի անդամների վրա. այդ գործում պետք է ակտիվորեն ներգրավվեն կազմակերպության բոլոր անդամները; ամեն մի կոմունիստ։ Անցած հաշվետու-ընտրական կամպանիաների փորձը ցույց է տվել, որ առանձին տեղերում անտեսվել է այդ պահանջը, որի հետևանքով որոշ ժողովներ անցել են կոմունիստների ցածր ակտիվության, գործարար քննադատության և ինքնաքննադատության բացակայության պայմաններում։

Հաշվետու-ընտրական ժողովների հաջողությունն ապահովելու նպատակով ՀԿԿ Կենտկոմը հանձնարարել է քաղկոմ-շրջկոմներին՝ առավել ուշադիր լինել այն ընկերների ընտրության ժամանակ, որոնց վրա է դրվելու ժողովների նախապատրաստության և անցկացման պատասխանատվությունը։ Ձևական մոտեցումն անթույլատրելի է, ամրացումների ժամանակ հարկ է ելնել գործուղվող անձի՝ տվյալ կազմակերպության հետ ունեցած առնչությունից, տվյալ բնագավառին նրա իրազեկությունից։ Ժողովների ընթացքը ցույց է տալիս, որ այդ հանձնարարությունը շրջկոմ-քաղկոմները հիմնականում կատարում են բարեխղճորեն։

Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման ու անցկացման գործում, ինչպես նախորդ տարիներին, ներգրավվել են ՀԿԿ Կենտկոմի անդամները, անդամության թեկնածուները, Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի անդամները, Կենտկոմի ապարատի պատասխանատու աշխատողներ, հանրապետության կուսակցական, սովետական և պետական մարմինների ղեկավարներ։ Այս տարի համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների ներկայացուցիչները ևս մասնակցում են այն կազմակերպությունների ժողովներին, որտեղ անցյալ տարի իրենց հասցեին քննադատական դիտողություններ ու առաջարկություններ են եղել։

Այս պահանջների կատարմամբ, անտարակույս, լավ նախապայմաններ են ստեղծվել բուն ժողովում հաշվետվության քննարկման համար։ Իսկ որպեսզի ժողովը հասնի իր հիմնական նպատակին, անհրաժեշտ է դրա քննարկմանը ներկայացնել խորը բովանդակությամբ, կատարված աշխատանքի բազմակողմանի վերլուծությամբ, առողջ քննադատությամբ ու ինքնաքննադատությամբ հագեցած զեկուցում և հստակ ծրագրային որոշման նախագիծ։ Ցավոք, պետք է խոստովանել, որ հաշվետու-ընտրական ժողովների ամենաթույլ տեղը թերևս հենց հաշվետու զեկուցումներն են ու որոշման նախագծերը։ Երքաղսովետի գործկոմի բարեկարգման հատուկ տեսչության, «Արարատ» ռեստորանի, ՀՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության ֆիրմային խանութի (Սպանդարյանի շրջան) կուսբյուրոները հաշվետու զեկուցումները կազմել են ոչ պատշաճ խորությամբ, այդ պատճառով ժողովներն անցել են ցածր մակարդակով, կոմունիստների պասիվ մասնակցության պայմաններում, նկատվել են անհարգելի բացակայության դեպքեր։

Ինչի՞ մասին պետք է խոսվի ժողովում։ Ի՞նչ պետք է բովանդակի հաշվետու զեկուցումը։ Այն, առաջին հերթին, պետք է հանգամանորեն արծարծի արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարման, կուսակցական-քաղաքական և կուսակցական-կազմակերպական բազմաբնույթ հարցերը, ընդհանրացնի այդ բնագավառներում կուտակված ուսանելի փորձը։ Մինչև

նիստրությանը, իսկ Գուգարքի շրջանի երկաթբետոնե իրերի գործարանի կոմունիստները՝ ՀՍՍՀ գյուղական շինարարության մինիստրությանը՝ նյութատեխնիկական անբավարար մատակարարման համար։ Այդ ժողովներում շեշտվեց, որ նշված պատճառներով գործարաններն աշխատում են ոչ համաչափ։ Շինարարական վերադաս մարմինների ու կազմակերպությունների հասցեին լուրջ քննադատություն է եղել նաև Երևանի «Հայմարմար» կոմբինատի, «Ֆլորա» արտադրամիավորման և այլ կուսկազմակերպությունների ժողովներում։

Լուծելով նյութական արտադրության զարգացման խնդիրները՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մեծ ուշադրություն է նվիրում առևտրի և բնակչության կենցաղսպասարկման զարգացմանը։ Մշակվել և իրականացվում են կենցաղային ծառայության և առևտրի հետագա զարգացման կոնկրետ միջոցառումներ։ Հաղթահարված է այդ ճյուղերի տևականորեն ետ մնալը, ամրապնդվել է դրանց նյութատեխնիկական բազան։ Այդուհանդերձ, հիշյալ բնագավառներում տիրող ընդհանուր վիճակը չի կարելի բարվոք համարել։ Պատահական չէ, որ հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները հանգամանորեն քննարկում են այնպիսի հարցեր, ինչպիսիք են սպասարկման կուլտուրայի բարձրացումը, առաջավոր ձևերի արմատավորումը, չարաշահումներ ու անօրինականություններ կատարող անձանց նկատմամբ անհաշտվողականության մթնոլորտի ստեղծումը և այլն։ Բնակչության կենցաղսպասարկմանն առնչվող բազմաթիվ հարցեր են արծարծվել Ասպարանի, Մեղրու, Ջերմուկի բնակչության կենցաղսպասարկման կոմբինատների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում։ Կոմունիստները հարց են հարուցել Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղսպասարկման մինիստրության առջև՝ հնարավորություններ ու պայմաններ ստեղծել կենցաղային մի շարք ծառայություններ բացելու, գործողների աշխատանքը բարելավելու համար։

Այսպիսով, ժողովները ոչ թե կատարում են փաստերը և թերություններն արձանագրողի դեր, այլ ակտիվորեն միջամտում են այդ գործին, մշակած միջոցառումներով նպաստում առևտրի և կենցաղսպասարկման շեշտակի բարելավմանը, ադմինիստրացիաների գործունեության նկատմամբ կուսակցական արդյունավետ վերահսկողության ապահովմանը։

Հաշվետու-ընտրական ժողովներում գործարար խոսակցություն է ծավալվում սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերի շուրջ։ Աշխատանքային կոլեկտիվների ուշադրությունը մասնավորապես բևեռվում է մրցության մասսայականության, նրա հրապարակայնության և արդյունավետության ապահովման, ձեռնարկության ու հիմնարկության, կոլտնտեսության ու սովխոզի տնտեսական ցուցանիշների լավացման, կոլեկտիվների բարոյական մթնոլորտի բարելավման գործում մասսաների այդ ստեղծագործական շարժման դերի հետագա բարձրացման վրա։ Սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ են առել հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնություններ։ Կոմունիստներն իրենց խնդիրն են համարում ցույց տալ, թե ինչպիսի բարենպաստ պայմաններ են ստեղծվել դրանց տարածման ու արմատավորման համար, ինչպիսի արդյունքների են հասել նախաձեռնությունների հեղինակներն ու նրանց հետևորդները։ Ժողովներում ո՛չ միայն ընդհանրացվում է մրցության առաջավոր փորձը, այլև բացահայտվում են այդ գործում եղած թերություններն ու ձևական մոտեցման փաստերը, սկզբունքային գնահատական է տրվում մրցությանը կոմունիստների մասնակցությանն ու դրա գործնական արդյունքներին։ Արդեն այժմ կարելի է ասել, որ հաշվետու-ընտրական ժողովները որոշակիորեն նպաստում են սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացմանը, նրա ձևերի կատարելագործմանը, մրցության լենինյան սկզբունքների կիրառմանը։

ՍՄԿԿ Կենտկոմը վերջերս կարևոր որոշում ընդունեց իրավակարգի պահպանության աշխատանքը բարելավելու և իրավախախտումների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու վերաբերյալ։ Այդ որոշմամբ պահանջվում է կենտրոնացնել իրավապահպան մարմինների, կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների ջանքերը՝ ամենուրեք օրինականությունն ամրապնդելու, բացասական երևույթների դեմ վճռական պայքար մղելու համար։



Պրակտիկան ամենուրեք հաստատում է, որ իրավակարգի ամրապնդման, օրինականության պահպանման խնդիրները լուծվում են միայն ու միայն աշխատավորների, լայն հասարակայնության ակտիվ, ամենօրյա մասնակցությամբ։ Այս տեսանկյունով էլ հաշվետու-ընտրական ժողովներում ընդհանրապես և իրավապահպան մարմինների կուսկազմակերպությունների ժողովներում մասնավորապես համակողմանիորեն քննարկվում են աշխատավորներին հուզող շատ հարցեր։ Ժողովներում խնդիր է դրվում, ինչպես այդ պահանջվում է ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշմամբ, կատարելագործել ներքին գործերի, արդարադատության մարմինների գործունեությունը, արմատապես բարելավել սովետական օրինականության, հասարակության շահերի, սովետական քաղաքացիների իրավունքների պաշտպանության համար տարվող աշխատանքը, ուժեղացնել պայքարը իրավախախտումները կանխելու համար, սոցիալիստական սեփականության վրա կատարվող ոտնձգությունների, պորտաբուծության և սոցիալիստական համակեցության կանոնների այլ շեղումների դեմ։

Ժողովներում սկզբունքային խոսակցություն է ծավալվել նոր մարդու աշխարհայացքի ձևավորման, դաստիարակության գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման, գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովման հարցերի շուրջ։ Դաստիարակության խնդիրների կոմպլեքսային լուծման սկզբունքները սահմանել է ՍՄԿԿ XXV համագումարը, իսկ այժմ կուսակցությունը կոմունիստներին զինել է մի նոր ծրագրային փաստաթղթով՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումով, որը գործողության ուղեցույց է մեր գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը համակողմանիորեն քննարկվել է բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում և ամենուրեք գործնական միջոցառումներ են մշակվել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու և կատարելագործելու համար։ Բնականաբար, հաշվետու-ընտրական ժողովները նորից ու նորից են անդրադառնում այդ որոշմանը, քննարկում, թե ինչպիսի հետևողականությամբ են կատարվում դրա պահանջները, կուսկազմակերպությունները, նրանց բյուրոները, կոմիտեները ինչ են արել մասսաների քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության խնդիրները կոմպլեքսային ձևով լուծելու համար։

Ինչպես միշտ, հաշվետու-ընտրական ժողովներում մեծ տեղ է հատկացվում կազմակերպական-կուսակցական աշխատանքի վերլուծությանը։ Հարցերի ամբողջ կոմպլեքսից կոմունիստներն առանձնացնում են հատկապես նրանք, որոնք որոշիչ նշանակություն ունեն ողջ կոլեկտիվի համար՝ բարոյահոգեբանական մթնոլորտը տվյալ կազմակերպությունում ու աշխատավորական կոլեկտիվում, դրանց մարտունակությունն ու ակտիվությունը, տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում ունեցած դերը, աշխատանքի լենինյան ոճի կիրառումը, կոմունիստների ավանգարդային դերը, կադրերի հետ տարվող աշխատանքը, ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության նկատմամբ կուսակցական ղեկավարությունը և այլն։

Կուսակցական յուրաքանչյուր ժողովի հիմնական նպատակը առկա թերությունների վերացումն է, հետագա գործունեության ուղիների մշակումը։ Դրանք արվում են կուսկազմակերպության անդամների միասնական կամքն արտահայտող որոշումների ընդունմամբ։ Հետևաբար, որոշումների կատարումը դառնում է կուսկազմակերպության աշխատանքի չափանիշը։ Այստեղից էլ հաշվետու-ընտրական ժողովների գլխավոր խնդիրներից մեկը՝ հաշվետու զեկուցումներում առանձնահատուկ տեղ հատկացնել որոշումների կատարման ստուգումը կազմակերպելու հարցերին, ամենայն սրությամբ վերհանել ներկուսակցական աշխատանքի այդ կարևոր բնագավառում տեղ գտած թերու-

թյուններն ու թերացումները։ Եվ բնական է, որ ժողովներում այդ խնդիրները պատշաճ ուշադրության են արժանանում։ Հաշվետու զեկուցումներում կոմունիստներին տեղյակ է պահվում, թե իրենց ընդունած որոշումներն ինչպես են կատարվել կամ ինչպիսի հանգամանքներ են խոչընդոտել դրանց կենսագործմանը։ Հաշվետու-ընտրական ժողովի ընդունած որոշումը պետք է լինի կոնկրետ ու հստակ, հասցեագրված, այս կամ այն միջոցառման իրականացման և հանձնարարականների կատարման որոշակի ժամկետներով։ Շատ կուսկազմակերպություններ հենց այդպես էլ վարվում են։

Հաշվետու-ընտրական կամպանիայի հաջող անցկացմանը կոչված են նպաստելու մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Վերջին տարիներին որոշակիորեն ակտիվացել է այդ ասպարեզում մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքը։ Ցանկալի է, որ ժողովը լուսաբանող ընկերը լավ իմանա տվյալ կոլեկտիվի, սկզբնական կուսկազմակերպության խնդիրները, պրոբլեմները, այլապես հաճախ լուսաբանման համար հիմք են ընդունվում միայն հաշվետու զեկուցումը և մի քանի ելույթներ, իսկ նման դեպքում թերթերում տպագրված հոդվածներն ավելի շուտ տնտեսական ցուցանիշների վերլուծության բնույթ են կրում, քան կենդանի մարդկանց գործունեության, կազմակերպչական աշխատանքի ընդհանրացման։

Մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության խնդիրն է հաշվետու-ընտրական ժողովները լուսաբանել համակողմանիորեն և բարձր մակարդակով, հասնել այն բանին, որ այդ նյութերը խորությամբ ընդհանրացնեն առաջավոր փորձը, բազմակողմանիորեն վերլուծեն տվյալ կուսկազմակերպության գործունեությունը և ուսանելի լինեն մյուսների համար։

Սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներին զուգահեռ անցկացվում են կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունների հաշվետվություններն ու ընտրությունները։ Կոմերիտական, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեության բարելավումը կուսակցական աշխատանքի բաղկացուցիչ մասն է և այն չափվում է կուսակցական ղեկավարման մակարդակով։ Այդ հարցերը ևս գտնվում են կուսակցական կազմակերպությունների ամենօրյա գործունեության տեսադաշտում։

Հաշվետու-ընտրական կամպանիայի ավարտին հաշված օրեր են մնում։ Հարկավոր է գործը կազմակերպել այնպես, որ հաշվետու-ընտրական ժողովները նոր ազդակ դառնան տասներորդ հնգամյակում կոլեկտիվների տնտեսական և սոցիալ-կուլտուրական կանխագծումների իրականացման, մասնավորապես 1979 թվականի պետական առաջադրանքների անթերի կատարման, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման համար։

---

# ԿՅԱՆՔԻ ՀԵՏ ՍԵՐՏՈՐԵՆ ԿԱՊՎԱԾ

**Պ. Գ. ՍԱՖՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության Սովետական շրջկոմի առաջին քարտուղար

ՄԱՍՍԱՆԵՐԻ ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, նշել է Վ. Ի. Լենինը, ինչպես միշտ, մնում է մեր ամբողջ աշխատանքի բազան ու գլխավոր բովանդակությունը։ Ղեկավարվելով լենինյան այս ցուցումով՝ կոմունիստական կուսակցությունը, իր պատմության ողջ ընթացքում, առանձնահատուկ ուշադրություն է նվիրել աշխատավորական զանգվածների գիտակցության զարգացման, նրանց նոր հասարակության հաղթանակի համար ակտիվ պայքարի նախապատրաստելու հարցերին։ ՍՄԿԿ-ն պարբերաբար, սոցիալիստական հասարակության առաջընթացի խնդիրներին համապատասխան, մշակել, իր գաղափարական աշխատանքի զինանոցը հարստացրել է աշխատավորների կոմունիստական դաստիարակության նոր, առավել արդյունավետ ձևերով ու մեթոդներով։ Այս մոտեցումը բխում է նոր հասարակության կառուցման և ամրապնդման պահանջներից։

Մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման համար անհրաժեշտ և պարտադիր պայման է ո՛չ միայն նրա նյութատեխնիկական բազայի ստեղծումը, այլև այդ հասարակության նոր, բազմակողմանի զարգացած, կոմունիստական հատկանիշներով օժտված մարդու դաստիարակությունը։ Կոմունիստական հասարակության կառուցման ներկա փուլում, հասուն սոցիալիզմի պայմաններում, ավելի լայն հնարավորություններ են ստեղծված մարդկանց կոմունիստական գիտակցության ձևավորման ասպարեզում կուսակցության ծրագրային նպատակների իրականացման համար։ Այս առումով հսկայական է ՍՄԿԿ XXV համագումարի դերը։ Մշակելով կուսակցության քաղաքական կենսագործունեության հստակ գիծը և դեպի կոմունիզմ սոցիալիստական հասարակության հետագա առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան՝ համագումարը սահմանեց արդի փուլում գաղափարական աշխատանքի հիմնական ուղղությունները։ «Կուսակցական կազմակերպությունների պրակտիկան,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մեզ հուշում է, թե որ ուղիով ընթանալով մենք կարող ենք հասնել այդ գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Դա կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Կուսակցական կազմակերպությունները, հետևողականորեն կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի պահանջները, սովետական մարդկանց դաստիարակում են բարձր գաղափարայնության, հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Նրանք վճռական պայքար են մղում բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկների հաղթահարման, անհատի ներդաշնակ զարգացման համար։

Սովետական ժողովրդի գիտակցության զարգացման, նրա գաղափարա-

կան ղեկավարության գործում վիթխարի դեր են խաղում կուսակցական ուսուցման, քաղաքական լուսավորության ողջ համակարգը, կոմունիստական աշխատանքի դպրոցները, ժողովրդական համալսարանները, տնտեսագիտական կրթության դպրոցները և մասսայական ինֆորմացիայի բազմաթիվ միջոցները։ Սովետական շրջանի բոլոր կոմունիստները և աշխատավորության մեծամասնությունը ներգրավված են ուսուցման տարբեր օղակներում և գտնվում են գաղափարաքաղաքական ակտիվ ներգործության ոլորտում։ ՍՄԿԿ 5.600 անդամներից 5.350-ն ընդգրկված են կուսակցական ուսուցման մեջ, 250-ը պրոպագանդիստական աշխատանք են կատարում, 5.800 աշխատողներ իրենց գիտելիքներն են հարստացնում տնտեսագիտական կրթության դպրոցներում, 2.860-ը՝ ժողովրդական համալսարաններում։

Կուսակցական կազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից խորամուխ լինել գաղափարախոսական աշխատանքի բովանդակության մեջ, ավելի բանիմացությամբ վարել այդ գործը։ Եվ պիտի ասել, որ գաղափարախոսական աշխատանքը դարձել է ավելի ներգործուն ու արդյունավետ։ Շատ կոլեկտիվներում որոշակի փորձ է կուտակվել պրոպագանդան ու ագիտացիան տնտեսական և քաղաքական խնդիրների հետ սերտորեն զուգակցելու, դրանք պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը ծառայեցնելու գործում։ Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունն իր կոնկրետ և առարկայական արտահայտությունն է գտնում այն հայրենանվեր պայքարի մեջ, որը շրջանի աշխատավորները մղում են տասներորդ հնգամյակի պլանների կատարման համար։ Շրջանի աշխատավորական կոլեկտիվները, հաջողությամբ եզրափակելով տասներորդ հնգամյակի երրորդ տարին, չորրորդ՝ վճռական տարում ևս նվաճում են նոր, բարձր բնագծեր։

Մեր երկրում տնտեսական և կուլտուրական շինարարության վիթխարի խնդիրների լուծման, ինչպես նաև սովետական ժողովրդի կոմունիստական գիտակցության ձևավորման անհրաժեշտությունը կուսկազմակերպություններից պահանջում է անշեղորեն ընդլայնել և խորացնել կուսակցության գաղափարական ազդեցությունը աշխատավորական մասսաների վրա, ըստ ամենայնի կատարելագործել կուսակցական պրոպագանդան ու քաղաքական ագիտացիան, հասնել դրանց բարձր արդյունավետության։

Աշխատավորական զանգվածների շրջանում կատարվող գաղափարախոսական աշխատանքի հաջողությունը պայմանավորված է այն մեծ ուշադրությամբ, որը նրան հետևողականորեն նվիրում են Սովետական Միության կոմկուսը և նրա Կենտրոնական կոմիտեն։ Ինչպես հայտնի է, մեր հասարակության զարգացման արդի փուլում գաղափարախոսական աշխատանքի հիմնական խնդիրները հստակորեն և պարզորոշ կերպով սահմանեց ՍՄԿԿ XXV համագումարը։ Նրա առաջադրած խնդիրների լուծման կոնկրետ ուղիները բազմակողմանիորեն մշակվեցին ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ։ Քաղաքական և տեսական ծրագրային նշանակություն ունեցող այդ փաստաթղթում ընդհանրացվել է կուսկազմակերպությունների վերջին տարիների գաղափարախոսական ու դաստիարակչական աշխատանքի հարուստ փորձը, նշվել գաղափարախոսական ողջ աշխատանքի որակի ու արդյունավետության բարձրացման կոնկրետ ուղիները։ Դրանք են՝ պրոպագանդայի և ագիտացիայի գիտական բարձր մակարդակի ապահովումը, դրանց կոնկրետությունն ու գործարարությունը, կապը կյանքի, տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման հետ ուժեղացնելը, պրոպագանդայի ու ագիտացիայի հարձակողական բնույթի հետագա զարգացումը։ Այս երեք պայմանները կազմում են մի ամբողջություն և դրանց փոխադարձ միասնության ապահովմամբ միայն հնարավոր է որոշակի հաջողության հասնել կուսակցական գաղափարախոսական աշխատանքում։

ՍՄԿԿ-ի գաղափարախոսական գործունեության ամենաբնորոշ կողմերից մեկն այն է, որ նա աչքի է ընկնում կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի պայքարի և աշխատանքի հետ անխզելի կապով։ Մեր շրջանում ժողո-



վրդական տնտեսության և կուլտուրական շինարարության բնագավառներում ձեռք բերված հաջողությունները մեծ չափով պայմանավորված են պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի կոնկրետությամբ ու նպատակայնությամբ։ Տեսական սեմինարում, քաղխմբակում ու քաղդպրոցում տվյալ հիմնարկության կամ ձեռնարկության առջև դրված կոնկրետ խնդիրների հետ կապված ուսուցումն ունկնդրի մեջ զարգացնում է աշխատանքի նկատմամբ գիտակցական մոտեցում, ձեռք բերված գիտելիքը դառնում է համոզմունք, իսկ համոզմունքը՝ պրակտիկ գործողության նորմ։ Ահա մեկ բնորոշ օրինակ։ Անցած ուսումնական տարում, երբ «Հայարդկապ» գործարանի «Քաղաքատնտեսության պրոբլեմները» ուսումնասիրող խմբակի պարապմունքի ժամանակ մըտքերի լայն փոխանակություն էր սկսվել հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման գործում արտադրական տարածությունների ռացիոնալ օգտագործման կարևորության մասին, ունկնդիրներ ինժեներ-կոնստրուկտոր Անդրանիկ Բալդրյանը և բաժնի պետ Սլավիկ Մարությանն առաջարկեցին գործարանի փայտամշակման արտադրամասը վերասարքավորել և դարձնել հավաքման արտադրամաս։ Պրոպագանդիստ Հ. Միրզոյանը հանձնարարեց խմբակի ունկնդիրներ, տնտեսագետ Լ. Շահնազարովին և արտադրության պետ Ս. Վասիլյանին՝ ուսումնասիրել այդ առաջարկը և հաջորդ պարապմունքին տեղեկացնել, թե ինչպիսի հնարավորություններ կան այն իրականացնելու համար։

Ստուգման արդյունքները, որոնք հաղորդվեցին հաջորդ պարապմունքում, ցույց տվեցին, որ փայտամշակման արտադրամասի տարածությունը տարիներ շարունակ չի օգտագործվել լրիվ կարողությամբ։ Նույն տարածությունն ունեցող հավաքման առաջին արտադրամասն անցած հինգ տարում թողարկել է 29 միլիոն ռուբլու արտադրանք, իսկ փայտամշակման արտադրամասը՝ ընդամենը 240 հազար ռուբլու։ Պարապմունքի ժամանակ ունկնդիրների արած առաջարկությունը ներկայացվեց գործարանի դիրեկցիայի քննարկմանը։ Որոշվեց փայտամշակման արտադրամասը տեղափոխել այլ շենք և դրա զբաղեցրած տեղում ստեղծել հավաքման արտադրամաս։ Այդպես էլ արվեց։ Այստեղ տեղադրեցին ժամանակակից հոսքային գծեր և սկսեցին թողարկել հեռախոսային կապի նոր ապարատներ։ Անցած մեկուկես տարվա ընթացքում նախկին փայտամշակմանին փոխարինած հավաքման արտադրամասը տվեց 5 միլիոն ռուբլու արտադրանք՝ 18 անգամ գերազանցելով փայտամշակման արտադրամասի 10 տարվա արտադրանքի մակարդակը։ Կուսակցական ուսուցման խմբակում ուսումնասիրվող թեմաների նկատմամբ ունկնդիրների ստեղծագործական մոտեցումը հնարավորություն ընձեռեց այս ձեռնարկությանը՝ տարեկան ավելի թողարկելու 27—28 միլիոն ռուբլու արտադրանք։

Ապահովել պրոպագանդայի և ագիտացիայի կոնկրետությունը, դրանց կապը տնտեսական խնդիրների լուծման հետ, նշանակում է ուսումնասիրել, ընդհանրացնել և լայնորեն արմատավորել նաև առաջավոր փորձը, սովետական գիտության ու տեխնիկայի նվաճումները, լայն թափ հաղորդել սոցիալիստական գործարար մրցությանը։ Կուսակցական, կոմերիտական ուսուցման համակարգում, կոմունիստական աշխատանքի ու առաջավոր փորձի դպրոցներում և մյուս օղակներում ընդգրկված ունկնդիրները, ուսումնասիրելով Երևանի, հանրապետության, երկրի համանման ձեռնարկությունների աշխատանքի առաջավոր փորձը, անհրաժեշտ ջանքեր են գործադրում այն արտադրության մեջ լայնորեն ներդնելու համար։ Նրանք ակտիվորեն պայքարում են հաղթող դուրս գալու անհատական և կոլեկտիվ մրցության մեջ։

Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանն այսօր մասնակցում են մեր շրջանի աշխատավորական բոլոր կոլեկտիվները։ Արտադրության 290 առաջավորներ արդեն կատարել են տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքները, 21 արտադրամաս, 63 բրիգադ, 1.875 բանվոր աշխատում են «Հնգամյակը չորս տարում» նշանաբանով։ Կաշվի գալանտերեայի ֆաբրիկայի կոմունիստական աշխատանքի դպրոցներում ընդգրկված բանվորները հանգամանորեն ուսումնասիրում են սոցիալիստական մրցության կազմակերպման արդյունավետ մեթոդները։ Դրանց արմատավորման

շնորհիվ այսօր ձեռնարկության կոլեկտիվը հասել է բարձր արդյունքների: Հաջողությամբ կատարելով երեք տարվա պլանային առաջադրանքները, կոլեկտիվն այժմ պայքարում է հնգամյակը չորս ու կես տարում կատարելու համար: Այստեղ ծավալված սոցմրցության մեջ ընդգրկված են կոլեկտիվի բոլոր անդամները: Նրանցից յուրաքանչյուրն իր պարտքն է համարում ամեն ինչ անել՝ պետական պլանները և ստանձնած սոցպարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար: Դրան նպաստում է նաև ուսուցման ճիշտ կազմակերպումը: Այսպես, երբ № 1 արտադրամասում գործող աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոցի պարապմունքներից մեկում պրոպագանդիստ Սուսաննա Բալայանը պատմում էր Մոսկվա քաղաքի «Սալյուտ» կարի ֆաբրիկայի կոլեկտիվի աշխատանքի փորձի մասին, դպրոցի բոլոր 34 ունկնդիրները, կարծես մի կամք դարձած, իրենց պատրաստակամությունը հայտնեցին այն ներդնելու իրենց մոտ: Սկզբում երկու արտադրամասում կիրառեցին մոսկվացիների փորձը՝ աշխատել առանց հսկիչի և տալ միայն բարձրորակ արտադրանք: Առաջին արդյունքները գոհացուցիչ էին: Ձեռնարկության կոլեկտիվի 1978 թ. թողարկած ամբողջ արտադրանքի 95 տոկոսը ճանաչվեց առաջին տեսակի: Ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպությունը հավանություն տվեց № 1 արտադրամասի նախաձեռնությանը և որոշեց 1980 թ. ամբողջ կոլեկտիվով աշխատել առանց հսկիչի, տալ միայն առաջին տեսակի արտադրանք, իսկ որականիշի արժանացած արտադրանքը հասցնել ընդհանուր արտադրանքի ծավալի 35—40 տոկոսին:

Կուսակցական կազմակերպությունների ծավալած գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքի գործարարության և կոնկրետության ապահովումը կյանքի հրամայական պահանջն է: Այսօր ևս այն կոչված է ապահովելու այդ ամբողջ աշխատանքի բարձր արդյունավետությունն ու որակը: Նա, ով չի զգում կյանքի զարկերակը, չի կարող լինել իր կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման առաջին շարքերում: «Սովետական մարդը,— ասված է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— պետք է պարզորոշ գիտակցի ժողովրդատնտեսական պլանների կատարմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանն իր անձնական մասնակցության հասարակական նշանակությունը, որպես հայրենիքի հզորության հետագա ամրապնդման, կոմունիզմի հաղթանակի վճռական պայմանի»: Շրջանի կուսակցական կազմակերպություններն իրենց գաղափարախոսական աշխատանքում առաջադրել և հետևողականորեն իրագործում են կարևորագույն մի խնդիր՝ ամեն կերպ բարձրացնել կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի դերը տվյալ հիմնարկ-ձեռնարկության առջև ծառացած սոցիալ-տնտեսական հարցերի հաջող լուծման գործում: Այն իր արտահայտությունն է գտնում պետական պլանների կատարման ու գերակատարման համար շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների անդամների ծավալած ակտիվ պայքարի մեջ: «Ալմաստ» գործարանի չորրորդ արտադրամասի առաջավոր վարպետ Վահան Գալստյանը 1977 թ. գործարանի կուսբյուրոյի որոշմամբ նշանակվեց № 4 արտադրամասի թրծողների բրիգադի ագիտատոր: Այս բրիգադը ետ էր մնում, հաճախ չէր կատարում պլանային առաջադրանքները, դրանով իսկ ձախողում էր ինչպես մյուս բրիգադների, այնպես էլ № 4 արտադրամասի պլանների կատարումը: Բրիգադում ցածր էր աշխատանքային կարգապահությունը, նրա անդամների միջև բացակայում էին փոխադարձ հարգանքն ու վստահությունը: Ագիտատորն առաջին իսկ օրից գործի դրեց տարիների իր հարուստ փորձը: Նա հետաքրքիր և ակտիվ զրուցակից է, կարողանում է թափանցել մարդկանց հոգու և սրտի խորքը, համոզել նրանց: Բրիգադը որոշ հաջողությունների հասավ, բայց դա Գալստյանին չէր գոհացնում: Կենդանի ճշմարտացի խոսքը դեռևս քիչ էր, հարկավոր էր նաև անձնական օրինակ ցույց տալ, գործով ապացուցել իր նվիրվածությունը կոլեկտիվին, աշխատանքին: Նա լավ էր հիշում իր զրույցներից մեկի թեման, որը նվիրված էր սովետական մարդու խոսքի ու գործի միասնության հարցին: Գալստյանը դիմեց արտադրամասի պետին և անցյալ տարի նշանակվեց թրծողների բրիգադի ղեկավար: Այժմ արդեն ո՛չ միայն խոսքով, այլև



գործով, անձնական օրինակով նա իր ետևից տարավ բրիգադի բոլոր անդամներին, նրանց ուժերը նպատակամղեց պլանների կատարմանը, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացմանը: Բրիգադն անցյալ տարի պլանային առաջադրանքը կատարեց 115,6 տոկոսով, բարձր ցուցանիշների համար երկու անգամ արժանացավ սոցմրցության հաղթողի փոխանցիկ դրոշին:

Քաղաքական աշխատողի անձնական օրինակի կոնկրետ դրսևորում է այն, որ շատ պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ, ագիտատորներ սիրով ստանձնում են վարպետ-դաստիարակի պարտականությունը: Շրջանում այսօր վարպետ-դաստիարակի պատվավոր պարտականություն են կատարում 72 ագիտատորներ և քաղինֆորմատորներ: «Արագած» արտադրական միավորման գլխամասային ձեռնարկությունում չորս երիտասարդ ջուլհակուհիների նկատմամբ վարպետ-դաստիարակի շեֆությունն է իրականացնում հմուտ վարպետ Եղսիկ Աշխարհիկյանը: Նորմայով նախատեսված չորսի փոխարեն նա սպասարկում է վեց մեքենա: Նրա սաները՝ Լաուրա Գաբրիելյանը և Անժիկ Մանուկյանը, հմտանալով իրենց սիրած մասնագիտության մեջ, վարպետ-դաստիարակի օրինակով սպասարկում են նույնպես վեց մեքենա:

Գաղափարախոսական աշխատանքի միջոցով սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորումը, նրանց անսահման սերը սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, հավատը կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության հանդեպ, որն ուղղված է ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացմանը, սովետական մարդկանց դաստիարակում է կյանքում ակտիվ դիրքորոշման, հասարակական պարտքի անթերի կատարման ոգով: Շրջանում ավելի քան 5.300 աշխատավորներ ընդգրկված են բնակչության մեջ ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի տարբեր օղակներում և ակտիվորեն մասնակցում են թաղամասերի բարեկարգման, կանաչապատման, սանիտարական վիճակի բարելավման գործին: 1.118 բանվոր-ծառայողներ բանվորական վերահսկողություն են իրականացնում շրջանի առևտրական և հասարակական սննդի ձեռնարկությունների նկատմամբ: Ընթացիկ տարվա գարնանը կազմակերպված շաբաթօրյակներին մասնակցեցին ավելի քան 100 հազար աշխատավորներ: Նրանք տնկեցին 146 հազար ծառ ու թուփ, ճիմապատեցին 12 հազար քմ տարածություն, բարեկարգեցին 7 փողոց ու հրապարակ, ստեղծեցին 4 պուրակ ու այգի, Քանաքեռի սարալանջին 28 հեկտարի վրա հիմնադրեցին մանկական հանգստի և կուլտուրայի զբոսայգի: Նոր Նորքի № 6 միկրոշրջանի № 23 շենքի բնակիչ, ՍՄԿԿ անդամ Պարույր Խաչատրյանը, շենքի երեխաների հանգիստը հետաքրքրական ձևով կազմակերպելու նպատակով, բնակիչների ակտիվ մասնակցությամբ բակում կառուցեց ճամբար՝ սպորտ հրապարակով: Երեխաների համար անցկացվող միջոցառումներից բացի, այստեղ համարյա ամեն օր բնակիչների համար կազմակերպվում են քաղաքական-հասարակական թեմաներով զրույցներ:

Շրջանի աշխատավորները ժողովրդական դրուժինիկների շարքերում հսկում են կարգ ու կանոնին, պայքարում սոցիալիստական օրինականության խախտումների դեմ: Աշխատավորների, ամբողջ բնակչության քաղաքացիական ակտիվ դիրքորոշման շնորհիվ շրջանում աստիճանաբար նվազում են իրավախախտումները, կրճատվում հանցագործությունները:

Շրջանի կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արդյունքների խոր ու բազմակողմանի վերլուծությունը միաժամանակ ցույց է տալիս, որ շրջանի սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերված հաջողություններն ավելի ծանրակշիռ կլինեին, եթե աշխատավորական զանգվածների և բնակչության շրջանում տարվող պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքում տեղ չգտնեին մի շարք լուրջ թերություններ, եթե նրա կապը պրակտիկայի հետ լիներ սերտ, ժամանակին և ճիշտ պատասխան տվեր կյանքի հրատապ հարցերին: Որոշ կուսակցական կազմակերպություններում (№ 6 ավտոձեռնարկության, աղի հանքի, հացի № 7 գործարանի, քանդակագործական-գեղարվեստական կոմբինատի) ուսուցումը չունի նպատա-

կայլացություն և կոնկրետություն, կազմակերպվող քաղաքական-մասսայական միջոցառումները կարծես ինքնանպատակ են։ Տարիներ շարունակ կոմունիստների և անկուսակցականների առերևույթ լավ կազմակերպված ուսուցումը, եթե չասենք ոչնչով, ապա աննշան չափով է ներգործել մարդու, կոլեկտիվի վարքագծի, աշխատանքային գործունեության, նրա բարոյաքաղաքական մթնոլորտի բարելավման վրա։ Ըստ հաշվետվությունների և շրջկոմում ստացված ինֆորմացիաների՝ սարքաշինական գործարանում (կուսկոմիտեի քարտուղար՝ Կ. Բունիաթյան) բավարար հիմքերի վրա է դրված կոլեկտիվի շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքը։ Կանոնավոր կերպով գործում են կուսակցական և կոմերիտական ուսուցման խմբակներն ու տնտեսագիտության դպրոցները, պարբերաբար կազմակերպում են դասախոսություններ ու զեկուցումներ։ Արտաքուստ ամեն ինչ լավ է, բայց երբ զրուցում ես խմբակներում ու դպրոցներում ընդգրկված ունկնդիրների հետ, համոզվում ես, որ ամբողջ տարում նրանց ուսուցումը սպասված արդյունքը չի տվել։ Ունկնդիրները չգիտեն, թե ինչ ուղիներով է հնարավոր բարձրացնել աշխատանքի արդյունավետությունը, արտադրանքի որակը, ինչպես է գոյանում արտադրանքի ինքնարժեքը և այլ հարցեր։ Ձևական, գործարանի կոլեկտիվի առջև դրված խնդիրներից կտրված, ոչ նպատակային քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ըստ էության, որևէ ներգործություն չի ունենում ձեռնարկության կոլեկտիվի վրա։ Այստեղ ընկած է պետական և աշխատանքային կարգապահությունը։ Գործարանի կոլեկտիվը չի կատարում պետական պլանային առաջադրանքները, յուրաքանչյուր օր աշխատանքից ուշանում է մի քանի հարյուր մարդ, կոլեկտիվի անդամները խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները։

Կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ տակավին դանդաղ է արմատավորվում դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային մեթոդը, այն դեռևս չի դարձել քաղաքական աշխատանքի հիմնական գործելակերպը։ Յուղսառցյարան կոմբինատի, հացի փորձարարական գործարանի, № 32 պրոֆտեխուսումնարանի և այլ սկզբնական կուսկազմակերպություններ, անհրաժեշտ ուշադրություն դարձնելով քաղաքական դաստիարակության հարցերին, անտեսում կամ ետին պլան են մղում կոլեկտիվի անդամների բարոյական և հատկապես աշխատանքային դաստիարակության խնդիրները։ Մեծ է կադրերի հոսունությունը արդյունաբերական ձեռնարկություններում։ Այն կազմում է 25 տոկոս։ Աշխատանքային կայուն կոլեկտիվներ ստեղծելու ասպարեզում անբավարար գործունեություն են ծավալում սպորտային իրերի կոմբինատի, տեխնոլոգիական սարքավորումների, Ալ. Մյասնիկյանի անվան մեխանիկական գործարանների սկզբնական կուսկազմակերպությունները։ Քիչ չեն փաստերը, երբ շրջանի միջնակարգ դպրոցների շրջանավարտները խույս են տալիս հանրօգուտ աշխատանքից։ Նրանց մի մասի մոտ սկսել են երևան գալ սպառողական նկրտումներ։ Աշխատանքային դաստիարակությունն առանձնապես անբավարար հիմքերի վրա է շրջանի №№ 117, 125, 134, 163 և այլ դպրոցներում։ Որոշ մանկավարժներ դեռևս ունեն այն սխալ մտայնությունը, որ եթե երեխան դպրոցում չի առաջադիմում, ուրեմն չի կարող մարդ դառնալ. «մարդ դառնալու» հասկացությունը նրանք ուղղակի կապում են բարձրագույն կրթություն ստանալու հետ։ Այդ սխալ, ուղղակի վնասակար մտայնությունը, անշուշտ, բացասական ազդեցություն է ունենում սովորողների աշխարհայացքի ձևավորման, աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունք մշակելու վրա։

Շրջանի կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի մյուս բնորոշ թերությունը նրա անբավարար մարտունակությունն է և մեր կյանքին անհարիր երևույթների դեմ թույլ պայքարը։ Պրոպագանդիստական, ագիտացիոն աշխատանքի սերտ կապը կյանքի հետ, առաջին հերթին, պետք է դրսևորվի նորը, առաջավորը, հեռանկարայինը պաշտպանելու, մեր առաջընթացին խանգարող երևույթների, մարդկանց գիտակցության և վարմունքի մեջ հնի, իր դարն ապրածի դեմ անզիջում պայքար մղելու մեջ։ Կուսակցական կազմակերպությունները միշտ չէ, որ կոմունիստների ուժերը



նպատակամղում են անցյալի այլանդակ մնացուկներն արմատախիլ անելուն, աշխատավորներին կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ անհանդուրժողականության ոգով դաստիարակելուն։

Կուսակցական շատ կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի մակարդակը չի բավարարում այսօրվա պահանջները։ Գաղափարական ճակատի կադրերը՝ պրոպագանդիստները, քաղինֆորմատորները, ագիտատորները երբեմն անկիրք, պասիվ, հայեցողական վերաբերմունք ունեն մեր կյանքի խորթ երևույթների նկատմամբ։ Այդ երևույթների նրանց մեկնաբանություններում հաճախ չի զգացվում խոր իրազեկությունը։ Մինչդեռ մարդկանց սոցիալական իներտությունը, սոցիալական պասսիվությունը ո՛չ միայն չեն օգնում մեր կյանքին խորթ երևույթների վերացմանը, այլև օբյեկտիվորեն նպաստում են դրանց աշխուժացմանը։ Այսօր ամենավտանգավոր երևույթը, որը նույնիսկ տարածվելու միտում ունի, դա որոշ կոմունիստների ու աշխատավորների մի մասի մոտ նկատվող անտարբերությունն է, պասիվ վերաբերմունքը կոմունիստական բարոյականությանը խորթ բարքերի նկատմամբ։ Կյանքում այդպիսի դիրքորոշումը անհամատեղելի է սոցիալիստական ապրելակերպի բուն ոգուն և հղի է վտանգավոր հետևանքներով։ Ժամանակի հրամայական պահանջն է, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ կուսակցական ուսուցման համակարգում ձեռք բերված գիտելիքների հիման վրա կյանքում գրավի ակտիվ քաղաքացիական, կուսակցական դիրք։

Գաղափարախոսական աշխատանքի սերտ կապը կյանքի հետ ենթադրում է նաև նկատել, տեսնել կյանքի նոր երևույթները, մարքսիզմ-լենինիզմի տեսության իմացության հիման վրա դրանց տալ գիտական բացատրություն, պաշտպանել նորը, առաջավորը, քննադատել ու խարազանել խորթը, անընդունելին։ Վերջին տարիներին Երևանում երիտասարդության մի մասի մոտ տարածում են գտել մեր բարոյականությանը խորթ մի շարք երևույթներ, որոնք պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքում կարծես չեն նկատվում և, հետևաբար, ակտիվ պայքար չի մղվում դրանց դեմ։ Խոսքն ամենից առաջ վերաբերում է ամուսնալուծության և հարբեցողության դեմ պայքարի հարցերին։ Վերջին հինգ տարվա ընթացքում մեր շրջանում ամուսնալուծությունը 15 տոկոսից բարձրացել է 21,1 տոկոսի։ Ավելի վտանգավոր չափեր է ընդունում հարբեցողությունը։ Եթե 1972 թ. հարբեցողության և դրան հաջորդած զանցանքների համար միլիցիայի շրջանային բաժին էին տարվել 47 քաղաքացիներ, ապա անցյալ տարի այդ թիվը հասել էր 152-ի կամ ավելացել երեք անգամ։ Նման փաստերը չեն կարող չանհանգստացնել կուսկազմակերպություններին։ Մինչդեռ շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների դաստիարակչական աշխատանքի ոլորտից հաճախ այս հարցերը դուրս են մնում։

Գաղափարախոսական աշխատանքի հետագա բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը կուսակցական կազմակերպությունների ձեռքին նոր, հզոր զենք է՝ աշխատավորական զանգվածների կոմունիստական դաստիարակության գործը այսօրվա խնդիրների մակարդակին բարձրացնելու համար։ Եթե ՍՄԿԿ XXV համագումարում, մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման արդի պահանջներից ելնելով, մշակվեց գաղափարախոսական աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացման գիտականորեն հիմնավորված մեթոդը՝ կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման մեթոդը, ապա «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը հավաստիորեն ցույց է տալիս դրա արդյունավետ կիրառման կոնկրետ ուղիները։

Սովետական շրջանի կուսակցական կազմակերպությունները, ՍՄԿԿ Կենտկոմի այս որոշումն ընդունելով որպես գործողության ուղեցույց, պրակտիկ կոմպլեքս միջոցառումներ են մշակում՝ գաղափարախոսական ողջ աշխատանքը կուսակցության այսօրվա պահանջների մակարդակին բարձրացնելու համար։

---

Դաստիարակությանը՝

կոմպլեքսային մոտեցում

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակությունը բնորոշվում է ո՛չ միայն նյութատեխնիկական հզոր պոտենցիալով ու կատարելագործվող հասարակական հարաբերություններով, այլ նաև սոցիալիստական անհատի բարձր գիտակցականությամբ, գաղափարաքաղաքական և արժույթային ճիշտ կողմնորոշմամբ: Որակական այս առաջընթացը դյուրությամբ ձեռք չի բերվել: Այն արդյունք է կոմունիստական կուսակցության գաղափարաքաղաքական, կազմակերպչական և տնտեսական համակողմանի գործունեության, որն ուժ ու ավյուն է ներարկում սովետական բազմազգ ժողովրդի հայրենանվեր անձնուրաց գործունեությանը:

Մեր հասարակության զարգացման բոլոր փուլերում, նրա կենսագործունեության բոլոր ոլորտներում, էկոնոմիկայից մինչև գիտություն ու մշակույթ, չափազանց մեծ դեր են կատարում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործոնները: ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը համարում է կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատ: Գաղափարական դաստիարակության նպատակը մարդկանց կողմից գիտելիքների, վարքագծի կանոնների սոսկ յուրացումը չէ, այլ նրանց ակտիվ կենսագործունեությունը, որի ընթացքում գաղափարները վերածվում են համոզմունքի, դառնում ամենօրյա վարքագծի շարժառիթներ ու նորմեր, մշակվում է սոցիալական կենսադիրքորոշում, ձևավորվում են մարդկանց հասարակական պահանջմունքներն ու ունակությունները: Գաղափարական դաստիարակության հարցերը շոշափում են հասարակության և անհատի փոխհարաբերությունների բարդ դիալեկտիկան, արտահայտում այն պահանջների էությունը, որոնք մարդիկ ներկայացնում են հասարակությանը, միմյանց, յուրաքանչյուրն՝ իրեն: Գաղափարաքաղաքական դաստիարակությունն իմաստավորում է սոցիալական միջավայրի ձևավորող ֆունկցիան և նպաստում անհատի սոցիալական անչությունների դրսևորմանը:

Սոցիալիզմի օրոք, առավելապես դրա հասուն շրջանում, երբ հաղթահարվում է տարերայնության պրոցեսը և անկասելիորեն հաստատվում են հասարակության կառավարման գիտական սկզբունքները, որպես գաղափարական դաստիարակության պրոցեսի տեսական հիմնավորման և արդյունավետության բարձրացման փորձված միջոց, հույժ կարևորվում է այդ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման խնդիրը:

Դաստիարակության գործին կոմպլեքսային մոտեցման նպատակն է հաստատել կոմունիստական գաղափարայնություն, որը ենթադրում է գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողությունների միասնություն: Այն



կուսակցության գաղափարա-դաստիարակչական գործունեության ամբողջական ու կուռ գործող համակարգ է: Կոմպլեքսային մոտեցումը գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնությունն է: Այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել աշխատավորության սոցիալական տարբեր խմբերի պահանջները, դրանց նկատմամբ ցուցաբերել տարբերակված մոտեցում:

Գաղափարադաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցման հարցերը նոր սրությամբ դրվեցին «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Համակուսակցական նշանակություն ունեցող այդ փաստաթուղթը գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքի համապարփակ ծրագիր է, ներկա փուլում կուսակցական կազմակերպությունների, գաղափարական կադրերի, բոլոր կոմունիստների գործողության ուղեցույց:

Կոմպլեքսային մոտեցման խնդիրներն այսօր հաճախ են լուսաբանվում կուսակցական մամուլի էջերում: Այդ հարցն ավելի ամբողջական է ներկայացնում Գ. Լ. Սմիռնովը, որը «Պրավդա» թերթի 1976 թ. սեպտեմբերի 14-ի համարում զետեղված իր հոդվածում առանձնացնում է հարցի հետևյալ կարևոր կողմերը. «նախ, դաստիարակչական ներգործության (գաղափարաքաղաքական, աշխատանքային, բարոյական) նպատակների միասնությունը. երկրորդ, հասարակական կյանքի տեխնիկատնտեսական, կազմակերպական, գաղափարախոսական և այլ գործոնների հաշվառումը. երրորդ, դաստիարակության բոլոր միջոցների աշխատանքի պլանավորման ու կոորդինացման բարելավումը. չորրորդ, դաստիարակության ներգործության տարածումը ամբողջ բնակչության վրա, հաշվի առնելով տարբեր խմբերի առանձնահատկությունները. հինգերորդ, լուսավորության և ուսուցման հետևողական զուգակցումը, բոլոր մարդկանց ներգրավելով սոցիալական պրակտիկայի մեջ, նրանց մասնակից դարձնելով աշխատանքի և հասարակական գործերի կառավարմանը. վեցերորդ, դաստիարակչական ջանքերի արդյունավետության մշտական գործնական ստուգումը. այդ հիման վրա իսկ դաստիարակության պրոցեսի շտկումը գիտական մեթոդների օգնությամբ»:

Գաղափարախոսական աշխատանքի՝ որպես հասարակության հոգևոր կենսագործունեության ձևի, արդյունավետության բարձրացման ուղիների և միջոցների մշակման գործում կուսակցական-պրոպագանդիստական և գիտական կադրերին դեպի կոմպլեքսային մոտեցում կողմնորոշող գործոնները բազմազան են: Նշենք դրանցից մի քանիսը. նոր ապրելակերպի ձևավորումը, կենսապայմանների բարելավման հետ միասին բարոյական որոշ արժույթների նոր կերպափոխությունը, իրենց հետ սոցիալական նոր ինֆորմացիա, նոր գիտելիքներ և նոր տրամադրություններ բերող աճող սերունդների մուտքը կյանք, նրանց սոցիալիզացման պայմանների անհամեմատ ընդլայնումը, գիտության և տեխնիկայի առաջընթացի շնորհիվ սոցիալ-տնտեսական պայմանների նորացումը և որպես իրականության ու սեփական պահանջների նկատմամբ մարդկանց վերաբերմունքի կարգավորիչ՝ բնակչության գիտակցականության ու իրազեկության աճը, միջազգային կյանքում տեղի ունեցող սրընթաց տեղաշարժերը՝ կապված երկու սիստեմների գաղափարական օրավուր աճող հակամարտության հետ:

Կոմպլեքսային մոտեցումը առանձնահատուկ է ներկայիս շատ երևույթների և պրոցեսների: Մենք խոսում ենք տնտեսական խնդիրների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման (զուգակցելով միջանկյալ օղակներն ու վերջնական արդյունքները), արտադրաուժերի կոմպլեքս զարգացման, բնակչության սպասարկմանը կոմպլեքսային մոտեցման մասին և այլն: Ամենից ավելի «կոմպլեքսային» տերմինը համահնչուն է գաղափարական ներազդման պրոցեսին. այն հաղորդում է գիտելիքների կոմպլեքս, առնչվում է լսարանների կոմպլեքսի հետ և իրապես վճռում է միմյանց հետ փոխկապակցված հարցերի կոմպլեքս: Այս իմաստով գաղափարական աշխատանքին կոմպլեքսային կամ սիստեմային մոտեցման ուղղությամբ ներդրվող ջանքերը միանգամայն տեղին են և արդարացված: Գաղափարադաստիարակչական խնդիր-

ների լուծման գործում կոմպլեքսային մոտեցումը ենթադրում է դաստիարակության նպատակների՝ մարդկանց գիտակցության և վարքագծի այն հատկանիշների հատուկ կանխորոշում, որոնք առավել լիարժեքությամբ կհամապատասխանեն մեր գաղափարախոսության և բարոյական նորմերին. արտադրության արդյունավետության բարձրացմանը աշխատավորների գիտակցական ներգրավման գործում պրոպագանդայի, այդ թվում՝ մասսայական ինֆորմացիայի միջոցների զուգակցում. արտադրության, ինչպես նաև ըստ բնակության վայրի դաստիարակչական աշխատանքի օրգանական զուգակցում աշխատավորության տարբեր սոցիալական խմբերի յուրահատուկ առանձնահատկությունների հետ: Այսպիսով, գաղափարական պրոցեսի վրա կոմպլեքսային ներազդումը ենթադրում է գիտական կազմակերպում, մարդկանց գիտակցության մեջ կոմունիստական գաղափարախոսության պլանաչափ և նպատակային ներարկում, այդ նպատակով գիտական սկզբունքների, ժամանակակից տեխնիկական միջոցների օգտագործում, ինֆորմացիայի սիստեմի կատարելագործում, արդյունավետության բարձրացում և այլն:

Կոմունիստական դաստիարակությունը միասնական պրոցես է այն առումով, որ չի կարելի մարդու անհատականության որևէ հատկանիշ ձևավորել՝ չաղերսվելով մյուսներին: Մարդը մաս առ մաս չի դաստիարակվում: Այդ գործում ամեն ինչ փոխկապակցված է, դրա համար էլ դաստիարակությունը պետք է լինի միասնական, ամբողջական պրոցես, չնայած որ չի բացառվում դաստիարակության որևէ կողմի գերադասելիության հնարավորությունը:

Կոմունիստական դաստիարակության սիստեմի բոլոր բաղադրիչների միասնությունն արտահայտվում է նրանց նպատակների, խնդիրների, միջոցների, մեթոդների միասնության մեջ, որը օբյեկտիվորեն պայմանավորված է հասարակական կեցության և հասարակական գիտակցության բոլոր կողմերի միասնությամբ: Գաղափարաքաղաքական դաստիարակության կոմպլեքսայնությունն իրականացվում է մի քանի ուղղություններով. գիտական աշխարհայացքի ձևավորում, հասարակական-քաղաքական դաստիարակություն, սովետական մարդկանց սոցիալական ակտիվության զարգացում և այլն: Գաղափարաքաղաքական աշխատանքի անկապտելի մասն է նաև հայրենասիրական, ինտերնացիոնալ, բարոյական, իրավական, գեղագիտական, գիտաաթեիստական և ֆիզիկական դաստիարակությունը:

Աշխատանքային դաստիարակության նպատակն է գործի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ձևավորումը, աշխատավորներին սոցմրցության մեջ ներգրավելը, սոցիալիստական աշխատանքային կարգապահության ամրապնդումը, աշխատանքի որակի համար պատասխանատվության բարձրացումը:

Աշխատանքային դաստիարակության գործում, ինչպես ցույց է տալիս փորձը, շատ կարևոր է դպրոցի, ընտանիքի և արտադրական կոլեկտիվների ջանքերի միավորումը: Գաղափարադաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցումը անհնար է իրականացնել առանց կատարելագործելու արտադրության բուն պրոցեսը, առանց բարելավելու աշխատավորների աշխատանքի և կենցաղի պայմանները: Այս ամենն արտացոլվում է կոլեկտիվների՝ վերջին տարիներին լայնորեն տարածված սոցիալական զարգացման հեռանկարային պլաններում:

Բարոյական դաստիարակության խնդիրները հստակորեն ձևակերպված են կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետվության մեջ. «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին,— նշեց Լ. Ի. Բրեժնևը,— ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ: Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116): Կոմունիստական բարոյականության պահանջներն արտացոլում են սովետական մարդկանց վերաբերմունքը սոցիալիստական հայրենիքի, աշխատանքային կոլեկտիվի, ընտանիքի հանդեպ, կանխորոշում միջանձնային փոխհարաբերությունները, բնորոշում անհատի բարոյական հատկանիշները, նրա սո-



ցիալական վարքագիծը: Եվ իսկապես, զարգացած սոցիալիստական հասարակության կյանքում, անհատի վարքագծում մեծանում է բարոյական գործոնի դերը: Գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության միասնությունը նշանակում է անհատի վրա միաժամանակ ներազդել գաղափարական ներգործման բոլոր եղանակներով ու միջոցներով:

Կոմպլեքսային ձևով օգտագործելով անհատի վրա ներազդելու տնտեսական, կազմակերպական, գաղափարախոսական, իրավական, կուլտուրական և դաստիարակչական միջոցները, հասարակական կարծիքի ուժը, սոցիալական քաղաքականությունն ապահովում է հասարակական բարքերի հետևողական կատարելագործում. հաղթահարում է ինչպես տնտեսական զարգացմանը, այնպես էլ բարոյական դաստիարակությանը վնասող ապրելակերպի բարոյական խոտորումները:

Բազմակողմանի զարգացած անհատի ձևավորման կառավարմանը կոմպլեքսային մոտեցման կարևորագույն պայմաններից մեկը մարդկանց վարքագծի, նրանց հոգևոր պահանջների, հնարավորությունների, արժույթային կողմնորոշման, այլ կերպ՝ նրանց ապրելակերպի չափանիշների մշակումն է: Սովետական մարդը դաստիարակվում է մեր հասարակության կյանքի ամբողջ կացութաձևով: Կոմունիստական դաստիարակությանը կոմպլեքսային մոտեցումը ենթադրում է զարգացած սոցիալիզմի հասումների առավելագույն օգտագործում, գաղափարաբարոյական բարձր հատկանիշների պատվաստում, բուրժուական գաղափարախոսության, բարոյազրկության և սոցիալական պորտաբուծության հանդեպ անհաշտվողականության դաստիարակում:

Գիտականորեն հիմնավորված երկարաժամկետ ծրագրերի և կանխահաշվարկների օգնությամբ կոմունիստական շինարարության սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրների կոմպլեքսային լուծման հնարավորությունն ու անհրաժեշտությունը զարգացած սոցիալիզմի կարևոր բնութագրումներից մեկն է: Պլանավորումը հետզհետե դառնում է գաղափարախոսական ոլորտի կառավարման առանցքը, նրա ելակետային տարրը: Գաղափարադաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցումը առաջին հերթին իրականացվում է դրա հեռանկարային և ընթացիկ պլանավորման մեջ, որն, ի դեպ, պետք է կրի կանխատեսման բնույթ, դիտվի որպես սոցիալական պլանավորման անբաժանելի մաս:

Կոմպլեքսային մոտեցումը, որպես գաղափարախոսական աշխատանքի գիտական կառավարման պայման, գաղափարական կադրերի հաջող գործունեության ելակետ, ենթադրում է ղեկավարման և կատարման միասնություն: Կառավարման արդյունավետությունը զգալի չափով պայմանավորված է նրանով, թե արդյոք ապահովվո՞ւմ է տարբեր ժամանակներում և տարբեր մակարդակներում ընդունված կառավարչական որոշումների միասնությունը: Յուրաքանչյուր պրոբլեմի լուծումը, լինի դա տնտեսական, թե գաղափարադաստիարակչական, պահանջում է գործողությունների աստիճանականություն և արդյունավետության ապահովում:

Գաղափարադաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցումը ենթադրում է սոցիոլոգիական մեթոդների և էմպիրիկ տվյալների օգտագործում: Վ. Ի. Լենինը սոցիոլոգիական հետազոտությունները դիտում էր որպես աշխատավորների հոգեբանության և բուն իրականության ուսումնասիրման կարևորագույն միջոցներից մեկը: Նա գտնում էր, որ նման հետազոտությունները մեծապես կօգնեն լավ ուսումնասիրելու հասարակական գիտակցությունը և կատարելագործելու դրա վրա ներազդելու միջոցները: Սոցիոլոգիական հետազոտությունների օգնությամբ հասարակական երևույթների ուսումնասիրությունն առավել նպատակային է դարձնում գաղափարախոսական աշխատանքը, գիտական կայուն հիմքերի վրա է դրվում գաղափարական ներազդման ողջ համակարգը, իրական նախադրյալներ են ստեղծվում կոպլեքսային մոտեցման համար:

Դաստիարակության պրոցեսում ներազդման ոչ մի միջոց ունիվերսալ լինել չի կարող: Ներազդման ամենալավ մեթոդը կամ միջոցն իսկ ցանկալի արդյունք չի կարող տալ, եթե այն չի գործում համակարգի շրջանակներում, չի

զուգակցվում մյուսների հետ: Ըստ որում, որպեսզի յուրաքանչյուր միջոց օգտագործվի առավել օգտակարությամբ, անհրաժեշտ է հստակորեն որոշել նրա ճիշտ տեղը անհատի վրա ներազդման ընդհանուր համակարգում:

Կոմունիստական դաստիարակությունը բարդ ու դինամիկ համակարգ է, որն ընդգրկում է ներազդման որոշակի բաղադրամասեր՝ առաջին հերթին բուն սոցիալիստական աշխարհըմբռնումը՝ որպես աշխատավորության, բանվոր դասակարգի, նրանց ապրելակերպի փիլիսոփայական, տնտեսական, քաղաքական, իրավական, բարոյական, գեղարվեստական և այլ արմատական հայացքների ու գաղափարների ամբողջություն: Գաղափարախոսական աշխատանքն իրականացվում է դաստիարակության որոշակի ֆունկցիաներով օժտված մարմինների և կազմակերպությունների միջոցով:

Գաղափարախոսական գործունեության բաղադրամասերի կոմպլեքսային և համաձայնեցված օգտագործման դեպքում կոորդինացումը կարող է տալ առավել շոշափելի արդյունք և հանդես գալ որպես դրա օբյեկտիվ և սուբյեկտիվ բովանդակության միասնություն: Կուսակցական, պետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններն ու դրանց գաղափարական հիմնարկություններն են գաղափարախոսական աշխատանքի իրականացնողները:

Գաղափարախոսական աշխատանքը տարողունակ է, բազմանիստ ու համապարփակ, այն ամենօրյա կոնկրետ գործունեություն է: Դրա արդյունավետությունը պայմանավորվում է կոլեկտիվներում տիրող բարոյահոգեբանական մթնոլորտով, նրանց ստեղծագործական պոտենցիալով, հասարակական տրամադրություններով, տնտեսական-քաղաքական խնդիրների վճռման որակով, որոնցով առարկայանում է գաղափարական ողջ համալիրի գործունեությունը:

Գլխավոր ցուցանիշը յուրաքանչյուրի կողմից մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական բարոյականության նորմերի իրացումն է, գաղափարները համոզմունքի, գործողության դրդապատճառի վերածելու հաջողությունը, այլ կերպ՝ անհատի սոցիալիզացիան է կամ հասարակական, քաղաքական պարտքի և անձի բարոյական պատասխանատվության համաձուլվածքը հանդիսացող անհատի ակտիվ կենսադիրքորոշումը: Այն հարցին, թե ինչ հատկանիշներով մենք պետք է դատենք ոչ անհատների ոչ «խոհերի ու զգացմունքների» մասին, Վ. Ի. Լենինը պատասխանում է. «... այդպիսի հատկանիշ միայն մեկը կարող է լինել, այն է՝ այդ անհատների գործողությունները և քանի որ խոսքը միայն հասարակական «խոհերի ու զգացմունքների» մասին է, ապա պետք է ավելացնել նաև՝ անհատների հասարակական գործողությունները, այսինքն սոցիալական փաստերը» (ԵԼԺ, հ. 1, էջ 514):

Սոցիալական պրոցեսները, այդ թվում՝ գաղափարախոսական գործունեությանը կոմպլեքսային մոտեցման հարցերն այսօր կուսակցության համակ ուշադրության կենտրոնում են: Մեր երկրի բազմաթիվ քաղկոմ-շրջկոմներում և սկզբնական կուսկազմակերպություններում վերջին տարիներին սկսել են կազմվել և հաջողությամբ կիրառվում են կոմունիստական դաստիարակության կոմպլեքս պլաններ: Իրարից զանազանվելով միայն տվյալ սոցիալական բջջի իրավիճակից բխող տարբերություններով, այդ պլաններում համանշանակ են մասսայական-քաղաքական, ինտերնացիոնալ, բարոյական, գեղագիտական և ֆիզիկական դաստիարակության, ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի բաժինները: Այս ամենը կազմում են կոլեկտիվների, վարչական միավորների սոցիալական զարգացման հեռանկարային պլանների բաղկացուցիչ մասը, դրանց օրգանական շարունակությունը:

Ինչպես ողջ երկրի, այնպես էլ մեր հանրապետության կուսակցական շատ կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության պրակտիկայում կոմպլեքսային մոտեցման ներդրման ոլորտում կուտակվել է որոշակի փորձ: Մամուլում արդեն գրվել է այդ ասպարեզում ՀԿԿ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմների ծավալած գործունեության մասին: Աշխատանքի տարբեր ձևերի ու մեթոդների օգտագործման շնորհիվ գաղափարադաստիարակչական աշխատանքում նպատակների և ուղղությունների միասնության ապահովման, կուսկազմակերպությունների, սովետական և տնտեսական



օրգանների ջանքերի միատեղման, ուժերի պլանաչափ տեղաբաշխման ու փոխգործողությունների միասնականության շնորհիվ ձեռք են բերվել որոշակի հաջողություններ: Աշխատավորության բարոյաքաղաքական, ակտիվ կենսադիրքորոշման ոգով դաստիարակման ասպարեզում դրական փորձ կա նաև հանրապետության այլ կազմակերպություններում՝ Երևանի ալյումինի գործարանում, Հրազդանի ՊՇԷԿ-ում, Աղավնաձորի կոլտնտեսությունում, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում և այլն: Գրեթե ամենուրեք պրակտիկա է դարձել աշխատավորության դաստիարակման գործում ղեկավար կադրերի ակտիվ մասնակցությունը: Սակայն, հարկ է նշել, որ գաղափարադաստիարակչական աշխատանքում կոմպլեքսային մոտեցում կիրառելիս մեզ մոտ դեռևս նկատվում են որոշակի թերություններ, չլուծված պրոբլեմներ: Կան տեղեր, ուր անցկացվող քաղաքական միջոցառումները չեն կապվում տվյալ կոլեկտիվի կոնկրետ գործերի վիճակի, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման հետ:

Կոմպլեքսային մոտեցման հաջողությունը մեծ չափով պայմանավորված է կադրերի գաղափարատեսական պատրաստականությամբ, կուսակցության առաջադրած խնդիրների խոր իմացությամբ: Գաղափարախոսական ճակատի աշխատողները մշտապես զբաղված են մարդկանց աշխարհայացքը, մտածելակերպը մշակելու, ճաշակը բարձրացնելու, սոցիալական վարքագիծը դաստիարակելու գործով: Այս ամենում ցանկալի արդյունքի հասնելու համար անհրաժեշտ է նաև ըստ ամենայնի բարձրացնել ընթացիկ և հեռանկարային պլանավորման, կոմպլեքսային մոտեցման աշխատանքները:

Դաստիարակությանը կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու նպատակն է ամբողջ ազգաբնակչությանը գաղափարական ներազդման ոլորտում ընդգրկելը, բոլոր մարդկանց սոցիալական ակտիվությունը լուսավորության և կրթության հետ զուգակցելը, գիտական մեթոդների առավել օգտագործումը, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրները լուծելիս դաստիարակչական ջանքերի արդյունավետության բարձրացումը:

Տնտեսական, սոցիալական, գաղափարադաստիարակչական և կուլտուրական հարցերի լուծմանը կոմպլեքսային մոտեցումը պրակտիկ գործունեության սկզբունքորեն նոր, բացառիկ կարևոր միջոց է, որը պահանջում է հիմնարար մշակումներ, գիտությունների տարբեր բնագավառների մասնագետների, գիտնականների և պրակտիկ աշխատողների ջանքերի կոորդինացում:

Գաղափարադաստիարակչական բոլոր խնդիրների կոմպլեքսային լուծումը հնարավորություն կընձեռի առավել բարելավելու գաղափարախոսական աշխատանքը, որի հաջողության երաշխիքն է ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման հետևողական կենսագործումը:

---

# ԲԱՐՈՅԱԿԱՆ ՈՒ ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԾՐԱԳՐԻ հիմնական խնդիրը համակողմանի, ներդաշնակ զարգացած անհատի ձևավորումն է։ Այդ նպատակի կենսագործմանն է ծառայում ՍՄԿԿ գործունեությունը։ Կուսակցության ծրագրային խնդրի լուծմանն է նվիրված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը, որտեղ մասնավորապես ասված է. «... ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը, երկրի նյութական և հոգևոր պոտենցիալի հսկայական աճը, խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար ՍՄԿԿ-ի և սովետական պետության պայքարի հաջողությունները լայն հնարավորություններ ստեղծեցին մարդկանց կոմունիստական գիտակցության ձևավորման բնագավառում մեր կուսակցության ծրագրային նպատակների իրականացման համար։ Այդ նպատակներն են՝ բոլոր աշխատավորներին բարձր գաղափարայնության և սոցիալիստական հայրենիքին, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակումը, բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկների լիակատար հաղթահարումը, անհատի համակողմանի ներդաշնակ զարգացումը, հոգևոր կուլտուրայի իսկական հարստության ստեղծումը»։

Հոգևոր հարստությունը և բարոյական անաղարտությունը խարսխվում են անհատի մտավոր զարգացածության և բովանդակ հուզական ներաշխարհի վրա։ Մեծ է հույզերի դերը մարդու ձևավորման ու զարգացման պրոցեսում։ Սոսկ կրթությունը բավական չէ անձի լիարժեք առաջադիմության համար։ Նրա ձևավորման գործուն միջոցներից է նաև գեղագիտական դաստիարակությունը, որն իր էությամբ աշխարհը ճիշտ ընկալելու ունակության մշակումն է։ Գեղագիտական դաստիարակությունն առաջին հերթին հույզերի դաստիարակություն է։ Գեղեցիկի զգացումը ենթադրում է աշխարհի հուզական ընկալում, ներդաշնակություն, համակարգման ունակության պատվաստում։

Գեղագիտական դաստիարակությունը նպաստում է շրջապատի հետ կենդանի ու սերտ կապերի հաստատմանը, օգնում դրա խոր ու ճշմարիտ ճանաչմանը։ Այն վեհացնում է մարդուն՝ մերժելով քաոսը, պատահականությունը։ Լենինը գեղագիտական ունակությունը դասում էր բարձրագույն հոգեկան մղումների շարքը։

Գեղագիտական դաստիարակությունն օրգանապես միահյուսվում է բարոյականին, գեղեցիկը բովանդակում է բարոյական մեծ ուժ։ Նողկանքն այլանդակի նկատմամբ միաժամանակ նշանակում է բարոյական դիմադրություն կյանքում կատարվող ամեն ստոր արարքի։ Իսկական արվեստը մշտապես իր առջև դնում է բարոյական նպատակներ։ Շատ մեծանուն արվեստագետներ էսթետիկան իրավամբ համարել են էթիկայի արտահայտություն։



Բարոյականը և գեղագիտականը թեպետև ընդհանուր շատ եզրեր ունեն, այնուամենայնիվ դրանք տարբեր են։ Անձի բարոյականն զարգացումը բնավ չի նշանակում նրա գեղագիտական առաջադիմում։ Այս հասկացությունները չի կարելի նույնացնել։ Եթե մարդը զրպարտող, խաբեբա և նենգ չէ, ապա այդ դեռ բավական չէ նրան գեղեցիկ անվանելու կամ նրանով հիանալու համար։ Բարոյականը միայն այն ժամանակ է համակում, երբ դրսևորվում են մարդկային հոգու ազնիվ ու վեհ մղումները։ Գեղեցիկը կյանքում բարու ամբողջական դրսևորումն է, միայն իդեալն է գեղագիտականի ու բարոյականի մարմնացումը։ Չարի ու բարու գիտական մեկնությունը, դրանց սոցիալական պայմանավորվածությունը հիմնավորել է մարքս-լենինյան տեսությունը։ Հասարակական օրինաչափությունների բացահայտմամբ միայն հնարավոր է օբյեկտիվորեն վերհանել մարդկանց փոխհարաբերությունների ու արարքների բարոյական սկզբունքները։ Վերջիններիս չափանիշը ժողովրդական զանգվածների, առաջավոր դասակարգերի, սոցիալական առաջընթացի միտումներն են։ Բարի ու չարի հասկացությունները ունեն շեշտված սոցիալ-դասակարգային բովանդակություն։ Չնայած իշխող դասակարգերի հոգևոր կյանքի նորմերը լայնորեն պրոպագանդվել են ու տարածվել, այնուամենայնիվ աշխատավոր դասակարգերը մշակել են իրենց բարոյագեղագիտական սկզբունքները, որոնք պատշաճ մարմնավորում են գտել ինչպես ժողովրդական բանահյուսության, այնպես և արվեստի գործերում։ Սասունցի Դավիթ էպոսը տոգորված է հումանիզմի, բարու, չարի դեմ պայքարի վեհ գաղափարներով։ Ժողովուրդն իր նվիրական իղձերն արտահայտել է հերոսական կերպարների միջոցով։

Գեղագիտականի ու բարոյականի առնչությունները կոնկրետ են՝ միջնորդավորված բազում սոցիալական գործոններով ու պարագաներով, որոնք պայմանավորում են անհատի ինքնատիպ խառնվածքը, հոգեկան դիմագիծը։ Որքան էլ բարձր գնահատենք մարդու հոգևոր արժանիքները, համենայն դեպս նրա ֆիզիկական գեղեցկությունը նույնպես գնահատվում է որպես գեղագիտական արժույթ։ Ճիշտ չէ, եթե ասենք, թե մեր գեղագիտական գնահատումների առարկան սոսկ մարդու բարոյական վարքագիծն է, իսկ արտաքինը ոչ մի նշանակություն չունի։ Փաստ է, սակայն, որ մարդու արտաքինը հարաբերականորեն ինքնուրույն իրողություն է և ընկալվում է առանձին։ Գեղագիտականն ու բարոյականը նույնական չեն իրենց առարկայի ու երևույթների ընդգրկման առումով։ Գեղեցիկի աշխարհն անհամեմատ լայն է բարոյական դրսևորումներից, որոնք ներառնում են միայն մարդկային կյանքը՝ չափանիշ ունենալով հանրային շահը։ Գեղեցիկի սահմանները տարածվում են բնաշխարհի անհամար ու այլազան երևույթներում։ Այդ է հաստատում մարդկության ամենօրյա գեղագիտական փորձը։ Հավերժ գեղեցիկ բնությունը հար եղել է գեղարվեստական պատկերման առարկա։

Բարոյական չափանիշներն անմիջականորեն չեն տարածվում բնության գեղեցկության վրա։ Ելնելով սոցիալ-հոգեբանական կոնկրետ իրավիճակից, մենք գեղեցիկ ենք համարում և՛ աղավնուն, և՛ գիշատիչ գազանին։ Գեղագիտական վերաբերմունքը բնության հանդեպ դրսևորվում է ոչ թե որևէ անձնական կամ հասարակական նեղ շահախնդրությունների առնչությամբ, այլ հանուն բացառապես անշահախնդիր գեղեցկության։ Նման հոգեվիճակ մարդու մոտ ծագում է հասարակական ու անձնական վսեմ մղումների խմորման պրոցեսում, երբ մարդկային «եսը» ներդաշնակվում է հանրության հետ, ընդլայնվում է նրա տեսադաշտը։ Բնության նկատմամբ ցուցաբերած մարդկանց էսթետիկական վերաբերմունքն ունի դարավոր էվոլյուցիա։ Բնության վրա ազդելու մարդու դարավոր վիթխարի աշխատանքը նրան օժտել է ո՛չ միայն բնության բարիքները վայելելու կարողությամբ, այլև բնության ուժերն իր օգտին ծառայեցնելու և վերափոխելու ունակությամբ։ Այստեղ արդեն մարդն սկսում է հանդես գալ իբրև գեղեցիկի կրող և ստեղծող։

Սակայն տարբեր ձևով է դրսևորվել մարդու վերաբերմունքը բնության հանդեպ։ Մի դեպքում նա լոկ սպառել է այն, թալանել, ամայացրել, մի այլ դեպքում պահպանել ու շենացրել։ Այդ են վկայում մարդկության պատմու-

բանավորումներում պահպանվա՞ծ են ստեղծագործության գեղարվեստականության սահմանները: Արվեստը մերժում է պոռնոգրաֆիան, որտեղ մերկությունը, զգայականությունը դրսևորվում են այլանդակ ձևով: Իրական արվեստում (հիշենք դասական ստեղծագործությունները) զգայականությունը, մարմնականը արթնացնում են լուսավոր հույզեր. հաստատվելով գեղագիտորեն մարդկայինի սահմաններում, այն գտնում է իր բարոյական հիմնավորումը:

Գեղագիտականի ու բարոյականի փոխհարաբերությունն արվեստի առարկայի պատմական զարգացման առումով, հնարավորություն է ընձեռում հայտաբերելու գեղարվեստական ճանաչողության և ստեղծագործելու պայմանավորվածությունը ժամանակի կոնկրետ-պատմական բովանդակությամբ ու հոգևոր մթնոլորտով: Պատկերավորման գեղարվեստական նշանակությունն արվեստում առնչվում է անհատի պահանջմունքների, նպատակների ու բարոյական զարգացման առանձնահատկությունների հետ: Սակայն նման կապը և ազդեցությունը չի կարելի հասկանալ միակողմանի, սոսկ որպես բարոյականության կցորդ: Այստեղ գերիշխում է գեղագիտական սկզբունքը, որը բարոյական արժույթները գնահատում է գեղեցիկի չափանիշներով: Իրոք, եթե դասական սրբապատկերները դիտվեն սոսկ կրոնական բարոյականության մեկնակետից, ապա կանտեսվի դրանց գեղագիտական արժույթը:

Գեղարվեստական ստեղծագործության մեջ ռեալն ու իդեալը, ճանաչումն ու գնահատումը միասնական են, ամբողջական: Դիմելով հասարակության ու անհատի բարոյական փորձին, արվեստն ստեղծում է մի նոր իրականություն, մարդկային նոր բնավորություններ ու կերպարներ: Դոն Կիխոտի, Համլետի, Օբլոմովի, Մելեխովի կյանքի, ճակատագրի, անձի մասին պատմել են Սերվանտեսը, Շեքսպիրը, Գոնչարովը, Շոլոխովը և պատմել են այնպես բացառիկ ու անկրկնելի, որ իրենց համընդհանրության մեջ լինելով բազմանշանակ կերպարներ, նրանց բնութագիրը չի կարելի սահմանափակել դարաշրջանի չափանիշներով: Այդ է վկայում դոնկիխոտյան, օբլոմովշչինայի կենսունակությունը:

Գեղարվեստական ստեղծագործության մեջ առնչվում են բարոյականի և գեղագիտականի եզրերը: Բանն այն է, որ չնայած գեղագիտական ընկալման մեջ արժույթն առարկայացած է որպես յուրատեսակ պարտադրականություն, սակայն միաժամանակ դրսևորվում է իբրև իրողություն: Ի տարբերություն իմացության ու բարոյականության, որտեղ կենսական պահանջմունքը և հույզը պայմանավորվում են որոշակի արժույթներով, գեղեցիկի ոլորտում այն հույզեր հարուցող իրականությունն է: Դրա շնորհիվ արվեստի բարոյական դասերը բովանդակում են «ճանաչման խնդությունը» (Արիստոտել): Արտացոլելով իրականությունը հասարակական ու անհատական բազմազանությամբ, արվեստը յուրովի է նպաստում անհատի ու հասարակության բարոյական զարգացմանն ու կատարելագործմանը:

Գեղարվեստական կերպարների բաժանումը դրականի ու բացասականի հարաբերական է, քանզի կյանքում չկան բացարձակ անաղարտ երևույթներ: Անձի և միջավայրի փոխհարաբերություններում չպետք է անտեսել նաև անհատական առանձնահատկությունները, բնախոսական, հոգեբանական երանգները: Այդ վերաբերում է և մարդկանց, որոնք ի ծնե օժտված չեն հերոսի կամ չարագործի հատկություններով: Հանգամանքների բերմամբ նրանք դառնում են կամ մեկը, կամ մյուսը: Վերացական, մտացածին առաքինի կամ արատավոր մարդկանց մարմնավորումը խրատաբանական-դիդակտիկ ստեղծագործություններում չի հուզում ընթերցողին, հանդիսատեսին: Համոզիչ են կենդանի, կոնկրետ կերպարները, որոնք անձնավորված են, տիպականացված: Գեղագիտական ու բարոյական արժույթների լիակատար ձուլումը, երբ էությունն ու երևույթը, ձևն ու բովանդակությունը համընկնում են, արվեստում ազդեցիկ միջոց են բացահայտելու բարու գեղեցկությունը, չարի այլանդակությունը:

Արվեստում բարու և չարի միանշանակ գեղագիտական բնութագրման պատճառները կարող են տարբեր լինել: Մոլիերը շեշտում է իր հերոսներից յուրաքանչյուրի միայն մեկ հատկանիշը (ուղղամտություն, պատվախնդրություն, ժլատություն, երեսպաշտություն և այլն): Այս հանգամանքը չի թու-



լացնում այդ հերոսների գեղագիտական ներգործունությունը: Կլասիցիզմի գեղագիտության ռացիոնալիստական սկզբունքը պայմանավորված է նաև արվեստի բարոյադաստիարակչական միտումը շեշտելու ձգտումով: Երգիծանքում գեղագիտական բնութագրման միտումնավոր միակցությունը բխում է կերպարների սոցիալական որոշակիության առանձնահատկություններից (որպես կանոն գրոտեսկային, չափազանցված):

Գեղարվեստական ստեղծագործության մեջ փաստի բարոյական նշանակության գնահատումը պայմանավորվում է գեղագիտական չափանիշով: Կենսական փաստի կամ իրադարձության բարոյական իմաստն արվեստում չափվում է արժույթների գեղագիտական սանդղակով, որի շնորհիվ սովորականը և աննշանը կարող են դառնալ հասարակական կարևոր փաստ կամ իրադարձություն: Առօրեականը՝ երևույթի, աննկատը՝ նշանակալիի վերածելու կարողությունը, այլ կերպ ասած՝ փաստի բարոյական բովանդակության գործակցի փոփոխումը ոչ թե տարօրինակություն է, այլ իրականության նկատմամբ արվեստի օրինաչափություն: Դրա վկայությունն են դասական գեղարվեստական գրականության ու թատերգության լավագույն նմուշները. աղքատն ուզում է հարստանալ (Ստենդալի, Բալզակի, Օստրովսկու հերոսները), կինը դավաճանում է ամուսնուն (Աննա Կարենինա, Տիկին Բովարի):

Գեղեցիկը ենթադրում է ձևի ու բովանդակության, հոգեկանի ու մարմնականի, ներքինի ու արտաքինի միասնությունը մարդկային արարքում: Դրանից ելնելով Չեխովն ասում էր. «Մարդու մեջ ամեն ինչ պետք է գեղեցիկ լինի— և՛ դեմքը, և՛ հագուստը, և՛ հոգին, և՛ միտքը»: Գեղագիտական նման գնահատումը բացահայտում է նաև երևույթի բարոյական էությունը:

Արվեստում արտացոլվում են կյանքի լույսն ու ստվերը, հակասությունները: Այստեղ ամեն ինչ բեկվում է հասարակական ու անհատական շահախնդրությունների բարոյագեղագիտական մեկնակետից: Կյանքում հաճախ անվայել արարքը, հոգևոր սնանկությունը քողարկվում են, որը նույնպես սոցիալական հարմարվողականության (միմիկրիայի) արտահայտություն է: Իսկական արվեստը պատռում է այդ դիմակը, բացահայտում դրանց հակագեղագիտական էությունը, վերհանում իրական պատկերը: Չեխովի Քեռի Վանյայի հերոսուհիներից Ելենա Անդրեևնան անվիճելիորեն գեղեցիկ է, բայց «...չէ՞ որ նա միայն ուտում է, քնում, իր գեղեցկությամբ մեզ բոլորիս զմայլում և ուրիշ ոչինչ: Նա չունի ոչ մի պարտականություն, նրա համար ուրիշներն են աշխատում... իսկ պարապ կյանքը չի կարող մաքուր լինել»: Հաստատելով հոգեկան հարստության, բարոյական անաղարտության ու կերպարի արտաքին գեղեցկության ներդաշնակությունը, արվեստը միաժամանակ հաշվի է առնում էսթետիկական արժույթների տարրերի տարբեր նշանակությունը: Ըստ ռոմանտիզմի, գեղագիտության կոնտրաստի սրումը արվեստագետին հնարավորություն է ընձեռում հասնելու ներգործման առավելագույն աստիճանի: Փարիզի աստվածամոր տաճարում արտաքուստ գեղեցիկ, բայց բարոյապես սնանկ արիստոկրատների աշխարհին (Ֆեբի և Ֆլերի կերպարներին) Հյուգոն հակադրում է խեղկատակ մարդկայնության ու բարոյական անաղարտության մարմնացում Կվազիմոդոյին, որի այլանդակ արտաքինը զուգակցվում էր բացառիկ ազնվության, մարդկայնության, հարուստ ներաշխարհի հետ: Արատը կարելի է թաքցնել, հագնել գեղեցիկի դիմակ, սակայն դրանից գեղեցիկ ու բարի չեն դառնում և հակառակը՝ անաղարտ հոգին, պայծառ միտքը լուսավորում են նրանց, ովքեր արտաքուստ աննկատ են, չեն հավակնում արժանանալու համընդհանուր ուշադրության: «Քաոսում» Միքայելը, որ մեծ քաղաքներում շվայտ կյանք էր վարել, վերջապես սթափվում է՝ ի վերջո արժանանալով Շուշանիկի նվիրական սիրուն: Այսպիսով, բարոյականի ու գեղագիտականի միասնությունն արվեստում կոնկրետ է, խորիմաստ, նշանակալից:

Վերլուծելով արվեստի ու բարոյականության փոխհարաբերությունը՝ Գ. Վ. Պլեխանովը ցույց է տվել, որ միայն պատմական մատերիալիզմի տեսանկյունից է հնարավոր վերհանել ու գնահատել գեղագիտական գաղափարի պրոգրեսիվությունը կամ ռեակցիոնությունը: Նա հաստատում է արվեստի ակտիվ դերը, շեշտում, որ հեղափոխական պրոլետարիատն է շահագրգռված ժողովր-

դական ու գաղափարական արվեստով, խիստ քննադատում «արվեստը արվեստի համար» դեկադենտական տեսությունը, որը կապիտալիզմի ճգնաժամի դարաշրջանի բուրժուական գաղափարախոսության արտահայտություն էր:

Կապիտալի աշխարհում պրոգրեսիվ արվեստը մերկացնում է իշխող դասակարգի բարոյական կոդեքսը: Այն դա անում է ոչ թե հանուն հայեցողական քննադատության, այլ հանուն բուն մարդկային բարոյականության արմատավորման, զերծ երեսպաշտությունից, նեղդասակարգային պայմանականություններից: Առաջավոր գեղագիտական իդեալի տեսանկյունից արվեստի բարոյական ուժը կյանքի ճշմարտացիության պատկերումն է:

Հասարակությունն անտարբեր չէ, թե արդիականության կամ պատմական անցյալի ո՞ր երևույթներն ու տարրերն են արվեստի ուշադրության կենտրոնում: Ստեղծագործության մեջ պատկերվածի սոցիալական նշանակությունը դրա գեղարվեստականության ու ճշմարտացիության առաջին պայմանն է: Սակայն, երբ հասարակական կյանքի երևույթներն ու փաստերը դառնում են ստեղծագործության նյութ, դրանց հասարակական արժեքը, նշանակությունը և ներազդման ուժն ամբողջովին ենթարկվում են գեղագիտականի սկզբունքներին ու նորմերին, պայմանավորվում են արվեստագետի տաղանդով, նրա կյանքում գեղարվեստականորեն թափանցելու կարողության մակարդակով: Այս հանգամանքի անտեսումն է արվեստի ու բարոյականության խնդիրների նույնացումը, ստեղծագործության բարոյական նշանակությունը դրա գեղագիտական հատկանիշներից անկախ գնահատելը:

Դիդակտիկ ստեղծագործության մեջ բարին ու գեղեցիկն անջատ են: Այդպես առաջանում է արվեստին խորթ գնահատումների զուգահեռականությունը՝ բարոյականության տեսակետից բովանդակություն, արվեստի՝ ձև: Դիդակտիկական ստեղծագործության բարոյական արդյունքը նաև սահմանափակ է: Այն պատկերավորումից հեռու չի գնում: Այստեղ բարոյական կատարելության իդեալը լոկ հայտարարվում է: Դիդակտիկ արվեստը առօրեական կյանքից անտեսում է հեռանկարը, մարդու չիրացված բարոյական հնարավորությունները: Դիդակտիկան մշակում է բարոյականության թվաբանությունը՝ մոռացության տալով մարդկային բարդ հարաբերությունների հանրահաշվական վերլուծությունը: Չվերածվելով արվեստի փաստի, դիդակտիկան առաջացնում է նմանակության էֆեկտ: Կյանքի բովանդակության հարստությունը այստեղ փոխարինվում է վերացական սխեմայով—որն է լավ, որը՝ վատ: Նման դեպքում բացառվում են ասոցիատիվ ընկալումը, երևակայության աշխարհը:

Արվեստում դրսևորված հումանիզմը միշտ էլ կրել է իր ժամանակի դասակարգային հասարակության հոգեբանության կնիքը: Այդ սոսկ իրողության արտացոլում չէ, այլև մարդկայնության իդեալի կրող: Դիմելով հույզերին, արվեստն արձագանքում է մարդկային պահանջմունքներին, ձգտումներին: Հեքիաթը, որից սկսվում է երեխաների դաստիարակությունը, բարոյախոսական հավելված չէ, այլ ինքնուրույն ժանր, որտեղ իրար են ձուլվել ճշմարիտն ու հորինվածը:

Որպես մարդկային վարքագծի նմուշ, գեղարվեստական ստեղծագործությունը մարդուն մղում է որոշակի կենսագործունեության: Դա է արվեստի գաղափարախոսական իմաստը: Մոդեռնիզմի արվեստը նույնպես ձգտում է փոխել մարդու վարքագիծը, սակայն այն միտումով, որպեսզի թուլացնի նրա գործնական կարողությունները, մղի ձևապաշտ արվեստի ոլորտ:

Իսկական արվեստը կենսահաստատումն է, լավատեսությունը: Այն մարդուն սովորեցնում է հասկանալ կյանքի դիալեկտիկան: Սիրել կյանքը, չի նշանակում հաշտվել այն ամենի հետ, ինչ գոյություն ունի: Կյանքը պայքար է, հակասություններով ու բախումներով առլեցուն պրոցես: Ձգտումը իդեալին սոսկ անիրականալի ցանկություն է, երբ այն չի վերածվում գործի, ակտիվ կենսադիրքորոշման:

Արվեստի հորինյալ աշխարհն օժտված է մարդուն ազնվացնելու կարողությամբ: Այն գեղեցիկ է, երբ ծառայում է բարուն, ձաղկում չարը, այլանդակը, անմարդկայինը: Արվեստագետը միջնորդավորված, կերպարի միջոցով է մերկացնում չարը: Դատապարտելով չարը՝ արվեստը մարդուն զինում է չարի ան-



բարոյական էության իմացությամբ, դրա հանդեպ հարուցում որոշակի գեղագիտական վերաբերմունք: Չարը կիսով չափ կորցնում է իր ուժը, եթե հայտնաբերված է, ճանաչված: Վ. Մայակովսկու Պոբեդոնոսիկովի, Պրիսիպկինի, Ն. Զարյանի Բալաբեկի և այլ «թերությունների հերոսների» վարքագծի, տրամաբանության, մտածելակերպի իմացումն առօրյա կյանքում չարի դեմ պայքարի հզոր միջոց է:

Արվեստում բարու պայքարը չարի դեմ նույնքան բազմապիսի ու բարդ է, որքան իրականության մեջ: Բարին, լինելով արդարի, առաջընթացի մարմնացումը, իր ուղին հարթում է պայքարի ու դիմադրության տարբեր պարագաներում: Այստեղ բարին հաղթում է և այն ժամանակ, երբ նրա կրողները ֆիզիկապես զոհվում են, պարտվում: Պարզ է, սակայն, որ ստեղծագործության մեջ բարու կողմն է հեղինակն իր ծիծաղով, սարկազմով, զայրույթով, իրոնիայով... Արատի մերկացումը, դատապարտումը հեշտությամբ կարող է շրջվել հակառակ կողմը, եթե երկիմաստ, անորոշ է հեղինակի բարոյագեղագիտական դիրքավորումը:

Պատկերելով չարը՝ արվեստագետն առաջին հերթին ձգտում է կերտել դրական մարդուն՝ իր բարոյական ինքնագիտակցությամբ: Ընթերցողին, հանդիսատեսին համակելով չարի, այլանդակի նկատմամբ ձաղկման ու բացասման զգացումով, սոցիալիստական ռեալիզմի արվեստն արտացոլում է դարաշրջանի ռեալ իրականությունը, հասարակական գիտակցությունը, նորի արարումը: Արվեստի սոցիալական ֆունկցիայի յուրօրինակությունը մասնավորապես արտահայտվում է նրանում, որ իրականության նկատմամբ մարդու շահախնդիր, կողմնակալ վերաբերմունքը այն հաստատում է որպես բարոյագեղագիտական արժույթ:

Տակավին չեն հաղթահարված արվեստի բարոյադաստիարակչական դերի նշանակության ու իրականացման եղանակի վերաբերյալ պարզունակ դատողությունները, որոնք արտահայտվում են ինչպես բարոյական ուսուցման ու գեղագիտական ապրումի միջև էական տարբերության անտեսման, նույնպես և արվեստում հույզերի ելևէջների թույլ ըմբռնման մեջ: Նման պատկերացումների առավել ակնհայտ դրսևորումներից է գեղարվեստական երկի ներազդեցության դիտումը որպես միանշանակ ապրում: Անշուշտ, առաքինին պետք է հաղթանակի, արատավորը պատժվի, եթե այդ համապատասխանում է կյանքի ճշմարտացիությանը, գեղարվեստական պատկերավորման տրամաբանությանը: Սակայն դրանով չի սպառվում արվեստի բարոյական ներազդեցության նշանակությունը: Նման դեպքում ինչպե՞ս հասկանալ ողբերգության օպտիմիզմը, երբ զոհվում են սիրելի հերոսները, իսկ հանդիսատեսը լուսավոր ու լավատեսական զգացմունքներով տոգորված է հեռանում դահլիճից:

Յուրովի է արտահայտվում արվեստի բարոյադաստիարակչական ֆունկցիան: Ստիպելով ուրիշի կյանքը, ճակատագիրը, զգացմունքները վերապրել այնպես, որ մարդ որոշ ժամանակ մոռանա սեփականը, արվեստն ուղի է հարթում ինքնուրույն մտորումների, եզրակացությունների համար: Նման ներգործությունը գեղագիտական զգացումի ու ապրումի դրսևորումներից է: Արվեստի ներազդումը իրականացվում է բարոյական վարքագծի դրական ու բացասական օրինակներով և ստեղծագործության գեղագիտական ապրում հարուցող ուժով, որն անհատին մղում է խոհածության (ռեֆլեքսիայի): Այդ վիճակի էությունն ու յուրովիությունը բնութագրվում է ինքնակատարելագործում հասկացությամբ: Այստեղ բեկվում է արվեստի ստեղծագործության ընկալման ժամանակ մարդու գեղագիտական ապրումի մեխանիզմը:

Ինքնակատարելագործման արդյունքը թվացող է, հարաբերական: Մարդկային կեցության հակասությունը արվեստի միջոցով օգտակար լուծում է ստանում: Այն լուսավորված տառապանք ու ուրախություն է, որոնց միջոցով մարդը ճանաչում է աշխարհն ու իրեն: Արվեստն ստեղծվում է հույզով և սպառվում է հույզով: Ինքնակատարելագործումը խոհի գեղագիտական յուրովի եղանակն է, որը բնորոշ է իսկական արվեստին: Պայծառացման պահը գեղագիտական զգացումի բարոյական անաղարտության արտահայտություն է,

մարդկային կյանքի հարստության ամբողջական դրսևորում, առանց որի գեղեցիկը գեղեցիկ չէ։

Գեղագիտական ապրումը ինքնանպատակ չէ և ոչ էլ վարքագծի բարոյական նորմի լրացում։ Զկորցնելով իր ինքնությունը՝ այն բյուրեղացնում է բարոյական զգացումը, վեհացնում մարդուն, համակում նրա միտքը, կամքը, զգացումը։ Արվեստի ստեղծագործության ներազդեցությունը երկար է, տևական, թափանցում է մարդու ներաշխարհը, նրա հոգու գաղտնարանները։ Գեղագիտական ապրումը խոր ներգործություն ունի անհատի ներաշխարհի, նրա հոգեկան մղումների արժութային կողմնորոշման, վարքագծի վրա. «... Մեզ, կոմունիստներիս համար,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— յուրաքանչյուր մարդու գաղափարական, բարոյական աճը նաև հսկայական ինքնուրույն արժույթ է ներկայացնում, չէ՞ որ մարդկային անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացումը մեր ամենավեհ նպատակն է» (տե՛ս Լենինյան կուրսով, հ. 3, էջ 470)։

Հիրավի, արվեստն անվանում են զգացումների դաստիարակության, էմոցիոնալ գրագիտության դպրոց, որը մարդկանց ներարկում է հուզական ընկալունակություն, անմիջականություն, փոխըմբռնում։ Սոցիալիստական ապրելակերպի, կոմունիստական դաստիարակության ողջ սիստեմի նպատակն է մարդու մեջ զարգացնել կոլեկտիվիզմի զգացում, Մարքսի արտահայտությամբ, այն մեծագույն հարստությունը, որպիսին ուրիշ մարդուն զգալու պահանջմունքն է։

Արվեստի գործուն կարողությունն առավելապես դրսևորվում է դրական կերպարի միջոցով։ Էականը հերոսին ոչ թե իդեալականացնելն է, այլ տիպականացնելը։ Ժամանակին գիտական կոմունիզմի հիմնադիրները վճռականորեն առարկում էին դրական հերոսի պատկերման ու գնահատման չափազանցումների դեմ, երբ մի դեպքում հերոսը վերածվում էր հեղինակի գաղափարների խոսափողի, մի այլ պարագայում անհարկի ցուցադրվում էին կենցաղային մանրամասները։ Տիպականացումը, որպես ռեալիստական արվեստի ստեղծագործական մեթոդ, հնարավորություն է ընձեռում միավորելու կերպարի կենսական ճշմարտացիությունն իդեալի հետ, հանդիսատեսին կամ ընթերցողին օգնելով տեսնելու փաստը, իրադարձությունը, մարդու զարգացման հեռանկարը։

Միայն հերոսի կերպարի խոր արտացոլման դեպքում է նրա բարոյական վարքագիծը դառնում գեղագիտորեն ներգործուն։ Երբ գեղարվեստական կերպարին պակասում են սոցիալական կոնկրետությունը, անհատականությունը, և հերոսներն արտաքնապես խիստ այժմեական են, ճշմարտանման, ի հայտ է գալիս այն ոչ համոզիչ նորմատիվությունը, որն արվեստում գորշության, տաղտկալիության հոմանիշն է։

Հասուն սոցիալիզմի արդի փուլում կենսական անհրաժեշտություն է անհատին մարդկային, մարդասիրական զգացմունքներով օժտելը։ Դեռևս Կ. Մարքսն է նկատել մարդու զգացումների մարդկայնացման անհրաժեշտությունը։ Այն միտքը, թե գիտության ծաղկման ու տիեզերքի նվաճման դարում պետք են լոկ ինտելեկտուալ զարգացած մարդիկ, անհիմն է։ Նոր հասարակարգ կառուցողի ներաշխարհը խորն է, անընդգրկելի։ Անշուշտ, առանց էմոցիոնալ զարգացման անկարելի է նվաճել և՛ հոգևոր հարստություն, և՛ իսկական կուլտուրա։ Առանց դրանց անհնար է լինել իսկական մարդ։ Հոգևոր հարստությունը և բարոյական կատարելությունը ենթադրում են մարդու մտավոր ու հուզական զարգացման բարձր մակարդակ։ Սոսկ կրթությունը բավական չէ, անհրաժեշտ է հույզերի դաստիարակություն։ Միայն այդ դեպքում է մարդն արժանի իր բարձր կոչման։ Ինչպես տեղին նշվեց կուսակցության XXV համագումարում, «Մեր գրողների, արվեստագետների վաստակն այն է, որ նրանք ձգտում են զորավիգ լինել մարդու լավագույն հատկություններին՝ նրա սկզբունքայնությանը, ազնվությանը, զգացմունքի խորությանը, ընդմիշտ ելնելով մեր կոմունիստական բարոյախոսության անխախտ սկզբունքներից...



Մենք լավ գիտենք, որ գեղարվեստական խոսքը, գույների երփներանգումները, քարի արտահայտչականությունը, հնչյունների ներդաշնակությունը ոգեշնչում են ժամանակակիցներին և հետնորդներին են հաղորդում մեր սերնդի, մեր ժամանակների, նրա տագնապների ու մեծագործությունների հիշատակը, որ պահվում է մեր սրտերում ու հոգում» (տե՛ս ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ, էջ 119, 121)։

Մեր կուսակցության գործունեությունը, նրա ձգտումները նպատակաուղղված են այն բանին, որ հնարավոր ամեն ինչ արվի մարդու բարօրության համար։ Կուսակցության այդ վսեմ մարդասիրական նպատակը նրան հարազատացնում է ժողովրդի հետ, ամուր, անքակտելի կապերով միացնում սովետական բոլոր մարդկանց հետ։ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ հատուկ շեշտված է սովետական յուրաքանչյուր մարդու բարձր գիտակցականությամբ, կոմունիզմ կառուցելու պատրաստակամությամբ, կամք ու հմտություն ձևավորելու վճռականությամբ օժտելու նշանակությունը։

Արվեստի ստեղծագործությունների բարոյական բովանդակությունն ու նշանակությունը չեն հանգում բարոյաէթիկական նորմերի, կերպարային իլյուստրացիայի։ Արտացոլելով իրականությունը, մարդկային (հասարակական ու անհատական) բազմազան աշխարհը արվեստը յուրովի է մասնակցում անհատի բարոյական զարգացմանը, հասարակական բարոյականության կատարելագործմանը։

---

# ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄԸ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ Է

**Ա. Խ. ՆԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

*ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ մեքենայացման ու ավտոմատացման նյութական հիմքը մեքենաշինությունն է, որի գլխավոր խնդիրը ժողովրդական տնտեսության և արդյունաբերության ճյուղերի տեխնիկական առաջընթացի ապահովումն է։ Ուստի և մեքենաշինության տեխնիկական վերազինումը էկոնոմիկայի կայուն վերելքի ուղիներից մեկն է։ Մեծ է այդ ճյուղի դերն ու նշանակությունը հասարակական ամբողջական արդյունքի ստեղծման գործում։ Եթե 1970 թվականին ճյուղի տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերական արտադրանքի մեջ կազմում էր 19,6 տոկոս, ապա 1978 թվականին այն զգալիորեն բարձրացել ու հասել է մինչև 27 տոկոսի։ Հետևաբար, էկոնոմիկայի զարգացման կարևոր պայմաններից մեկը պետք է համարել այդ ֆոնդաստեղծ ճյուղի տեխնիկական առաջընթացը։*

*Իրոք, գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում մեքենաշինության ընդլայնված վերարտադրության հիմնական ուղիներից մեկը արտադրության մեքենայացման և ավտոմատացման մակարդակի բարձրացումն է, որն իրականացվում է արտադրամիջոցների և տեխնոլոգիայի կատարելագործմամբ ու աշխատուժի որակավորման բարձրացմամբ։ Դրա շնորհիվ փոխվում են ո՛չ միայն արտադրության առանձին տարրերը, այլև ողջ ճյուղի որակական և քանակական պարամետրերը։ Ճյուղի մեքենայացման և ավտոմատացման մակարդակի սիստեմատիկ բարձրացումն արտացոլում է տեխնոլոգիայի և սարքավորումների տեխնիկական կազմի, արտադրության մասնագիտացման, կադրերի որակավորման ու կոլեկտիվի սոցիալական զարգացման տվյալ աստիճանը։ Վերջինիս տնտեսական էֆեկտը ձեռնարկության տեխնիկական կատարելագործման, տնտեսական շրջապտույտում ներառնված արտադրառեսուրսների աճի ու դրանց արդյունավետ օգտագործման, ինչպես նաև գիտատեխնիկական առաջընթացում ձեռք բերված հաջողություններն են։ Այդ ամենի իրականացումը կապվում է այն կարևոր խնդիրների լուծման հետ, որոնք բխում են մեքենաշինության զարգացման անհրաժեշտությունից, դասվում են տնտեսական զարգացման հրատապ հարցերի շարքին։ Մեքենաշինության մեջ, ինչպես և մյուս ճյուղերում, թողարկվող արտադրանքի անվանացանկի նորացումը, որակի բարելավումը, մոդեռնացումն ու տեխնիկական պարամետրերի կատարելագործումը հնարավոր չէ իրականացնել արտադրության մեքենայացման և ավտոմատացման ցածր մակարդակի պայմաններում։ Հետևաբար, այդ մակարդակի բարձրացումը տնտեսական անհրաժեշտություն է դառնում։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության արդյունաբերության այդ ճյուղի շատ ձեռնարկություններում տեխնիկական առաջընթացի և առաջավոր փորձի ներդրման տեմպերը ցածր են։ Դրա հետ մեկտեղ, շարունակվում են առանձին արտադրապրոցեսների մեքենայացման ու ավ-*



*տոմատացման աստիճանների միջև առկա անհամամասնությունները։ Ձեռնարկության պլանային ցուցանիշների համակարգում գրեթե բացակայում են արտադրության տեխնիկական մակարդակի առանձին տարրերի հաշվարկներն ու դրանց բարձրացման պլանային առաջադրանքները։ Այդ բոլորի հետևանքով առանձին ձեռնարկությունների տեխնիկական մակարդակը չի համապատասխանում ճյուղի զարգացման և գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արդյունավետ օգտագործման պահանջներին։ Այսպես, արտադրական-տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աստիճանը ճյուղի մի խումբ ձեռնարկություններում հասնում է մինչև 63, իսկ մյուսներում՝ հազիվ 33 տոկոսի։ Հարցն այն է, որ շատ դեպքերում այդ ցուցանիշի բարձրացումը կատարվում է սարքավորումների քանակի ավելացման միջոցով, առանց հաշվի առնելու դրանց պրոգրեսիվության աստիճանը։*

*Արտադրանքի թողարկման տևողության և սերիականության առնչությամբ արտադրության մեքենայացման ու ավտոմատացման դինամիկան, որպես կանոն, ունի երեք հիմնական փուլ։ Առաջին փուլում արտադրապրոցեսների մեքենայացումը կարող է հասնել մինչև 80 տոկոսի, երկրորդում մեքենայացման աստիճանն ավելի է բարձրանում, որի շնորհիվ հնարավորություն է ընձեռվում ավտոմատացնել արտադրությունը։ Երրորդ փուլում տեխնոլոգիական և տրանսպորտային պրոցեսների կառավարումն ու ծրագրավորումը իրականացվում են կիբեռնետիկ սարքերի կիրառմամբ։ Մեր հանրապետության մեքենաշինությանը բնորոշ են միայն առաջին երկու փուլերը։ Երրորդ փուլի սահմանափակվածության պատճառը արտադրության համակողմանի ավտոմատացված սիստեմների ներդրման չափից ավելի նեղ մասշտաբներն են, ավտոմատացման ցածր աստիճանը։*

*Մեքենաշինության զարգացման համար նախատեսված բարձր տեմպերի ապահովումը թելադրում է լուծել մի շարք մեթոդական և մեթոդոլոգիական հարցեր, որոնք կապված են արտադրության մեքենայացման և ավտոմատացման մակարդակի գնահատման չափանիշի հետ։ Այդ հարցերի ճիշտ լուծման համար սկզբունքային նշանակություն ունի մեքենայացման ու ավտոմատացման կառուցվածքի բազմակողմանի վերլուծությունը։ Սա իր հերթին կնպաստի վերհանել ձեռնարկության արտադրաունակության աստիճանը, հետևապես և՝ արտադրական ծրագրի կատարման հնարավորությունները։ Վերլուծության արդյունքների ընդհանրացման շնորհիվ ակնհայտ կդառնան արտադրության տեխնոլոգիական պրոցեսների և աշխատանքի մեքենայացման աստիճանի բարձրացման, ձեռնարկության սոցիալական զարգացման, արտադրանքի ծավալի ավելացման, որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման ուղիները։*

*Փաստերի վերլուծությունը ցույց է տալիս, որ առանձին արտադրամիավորումներում ու ձեռնարկություններում հիմնական և օժանդակ արտադրությունները մեքենայացնելու նպատակով անհրաժեշտ քանակությամբ արդիական հաստոցներ ու մեխանիզմներ չեն ներդրված։ Այդ իսկ պատճառով դեռևս ցածր է արտադրության մեքենայացման և ավտոմատացման աստիճանը։ «Հայէլեկտրամեքենա» միավորումում այն հասնում է 30 տոկոսի, «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրապարատ» և «Հայքիմմեքենա» միավորումներում՝ 34—36, իսկ Երևանի ավտոգործարանում և «Էլեկտրասարք» միավորումում՝ 25 տոկոսի։ Բերված տվյալները վկայում են, որ արտադրության զուտ մեքենայացված աշխատանքում ընդգրկված բանվորների ամբողջ աշխատանքի և արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աստիճանը չի համապատասխանում ժամանակակից արտադրության զարգացման պահանջներին։ Նման իրավիճակը ստեղծվել է հիմնական արտադրապրոցեսների և հատկապես օժանդակ արտադրությունների մեքենայացման անհամեմատ ցածր մակարդակի, ինչպես նաև տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աստիճանների միջև ստեղծված անհամամասնությունների հետևանքով։*

*Ամենաբարձր մեքենայացման աստիճանն ունի մեխանիկական մշակումը, իսկ ամենացածրը՝ հավաքման պրոցեսները։ Այս տարբերությունն ընդհանուր է*

գրեթե բոլոր ձեռնարկությունների համար, այն դեպքում, երբ հավաքման և փաթեթման պրոցեսներում ընդգրկված բանվորների թիվը հասնում է մինչև 50 տոկոսի։

Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացումը զգալի չափով պայմանավորված է նաև նոր տեխնոլոգիայով։ Արտադրության տեխնոլոգիան գնահատելիս ձեռնարկությունների մի մասը որպես հիմք ընդունում է սարքավորումների առաջնակարգության աստիճանը, իսկ մյուս մասը՝ առաջավոր մեթոդով թողարկված արտադրանքի ծավալը։ Տեխնոլոգիայի գնահատման միասնական մեթոդի բացակայությունը լուրջ դժվարություն է առաջացնում դրա մակարդակի բարձրացումը պլանավորելու և համապատասխան միջոցառումներ մշակելու հարցում։ Դա հանգեցնում է այնպիսի վիճակի, երբ մեքենայացման ու ավտոմատացման աստիճանի տարբերությունը ինչպես տվյալ ձեռնարկության ներսում, այնպես էլ առանձին ձեռնարկությունների միջև հասնում է նշանակալից չափերի։

Այսպես, հավաքման արտադրության մեքենայացման միջին մակարդակը Երևանի «Էլեկտրասարք» միավորումում կազմում է ընդամենը 28 տոկոս, այն դեպքում, երբ Միության համասեռ գործարաններում այն հասնում է մինչև 40 տոկոսի։ Հավաքման արտադրությունն ավելի աշխատատար ու սակավ մեքենայացված է, որովհետև այնտեղ արտադրական փոքր սերիականության, բազմանվանացանկ արտադրանքի թողարկման, փոքր խմբերով դետալների հավաքման պրակտիկան անտեսապես աննպատակահարմար է դարձնում ու արգելակում է արտադրության մեքենայացման ընդլայնումը։ Հավաքման արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանն անհամեմատ ցածր է Երևանի ֆրեզերային հաստոցների, ժամացույցի, ավտոմոբիլային և այլ գործարաններում։ Ընդ որում, մեքենայացված աշխատանքում ընդգրկված բանվորների և աշխատանքի մեքենայացման աստիճանները 10 տոկոսից չեն անցնում։ Թեև այդ ձեռնարկությունների կողքին կան այնպիսիները (Երևանի էլեկտրատեխնիկական, Հայէլեկտրագործարան, էլեկտրասարքերի և կոմպրեսորների գործարաններ), որտեղ տեխնիկական միջոցառումների իրականացման շնորհիվ նշված ցուցանիշներն աստիճանաբար բարձրացել և մոտեցել են ճյուղային միջին մակարդակին, այնուհանդերձ այդ մակարդակը դեռևս անբավարար է։ Հայրենական և արտասահմանյան համասեռ զարգացած ձեռնարկությունների տվյալ արտադրապրոցեսներում ներդրվել են ավելի արտադրողական սարքավորումներ, որոնք զգալիորեն բարձրացրել են արտադրության մեքենայացման աստիճանը, կրճատել արտադրանքի աշխատատարությունը։ Այդ խնդրի հաջող լուծման լավագույն ուղին ձեռքի մեքենայացված գործիքների կիրառումն է, հավաքման կոնվեյերային սիստեմների մասսայական ներդրումը, մասնագիտացված ավտոմատների, կիսաավտոմատների և մանիպուլյատորների կիրառումը։

Մեքենաշինության մեջ տիրապետող պրոցեսներից է մեխանիկական մշակումը, որի տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության տվյալ ճյուղի ամբողջ աշխատատարության մեջ կազմում է 15 տոկոս։ Այստեղ մեքենայացված աշխատանքի աստիճանը հասնում է 45 տոկոսի և վերջին հինգ տարիներին դանդաղ է աճում։ Դա բացատրվում է նրանով, որ ճյուղի հիմնական արտադրապրոցեսներում ձեռքի աշխատանքը գրեթե չի մեքենայացվում։ Բացի դրանից, բանվորների թիվն ավելի բարձր տեմպերով է աճում, քան աշխատանքի մեքենայացման աստիճանը։ Նույնիսկ մեխանիկական մշակման առանձին պրոցեսների մեքենայացման աստիճանների միջև գոյություն ունեցող անհամամասնությունները հասնում են որոշակի մեծության։ Նման տարբերություններն ավելի ակնհայտ են ո՛չ միայն առանձին ձեռնարկություններում, այլև դրանց միջև։ Այսպես, մեխանիկական մշակման մեքենայացման և ավտոմատացման մակարդակը Երևանի «Էլեկտրասարք» միավորումում կազմում է 67, իսկ Օմսկի և Ժիտոմիրի համասեռ գործարաններում՝ 74 և 85 տոկոս։ Երևանի ֆրեզերային հաստոցների, ժամացույցի, «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրապարատ» և այլ միավորումներում ու գործարաններում այդ



ցուցանիշը զգալիորեն ետ է մնում ո՛չ միայն Միության առաջավոր ձեռնարկությունների, այլև ճյուղային միջին մակարդակից։

Նկատի ունենալով, որ ձեռնարկությունների մեխանիկական մշակման տեխնիկական զինվածությունը մյուս պրոցեսների համեմատությամբ շատ ավելի բարձր է, անհրաժեշտ է առավել ուշադրություն հատկացնել մյուս արտադրապրոցեսների տեխնիկական մակարդակի բարձրացմանը։ Հակառակ պարագայում մեխանիկական մշակման ավտոմատացումը կդառնա տնտեսապես աննպատակահարմար, անշահավետ և դա է՛լ ավելի կխորացնի արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանների միջև եղած անհամամասնությունները։ Սրանից բնավ էլ չի կարող հետևել այն կարծիքը, թե իբր այդ ընթացքում կդանդաղի մեխանիկական մշակման կատարելագործումը։ Ընդհակառակը, արտադրական շատ պրոցեսներում հարկ է բարոյապես հնացած և ցածր արտադրողական տեխնիկան փոխարինել նորերով, ներդնել թվային կառավարմամբ հաստոցներ, մասնագիտացված ավտոմատ սարքեր, որը կնպաստի օժանդակ բանվորների թվի կրճատմանը, հնարավորություն կընձեռի միջոցներ խնայելու և դրանք օգտագործելու մյուս արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանը բարձրացնելու նպատակով։

Այս կարևոր խնդրի հաջող լուծման կոնկրետ ուղիներ է նշում պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին կուսակցության Կենտկոմի և կառավարության որոշումը։ Անհրաժեշտ է, որպեսզի արտադրամիավորումները (ձեռնարկությունները) մեքենայացման և ավտոմատացման, սարքավորումների փոփոխման և մոդեռնացման միջոցառումները մշակեն և հաստատեն ինքնուրույն։ Մեխանիկական արտադրության մեքենայացման և ավտոմատացման աստիճանի հետագա բարձրացումը պետք է պայմանավորված լինի այնպիսի նոր տեխնոլոգիական պրոցեսների և սարքավորումների ներդրմամբ, ինչպիսիք են ասեղնային ֆրեզերումը, մետաղների քիմիական մշակման և ուժային ու արագացուցիչ հղկման մեթոդների կիրառումը։

Մեքենաշինության մեջ կարևոր պրոցես է մամլման արտադրությունը, որի մեքենայացման ու ավտոմատացման աստիճանը միջին հաշվով կազմում է 50 տոկոս։ Այս ցուցանիշը բարձր է այնտեղ, որտեղ լայնորեն կիրառվում են մամլիչներ կամ մեխանիկական մամլիչների վրա դրված ունիվերսալ սարքավորանքներ։

Ճյուղում մեծ չափերի է հասնում պլաստմասսայե դետալների արտադրությունը, որի տեսակարար կշիռը ամբողջ աշխատատարության մեջ կազմում է 6 տոկոս։ Այստեղ մեքենայացման աստիճանն ավելի բարձր է, քան մամլման արտադրությունում։ Սակայն պլաստմասսայից ստացվող դետալների պահանջարկի անընդհատ աճի պայմաններում ցածր է օժանդակ պրոցեսների մեքենայացման աստիճանը, որի հետևանքով այստեղ զբաղված բանվորների թիվը, հիմնական արտադրության մեջ աշխատողների համեմատությամբ, ավելի արագ է աճում։ Այս արտադրատեսակի աճող պահանջարկի բավարարումը, որը կապված է նոր տեսակի պլաստմասսաների օգտագործման հետ, պահանջում է արագացնել նոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրումը, հիդրավլիկ մամլիչների փոխարինումը ջերմոպլաստ ավտոմատներով, ձուլման և հատկապես լրիվ կատարողական մեքենաներով։

Մեքենաշինության առանձին ենթաճյուղերում, օրինակ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ, մեծ տեղ են գրավում փաթեթման պրոցեսները, որտեղ մեքենայացման աստիճանը կազմում է 30 տոկոս։ Այդ արտադրապրոցեսների մեքենայացման ուղին փաթեթման ունիվերսալ հաստոցների ու սարքավորումների լայն կիրառումն է։

Հանրապետության մեքենաշինության զարգացման համար կարևոր նշանակություն ունի ձուլման արտադրությունը, որի մեքենայացումն ու ավտոմատացումը, մեխանիկական մշակման համեմատությամբ, ցածր է (50 տոկոս), աշխատանքի մեքենայացման մակարդակը կազմում է 33 տոկոս։ Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիմնական ուղին ձուլ-

ման նոր մեթոդների ու եղանակների կիրառումն է, արտադրության ըստ ամենայնի համակենտրոնացումը:

Այսպիսով, նշված արտադրապրոցեսների ավտոմատացման և մեքենայացման, ինչպես նաև արտադրության տեխնոլոգիական մակարդակի բարձրացման համար պահանջվում է հաշվի առնել դրանց միջև առկա կապը և փոխազդեցությունը: Ամենից առաջ կարևոր է նկատի ունենալ, որ արդի փուլում ավելի է բարձրանում տեխնոլոգիայի դերը՝ առաջադրված խնդրի հաջող լուծման մեջ: Ընդ որում, սկզբունքային նշանակություն ունի առաջավոր փորձի փոխանակման մեթոդների կատարելագործումը: Փաստերը վկայում են, որ առանձին ձեռնարկություններում համասեռ մեքենաների դետալների պատրաստման վրա ծախսված ժամանակի տարբերությունը հասնում է մինչև 50 տոկոսի, որի հետևանքով օժանդակ նախապատրաստական ծախսերը ապրանքային արտադրանքի ծավալի ավելացման համեմատությամբ աճում են երկրաչափական պրոգրեսիայով: Նման անհամամասնությունները վերացնելու համար անհրաժեշտ է բարձրացնել արտադրության տեխնոլոգիական պրոցեսների մակարդակը, որոշել, թե ներդրված տեխնոլոգիան որքանով կնպաստի նյութական և աշխատանքային ծախսումների հետագա տնտեսմանը: Այսպես, ընթացիկ տարում «Հայէլեկտրամեքենա» միավորումում տեխնոլոգիայի, մեքենայացման ու ավտոմատացման կատարելագործման հետ կապված պլանային միջոցառումների բաժինը, ամբողջ միջոցառումների իրականացման ծախսերի ծավալում, կազմում է 29 տոկոս և դա զգալիորեն նպաստել է ձեռքի աշխատանքի մեքենայացմանը: Առաջադրված խնդրի հաջող լուծումը պահանջում է մշտապես բարձրացնել արտադրամիավորումներին կից գիտահետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորա-տեխնոլոգիական բաժինների այն միջոցառումների մշակման ու ներդրման դերը, որոնք կոչված են նպաստելու ոչ միայն հիմնական, այլև օժանդակ արտադրապրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը: Այժմ ճյուղի օժանդակ բանվորների 40 տոկոսը աշխատանքը կատարում է ձեռքով և միայն 6 տոկոսն է օգտագործում համապատասխան մեքենաներ ու սարքավորումներ: Նոր ձեռնարկությունների նախագծման և գործողների ընդլայնման ու վերակառուցման ժամանակ անհրաժեշտ է նախատեսել օժանդակ արտադրությունների կոմպլեքս մեքենայացում և ավտոմատացում: Այդ խնդրի լուծումը ձեռք է բերում սոցիալական կարևոր նշանակություն, նպաստում է վերացնելու այն հակադրությունը, որն առկա է արտադրության առանձին տեղամասերի տեխնիկական մակարդակի և դրանց աշխատողների որակավորման միջև: Հանրապետության մեքենաշինության արտադրապրոցեսների ավտոմատացման համար, որպես կարևոր շարժիչ ուժ, պետք է համարել նաև եռաֆազ մեքենաների սիստեմից (շարժիչ, հաղորդման միջոցներ, կատարողական մեխանիզմներ) դեպի չորս ֆազային մեքենաների սիստեմին անցնելը: Ընդ որում, որպես չորրորդ օղակ հանդես կգան արտադրապրոցեսները կարգավորող ու կառավարող սարքերն ու միջոցները: Այդպիսի անցման անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ ճյուղի արտադրության ավտոմատացումը հանրապետությունում գտնվում է սկզբնական փուլում: Ուստի դրա հետագա անցումը դեպի կոմպլեքսային և այնուհետև լրիվ ավտոմատացման սիստեմի, կապված նոր մոդելի հաստոցների ու սարքերի օգտագործման հետ, մեքենաշինության զարգացման գրավականն է:

Մեքենաշինական առանձին ձեռնարկությունների արտադրության մեքենայացման ու ավտոմատացման ցածր մակարդակը հետևանք է այն բանի, որ դրանց արտադրության տեխնոլոգիական կառուցվածքը, կապված թողարկվող մեքենաների ու սարքավորումների անհամասեռության ու հոսքային ավտոմատ գծերի անհամեմատ պակասության հետ, դեռևս իր կատարելագործման բարձր աստիճանին չի հասել: Բացի դրանից, առանձին ձեռնարկություններում նույնիսկ բացակայում են կամ էլ լրիվ չեն իրականացվում արտադրության տեխնոլոգիայի ու մեքենայացման պլանային ու փաստացի հաշվարկները: Հետևանքը լինում է այն, որ այդ նպատակով անհրաժեշտ միջոցների նկատմամբ պահանջները ներկայացվում են տնտեսապես թերհիմնավորված, իսկ մի շարք



դեպքերում էլ հատկացված միջոցներն օգտագործվում են ոչ նպատակային: Արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աստիճանների միջև եղած տարբերությունները հասնում են զգալի չափերի, որոնք ձեռնարկության առանձին ստորաբաժանումների տեխնիկական զինվածության անհամամասնության պատճառ են դառնում: Նշենք, որ արտադրապրոցեսների միջև օպտիմալ համամասնությունների որոշման մեթոդական չափանիշների բացակայության հետևանքով հնարավոր չի լինում բալանսավորել դրանց մեքենայացումը: Առաջադրված խնդիրների հաջող լուծման գրավականը պետք է համարել նաև արտադրամիավորումներին կից գործող գիտահետազոտական ինստիտուտների, մասնագիտացված կոնստրուկտորա-տեխնոլոգիական բաժանմունքների ակտիվ մասնակցությունը: Ճիշտ է, դրանք միութենական և հանրապետական ձեռնարկությունների համար մշակում ու ներդնում են նոր մոդելի մեքենաներ և տեխնոլոգիական պրոցեսներ, այնուհանդերձ պատշաճ հիմքերի վրա չի դրված այն միջոցառումների մշակումը, որոնց ներդրումը կբարձրացնի հանրապետության տվյալ ճյուղի ձեռնարկությունների արտադրության մեքենայացման մակարդակը:

Արդի պայմաններում ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել պլանավորման բարելավման և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ազդեցությունն ուժեղացնելու վերաբերյալ: Այդ առնչությամբ պետք է է՛լ ավելի բարձրացնել արտադրամիավորումների դերը, այն հաշվով, որ պետական որոշումներն իրականացվեն վերոհիշյալ գիտահետազոտական օջախների աշխատանքային և ձեռնարկությունների տեխնիկական զարգացման պլանների զուգակցման և կոմպլեքսայնության հիմա վրա: Նշենք, որ ներքին ռեզերվների հաշվին հնարավոր է նշանակալի չափով նպաստել դրված խնդրի հաջող լուծմանը: Այսպես, մեքենաշինական ձեռնարկությունների օժանդակ արտադրամասերում տեղադրված է հաստոցների ու սարքավորումների շուրջ 30 տոկոսը, որը բարձր է երկրի առաջավոր ձեռնարկությունների համանման նորմատիվից և բացասաբար է ազդում հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման վրա:

Պարզ է, թե ինչպիսի էական փոփոխության կենթարկվի հիմնական արտադրապրոցեսների մեքենայացման մակարդակը, եթե այդ հաստոցների մի մասը տեղափոխվի հիմնական արտադրություն: Մեծ ռեզերվներ կան նաև հատուկ և մասնագիտացված հաստոցների օգտագործման բնագավառում: Այժմ դրանց տեսակարար կշիռը զգալի է, բայց բեռնվածության և հերթափոխայնության գործակիցը անհամեմատ ցածր է: Արտադրամիավորումների, ինստիտուտների և համապատասխան ստորաբաժանումների դերը պետք է կայանա նաև նշված ռեզերվների օգտագործման համար տեխնիկատնտեսական միջոցառումների մշակման և ներդրման մեջ: Դրան հասնելու հիմնական ուղիներից մեկը թողարկվող արտադրանքի համասեռության և մասնագիտացման աստիճանի բարձրացումն է:

Այսպիսով, արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը հանգեցնում է ոչ միայն տեխնիկական, այլև սոցիալական առաջընթացի, այն լուրջ փոփոխություններ է առաջացնում աշխատանքի բովանդակության մեջ և նոր պահանջներ է հարուցում արտադրանքի որակի, բանվորների որակավորման բարձրացման նկատմամբ, ամենից առաջ նպաստելով նյութական արտադրապրոցեսում մտավոր աշխատանքի տեսակարար կշռի ավելացմանը:

---

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

**Վ. Ս. ԱՐԱՔՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության
պլան-տնտեսական վարչության գլխավոր մասնագետ

*ԳՅՈՒՂԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԸ մեծ գոհունակությամբ ընդունեցին «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը, ինչպես նաև դրանից անմիջապես հետո հրապարակված ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը՝ «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին»։*

*Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, կառավարման ու պլանավորման բարելավումը, հանրային արտադրության և աշխատանքի որակի բարձրացումը նոր ծանրակշիռ նախադրյալներ են ստեղծում 1979 թվականի և ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքներն անթերի կատարելու համար։*

*Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները լայն մրցություն են ծավալում՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների իրականացման համար։ Նրանք որոշակի հաջողություններով ավարտեցին հնգամյակի երրորդ տարին։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը կազմեց 779,9 միլիոն ռուբլի։ Շատ տարիների ընթացքում առաջին անգամ կատարվեց խաղողի արտադրության պլանը։ Պետությանը վաճառվեց 317,6 հազար տոննա բանջարեղեն՝ նախատեսված 290 հազարի դիմաց։ Գերակատարվեց հացահատիկի, շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի վաճառքի պլանը։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնապահության բնագավառում։*

*Ուսումնասիրությունները միաժամանակ վկայում են, որ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կան արտադրանքի քանակի և որակի ավելացման շատ ռեզերվներ, որոնց հայտնաբերումը և գործողության մեջ դնելը սոցիալիստական մրցության կարևորագույն խնդիրն է։ Իսկ մրցության հաջողությունը մեծ չափով պայմանավորված է նրա մասնակիցների նյութական և բարոյական խրախուսման ճիշտ կազմակերպմամբ։*

*Տնտեսավարման սոցիալիստական մեթոդի կարևոր գծերից մեկը աշխատողների անձնական, նյութական շահագրգռության, տնտեսական խթանների օգտագործումն է, որի մասին մշտապես հիշեցրել է Լենինը՝ «...Պետությունը ո՛չ միայն համոզում է, այլև լավ աշխատակիցներին վարձատրում է կյանքի լավագույն պայմաններով...» (***Երկեր***, հ. 31, էջ 644)։ Սոցիալիզմը և կոմունիզմը, սովորեցնում էր Լենինը, հարկավոր է կառուցել «ո՛չ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռության, տնտեսական հաշվարկի վրա...» (***Երկեր***, հ. 33, էջ 46)։*

*Գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրանքի քանակական և որակական ցուցանիշների բարելավումը պահանջում է նյութական խրախուսման առավել կատարելագործված ձևեր։ Կոլտնտեսություններին և սովխոզներին տրված է վարձատրության և նյութական խրախուսման սիստեմների ընտրության ինքնուրույնություն ու նախաձեռնություն։ Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը պահանջում է զգալիորեն ուժեղացնել տնտեսական լծակների և խթանների ներգործությունը, նյութական խրախուսումը ուղղակիորեն պայմանավորել աշխատանքի արդյունավետությամբ և որակով, պլանային առաջադրանքների կատարմամբ, արտադրական գործունեության վերջնական արդյունքներով։*

*Փաստ է, սակայն, որ գյուղատնտեսական շատ ձեռնարկություններում գործող նյութական խրախուսման կարգը դեռևս լիովին չի խթանում արտադրանքի ավելացմանն ու դրա որակի բարելավմանը։ Առանձին դեպքերում այն չափազանց բարդ է և գործում է ոչ նպատակային։ Շատ կոլտնտեսություններում և սովխոզներում կիրառվում են մի քանի, հաճախ իրար հետ չշաղկապվող պարգևատրման սիստեմներ, որոնցից յուրաքանչյուրի համար նախատեսվում են նյութական խրախուսման տարբեր միջոցներ։ Նման պրակտիկան կազմալուծում է պարգևատրման սիստեմը և փոշիացնում այդ նպատակի համար հատկացվող գումարը։ Այդ վիճակում կոլտնտեսականները և սովխոզների բանվորները պարզ ու կոնկրետ պատկերացում չեն ունենում պարգևատրման գլխավոր նշանակության վերաբերյալ։ Պատահական չէ, որ երբեմն, ստանալով պարգևատրման գումարը, նրանք չգիտեն ցուցանիշներից որի՞ դիմաց է այն վճարվում. պլանների կատարմա՞ն, տնտեսումների՞, գուցե աշխատանքի որակի՞ կամ սոցիալիստական մրցության մեջ հաղթող լինելո՞ւ համար։*

*Նյութական խրախուսման նման վիճակը որոշ դեպքերում առանձին աշխատողների և կոլեկտիվների չի շահագրգռում ծավալելու գործարար մրցություն՝ արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Կատարված վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության պետական տնտեսությունների զգալի մասում պարգևատրման ամենաքիչ գումարները հատկացվում են սոցիալիստական մրցության նպատակին։ Այսպես, օրինակ, 1978 թ. «Թռչնարդի» տնտեսություններում նյութական խրախուսման ֆոնդի միայն 2,6 տոկոսն է օգտագործվել մրցության առաջավորներին խրախուսելու նպատակով, Սովետաշենի խոզաբուծական № 2 ֆաբրիկայում՝ 2,4 տոկոսը, Արարատի շրջանում, չնայած առկա մեծ հնարավորություններին, այդ նպատակին չնչին գումար են տրամադրել։*

*Այս առումով վիճակն ավելի վատ է կոլտնտեսություններում և դրա հիմնական պատճառն այն է, որ նրանք քիչ գումարներ են տրամադրում խրախուսման ֆոնդին, որտեղից կատարվում են մրցության նպատակին հատկացվող ծախսումները։ Դա վերաբերում է հատկապես Շամշադինի, Էջմիածնի, Շահումյանի շրջանների կոլեկտիվ տնտեսություններին, որտեղ սոցիալիստական մրցության նպատակին անհրաժեշտ միջոցներ չեն հատկացնում։ Կան նաև ուրիշ լուրջ թերություններ, որոնք նույնպես հնարավորություն չեն ընձեռում ինչպես հարկն է օգտագործել սոցիալիստական մրցության ուժը։*

*Պրակտիկան ցույց է տալիս, որ մրցությունում նյութական խրախուսման դերը մեծացնելու նպատակով անհրաժեշտ է նրա մասնակիցների համար ապահովել հավասար պայմաններ և ճիշտ գնահատել աշխատանքի արդյունքները։ Սակայն հանրապետության գյուղատնտեսական ձեռնարկություններում երբեմն խախտվում է այդ սկզբունքը։ Դա հետևանք է այն բանի, որ կոլտնտեսություններում և պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում պլանավորման համար հիմք է ծառայում նախորդ երեք տարվա ձեռք բերված միջին մակարդակը։ Այդպիսով, ի՞նչ է ստացվում։ Առաջավոր տնտեսությունները, որոնք իրենց լավ աշխատանքի շնորհիվ կարողացել են համաչափ զարգացնել արտադրությունը, հասել են արտադրական բարձր ցուցանիշների, դարձյալ լարված, բարձր պլաններ են ստանում։ Համանման պայմաններ ունեցող ուրիշ տնտեսությունների համար, որոնք վատ աշխատանքի պատճառով ունեն ցածր կամ խիստ ցածր ցուցանիշներ, արտադրության պլանավորումը նույնպես կատարվում է «ձեռք բերված» մակարդակից ելնելով։ Դա, ըստ էու-*

թյան, օրինականացնում է նրանց վատ աշխատանքը, նրանց տալով չհիմնավորված ցածր պլանային առաջադրանքներ։

Նման պայմաններում սոցիալիստական մրցության ամբողջ ուժը հնարավոր չէ օգտագործել, քանի որ այդ տնտեսությունները, ունենալով ցածր պլաններ, մրցության կարգով նույնպես ստանձնում են ցածր առաջադրանքներ և հեշտությամբ այն «գերակատարում» են։

Փաստորեն այն կոլտնտեսությունները և սովխոզները, որոնք իրենց վատ աշխատանքով մեծ քանակի գյուղատնտեսական մթերքներ պակաս են արտադրել, դարձյալ կարող են ցածր մակարդակի վրա մնալ։ Հարց է ծագում, որտե՞ղ ավելի շատ ռեզերվներ կան արտադրանքի քանակը և որակը բարձրացնելու։ Իհարկե՝ այն տնտեսություններում, որոնք իրենց վատ աշխատանքով համանման պայմաններում գտնվող առաջավոր տնտեսություններից պակաս արտադրանք են տալիս։ Ուրեմն, պետք է առավել ուշադրություն նվիրել նրանց, ում մոտ ռեզերվները շատ են և օգնել, որպեսզի ճիշտ պլանավորման ու սոցիալիստական պարտավորությունների մշակման միջոցով նրանք բարձրացնեն արտադրության մակարդակը։ Խաղողի մեկ հեկտարի բերքատվությունը Արարատյան դաշտի սովխոզներում պլանավորվում է տարբեր չափերով, չնայած պայմանները հիմնականում նույնն են։ Ընթացիկ տարում այն Մասիսի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, շրջաններում պլանավորվել է 80—86 ցենտներ, էջմիածնում՝ 54,6, Արարատում՝ 92,7։

Բացի այդ արդեն երկար տարիներ է, ինչ Արարատի և էջմիածնի շրջանների կոլտնտեսությունները խաղողի ավելի բարձր բերք են ստանում, քան նույն պայմաններում գտնվող հարևան սովխոզները։ Եվ ահա այստեղ նույնպես, ղեկավարվելով «ձեռք բերված մակարդակի» չափանիշով, սովխոզների առաջադրանքը մոտ 30 տոկոսով ցածր է սահմանվում։ Փաստ է, որ նման պայմաններում կոծկվում են արտադրությունը զարգացնելու առկա հնարավորությունները և հավասար պայմաններ չեն ստեղծվում սոցիալիստական մրցության մասնակիցների համար։ Ինչպես հայտնի է, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը դատապարտեց նման վերաբերմունքը և պահանջեց վճռականորեն պայքարել դրա դեմ։

Հանրապետության առանձին տնտեսություններ ստանձնած պարտավորությունները կատարում են պլանային գործում տեղ գտած մեկ ուրիշ կարգի «գրասենյակային մանևրի» շնորհիվ։ Այսպես, Շամշադինի շրջանի Արծվաբերդի կոլտնտեսությունում 1978 թ., նախորդ տարվա համեմատ, մեծ չափով իջել է մեկ կովի կաթնատվությունը՝ շուրջ 256 կգ և, չնայած դրան, այդ տնտեսությունը ո՛չ միայն կատարել, այլև գերակատարել է պլանային առաջադրանքները։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ արտադրության մակարդակի նման իջեցման պայմաններում խոսք չի կարող լինել կաթի առաջադրանքների կատարման մասին։ Բայց պլանավորման մեխանիզմի «կարգավորման» միջոցով շրջանի գյուղատնտեսության վարչության «օգնությամբ» տնտեսությունը ո՛չ միայն կատարել, այլև գերակատարել է կաթի արտադրության, պետվաճառքի և մինչև անգամ մեկ կովի կաթնատվության առաջադրանքները (պլանը՝ 1750 կգ, փաստացին՝ 1886 կգ)։ Արծվաբերդը խոշոր տնտեսություն է, նրա արտադրանքը շրջանում զգալի տեղ ունի և, պարզ է, կաթնատվության այդ չափի խոշոր իջեցումը բացասաբար է ազդել ամբողջ շրջանի ցուցանիշների վրա։ Այդ տնտեսությունում անցյալ տարի միայն 12 կթվորներ են նվաճել մեկ կովից 2000 կգ կաթի ստացման բնագիծը, իսկ նախորդ՝ 1977 թ. նրանց թիվը եղել է 30։ Բացի այդ, այստեղ գործարար մրցություն չի ծավալվում այդ ճյուղը եկամտաբեր դարձնելու համար։ Մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը շատ բարձր է՝ 47 ռ. 02 կ.։ Միայն կաթի արտադրությունից կոլտնտեսությունը 101,9 հազ. ռուբլու վնաս է կրել։

Վերջին տարիներին ինչպես Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում անշեղորեն ավելանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Զգալի են հաջողությունները նաև անասնապահության բնագավառում. նկատելիորեն աճել է կաթի, ձվի, մսի արտադրությունը։ Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը, այդ ճյուղը պետք է ավելի



արագ զարգացնել, որպեսզի առավել լրիվ ապահովվեն անասնապահական մթերքների նկատմամբ բնակչության պահանջմունքները։ Պլենումը առանձնակի սրությամբ դրեց մսի արտադրության ավելացման հարցը։

Խոսելով գյուղատնտեսական ձեռնարկությունների 1978 թ. ստանձնած սոցիալիստական պարտավորությունների մասին, պետք է նշել, որ հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասը, վերլուծելով նախորդ տարիների աշխատանքի արդյունքները, ավելի բարձր պարտավորություններ են վերցրել։ Դրա կոնկրետ օրինակը կարող է հանդիսանալ Արտաշատի շրջանը։

Ինչպես հայտնի է, անցյալ տնտեսական տարում արտաշատցիները լուրջ հաջողությունների հասան խաղողի բերքատվության բարձրացման գործում, որը հնարավորություն ընձեռեց գերակատարել այդ կարևոր կուլտուրայի պետվաճառքի պլանը։ Ուսումնասիրելով իրենց հնարավորությունները, շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները նորանոր ռեզերվներ են որոնում և գործողության մեջ դնում։ Վերին Արտաշատի, Քաղցրաշենի, Այգեզարդի, Նորաշենի, Նշավանի, Ոստանի և մի շարք այլ տնտեսությունների խաղողագործներ պարտավորվել են այս տարի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 170—220 ցենտներ բերք։ Գյուղատնտեսական արտադրանքի ավելացման բարձր պարտավորությունների օրինակներ կարելի է բերել նաև այլ շրջաններից։

Պրակտիկան ցույց է տալիս, սակայն, որ առանձին տնտեսություններում նշված համաչափությունը խախտվում է, հաճախ նրանց ստանձնած պարտավորությունները ցածր են փաստացի ձեռք բերված ցուցանիշից։ Այդ է վկայում Արարատի շրջանի Ավշարի կոլտնտեսության օրինակը։ Տնտեսությունը նախորդ տնտեսական տարում պետությանն է վաճառել 9.596 ցենտներ կաթ և 316 հազար ձու, իսկ հնգամյակի չորրորդ տարում պարտավորվել է այն «հասցնել» համապատասխանաբար 9.000 ցենտների և 250 հազար հատի։

Ակիղբեկովի շրջանի Արինի կոլտնտեսությունը 1978 թ. ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 35 ցենտներ բերք, որը հնարավորություն ընձեռեց մեկուկես անգամ գերակատարելու պետվաճառքի առաջադրանքը։ Այդ բարձր ցուցանիշների համար նրան շնորհվել է ՀԿԿ շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ 1979 թ. տնտեսությունը պարտավորվել է ծխախոտի միջին բերքատվությունը «հասցնել» 25 ցենտների։ Ցածր են նաև շրջանի մի շարք այլ տնտեսությունների պարտավորությունները։

Տասներորդ հնգամյակի՝ արդյունավետության և որակի բարձրացման խնդիրների հաջող կատարումը պահանջում է կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների հետևողական աշխատանքը։ «Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից։ Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 64)։ Բնականաբար, սոցիալիստական մրցության արդի փուլի կարևոր առանձնահատկությունը պայքարն է հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար։ Այնուամենայնիվ, մեր առանձին կոլտնտեսություններում և սովխոզներում այդ հարցի նկատմամբ ձևական մոտեցում է նկատվում։ Շատ պարտավորություններում կարդում ենք արդյունավետության վերաբերյալ ընդհանուր ֆրազներ. «...պարտավորվում ենք վաճառել բարձրորակ մթերքներ», «...պայքարել արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման համար» և նման կարգի ուրիշ ոչ կոնկրետ պարտավորություններ։

Հարկ է նշել, որ մենք դեռ քիչ ենք խրախուսում աշխատավորությանը՝ գյուղատնտեսական մթերքների որակը և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։ Դրա ապացույցն է, որ վերջին մի քանի տարիներին կոլտնտեսությունների և սովխոզների կողմից պետությանը հանձնված ամբողջ խաղողի մոտ 20, կաթի՝ 40 տոկոսն է եղել առաջին տեսակի, հացա-

հատիկի ուժեղ և արժեքավոր սորտերի բաժինը կազմում է 28 տոկոս: Այս թվերը զգալիորեն ցածր են Միության համապատասխան ցուցանիշներից:

Հանրապետության գյուղատնտեսական ձեռնարկությունների մի մասը մեծ վնասներ է կրում հատկապես անասնապահությունից: Այսօրվա վիճակով, երկրի մյուս շրջանների համեմատ, մեզ մոտ բավականին բարձր է անասնապահական մթերքների ինքնարժեքը. պատճառը աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակն է: Դրա համար անհրաժեշտ է կազմակերպել հատուկ մրցություն՝ բարձրացնելու արտադրության այդ կարևոր ճյուղի մեքենայացման մակարդակը, որը կնպաստի անասնապահության վերելքին:

Վերջին տարիներին կուսակցական և սովետական վերադաս մարմինների որոշումների համաձայն բարձրացվել են դաշտավարական կուլտուրաների և անասնապահական մթերքների գնման գները: Ի դեպ, գնման գների ավելացումը կատարվել է առանց բարձրացնելու այդ մթերքների գոյություն ունեցող մանրածախ գները:

Տնտեսական խթանման այդ միջոցառումը գյուղատնտեսական արտադրության ետ մնալը հաղթահարելու կարևոր լծակներից մեկն է: Դրանով առավել նպաստավոր պայմաններ են ստեղծվում արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար: Հետևաբար, սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփման ժամանակ պետք է անպատճառ հաշվի առնվի արտադրության արդյունավետության հարցը: Մեր կարծիքով, այդ ցուցանիշները չկատարող տնտեսություններին չի կարելի շնորհել մրցանակային տեղեր:

Ինչպես հայտնի է, Ստեփանավանի շրջանի գյուղատնտեսական ձեռնարկություններում կան բոլոր պայմանները անասնապահության բնագավառում բարձր արդյունքի հասնելու համար: Եվ կարևոր է սոցիալիստական մրցության միջոցով կոլտնտեսականներին ու սովխոզների բանվորներին ներգրավել այդ նպատակով տարվող պայքարում: Բայց ինչ խոսք կարող է լինել բարձր ցուցանիշների հասնելու մասին, երբ շրջանը պարտավորություն է ստանձնել 1979 թ. ինտենսիվ եղանակով բտվող խոշոր եղջերավոր անասունների օրական միջին քաշաճը հասցնել 600 գրամի, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,4 կգ-ի, յուրաքանչյուր ածան հավից ստանալ 157 ձու:

Երբ այս թվերը համեմատում ենք հանրապետության այլ շրջանների համապատասխան ցուցանիշների հետ, կրկին համոզվում ենք, որ դրանք հիմնավորված չեն: Այսպես, օրինակ, Արտաշատի շրջանը, որն անասնապահության զարգացման համար համեմատաբար բարենպաստ պայմաններում չի գտնվում, պայքարում է ինտենսիվ եղանակով բտվող խոշոր եղջերավոր անասունի օրական միջին քաշաճը հասցնել 750—900 գրամի, յուրաքանչյուր ոչխարից ստանալ 2,5 կգ բուրդ, ածան հավից՝ 162 ձու: Նման բարձր պարտավորությունների օրինակներ շատ կարելի է բերել: Թվում է՝ ստեփանավանցիների ընդունած ցածր պարտավորությունները համապատասխան մոբիլիզացիոն վիճակ չեն ստեղծում և նպատակահարմար կլինի, որ շրջանի շատ տնտեսություններ վերանայեն իրենց բնագծերը:

Առաջավոր փորձի ուսումնասիրումը և ներդրումը սոցիալիստական մրցության կարևոր խնդիրներից են: Հանրապետության բոլոր շրջաններում էլ կան տնտեսություններ, բրիգադներ, օղակներ և անհատներ, որոնց արտադրական ցուցանիշները կրկնակի, եռակի գերազանցում են նույն պայմաններում գտնվող շրջանի մյուս տնտեսությունների համապատասխան ցուցանիշները: Անտարակույս, բոլոր շրջաններում առաջավոր փորձի ներդրման համար պայմաններ կան: Շամշադինի շրջանի Թովուզի կոլտնտեսության այգեգործ Հ. Պողոսյանն իր մշակած 0,71 հեկտար խաղողի այգուց անցյալ տարի ստացել է 200 ցենտներ բերք, մեկ հեկտարի հաշվով ապահովելով ռեկորդային բերք՝ 282 ցենտներ: Տնտեսությունը հեկտարից ստացել է 102, շրջանը՝ 98 ցենտներ բերք: Նույն շրջանի Ծաղկավանի սովխոզի ծխախոտագործուհի Օ. Խաչատրյանը հեկտարից 50 ցենտներ բարձրորակ ծխախոտի հումք է ստացել: Ներքին Կարմիր աղբյուրի կոլտնտեսության անասնապահ Կ. Ադամյանը բտման եղանակով սնած խոշոր եղջերավոր անասունների օրական քաշաճը հասցրել է մեկ



կիլոգրամի: Նշված տվյալները 1,7—2,1 անգամ բարձր են իրենց տնտեսությունների և շրջանի ցուցանիշներից:

Կամոյի շրջանի Նորադուզի սովխոզում Ա. Սարգսյանը յուրաքանչյուր կովից ստացել է 2.868 կգ կաթ, Ղափանի շրջանի Նորաշենիկի սովխոզում Մ. Հայրապետյանը՝ 2.844 կգ, Եղեգնաձորի շրջանի Աղավնաձորի սովխոզում Ե. Հակոբջանյանը՝ 3.327 կգ: Այս ցուցանիշները մոտ կրկնակի չափով գերազանցում են շրջանի միջինին: Հրազդանի շրջանի Մեղրաձորի կոլտնտեսությունը պետությանը վաճառված յուրաքանչյուր մատղաշի միջին կենդանի քաշը հասցրել է 430 կգ-ի, որն անհամեմատ բարձր է շրջանի և հանրապետության համապատասխան ցուցանիշից: Սիսիանի շրջանի Բռնակոթի կոլտնտեսությունն աշխատանքի կազմակերպման և վարձատրության առաջավոր մեթոդի ներդրման շնորհիվ արդեն 5-րդ տարին է, ինչ հացահատիկի և մյուս կուլտուրաների բերքատվության ռեկորդային բերք է ստանում. դա շրջանի մյուս տնտեսությունների համապատասխան ցուցանիշները գերազանցում է 2—2,5 անգամ: Նման օրինակներ շատ կարելի է բերել նաև ուրիշ շրջաններից:

Հանրապետությունում կուտակված առաջավոր փորձի հետ մեկտեղ խիստ կարևոր է ներդնել նաև երկրի ճանաչված բարձր բերքի վարպետներ Վ. Յա. Պերվիցկու, Մ. Ի. Կլեպիկովի, Բ. Ա. Պոնոմարենկոյի, Վ. Ա. Կոլեսնիկովի և մյուսների աշխատանքի փորձը: Ինչպես հայտնի է, կուսակցության Կենտրոնական կոմիտեն որոշել է տարածել Ստավրոպոլի երկրամասի Իպատովոյի շրջանի փորձը: Բարձր գնահատելով իպատովցիների հասումները, ՍՄԿԿ Կենտկոմը հանձնարարել է նրանց փորձը ներդնել երկրի բոլոր շրջաններում՝ հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և մյուս կուլտուրաների բերքահավաքի ժամանակ: Ծավալելով մրցությունը, Միության շատ շրջաններում ո՛չ միայն բերքահավաքը, այլև ցանքը նույնպես կատարում են իպատովյան մեթոդով: Լայնորեն ճանաչվել են նաև Տուլայի մարզի Շչոկինոյի քիմիական կոմբինատի առաջավոր փորձը գյուղատնտեսության մեջ ներդնելու մեթոդը, Վիննիցայի մարզի Յամպոլի շրջանի ճակնդեղագործների և շաքարի գործարանի աշխատողների հայրենասիրական նախաձեռնությունը:

Սոցիալիստական մրցությունը կուսակցությունը դիտում է որպես տնտեսական և սոցիալական առաջընթացի հզոր լծակ, որպես աշխատավորների քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դպրոց: Կուսակցությունը խնդիր է դնում լայնորեն ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը: Գյուղի աշխատավորներն այդ կոչին պատասխանում են կոնկրետ գործերով, ամենուրեք լայն մրցություն ծավալում հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար: Մեր պարտքն է առավել խելացիորեն կազմակերպել և գլխավորել այդ հայրենասիրական շարժումը:

---

# ՀՈԳՈՎ ՈՒԺԵՂՆԵՐԸ

(Ակնարկ)

## ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

ՄԵՐ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄՏԱՎՈՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ մեջ կա և այսօր էլ դեռ աշխատանքային շարքերում է մի սերունդ, որը կապող օղակ է հեղափոխությունից հետո սովետական իշխանությանը ծառայության անցած, այսպես կոչված «հին» տեխնիկական մտավորականության և այսօր համեմատաբար երիտասարդ, նոր սերնդի միջև: Այդ սերնդին հատուկ է, մի կողմից՝ «հների» բարձր կուլտուրան, բազում հետաքրքրասիրությունները, մյուս կողմից՝ «նորերի» խոր մասնագիտացումը:

Արփա—Սևան ստորգետնյա ջրատարի նախագծի գլխավոր ինժեներ Հարություն Մարջանյանն այդ սերնդից է: Եղել է Ա. Խանջյանի, Ե. Չարենցի ժամանակակիցը, մասնակցել Հայրենական պատերազմին, կռվել առաջին գծում: Շատ հաճախ նա պատմում է երիտասարդ պատկոմների, նաև ամերիկյան ոռբանոցների մասին, ապա հիշում, թե ինչպես ինքը ռազմաճակատում հազիվ իրեն զսպեց և այն աշխարհը չուղարկեց մի սրիկայի, որը քնել էր պահակակետում, վտանգի ենթարկելով հարյուրավոր մարտիկների կյանքը... Նորերից ոմանց այս ամենը կարող է ավելորդ թվալ, բայց Հարություն Մարջանյանը երբեք չի ունեցել այն տաղտուկը, որը ճնշում է մասնագետի ողջ էությունը, երբ, պատահում է, նա հոգնում է իր մասնագիտությունից: Ի՞նչն է բնորոշ նրան, որպես մասնագետի. տեխնիկական, տնտեսական խոշոր նախագծերի նշանակությունը նա գնահատում է ոչ թե կոնկրետ տվյալ ժամանակահատվածի մեջ, այլ մեր զարգացման անցյալի և հեռանկարի ընդհանուր հենքի վրա, նայելով ետ, նայելով առաջ:

— Հիշում եմ,— պատմում է,— 1932 թվականի ձմռանը Հ. Աբելյանը խաղում էր Պատվի համար պիեսում, ես ու քույրս գնացել էինք դիտելու. նստել էինք վերարկուով, դահլիճը չէր տաքացվում, էներգիա չկար, պետակա՛ն թատրոնի դահլիճը չէր տաքացվում: Այդպես էր երկրի վիճակը: Տներում նավթ էին վառում, այն էլ... իմ տարեկիցները լավ են հիշում նավթի հերթը այդ տարիներին: Երկիրն արդյունահանում էր ընդամենը 17 միլիոն տոննա նավթ. այն տարիներին իրոք մեծ նվաճում էր այդ ցարական Ռուսաստանի արդյունահանած նավթի համեմատությամբ: Բայց համեմատենք այդ 17 միլիոնն այսօրվա 600 միլիոնի հետ...

Այնուհետև, Արարատյան դաշտի հարյուր հազար հեկտար հողերը մնում էին անօգտագործելի, ջուր չկար: Քասաղ գետի ջրերը, որ օգտագործվում էին Արարատյան դաշտը ոռոգելու համար, չէին բավականացնում այդ հարյուր հազար հեկտար հիանալի հողերի ոռոգման համար: Մինչդեռ ծրագրված էր Հայաստանի տնտեսական ու կուլտուրական մեծ վերելք, սպասվում էր բնակչության թվի մեծ աճ՝ հիմնականում հայրենադարձությամբ:

Էներգետիկա և ոռոգում—ահա այն ժամանակ մեր առջև ծառացած երկու հիմնական խնդիրները: Առանց այս խնդիրները լուծելու չէր կարելի մտածել հետագա տնտեսական առաջընթացի մասին: Որոտանի էներգետիկ կասկադի գաղափարը կար նաև այն ժամանակ, բայց դրա իրագործումը կապված էր տեխնիկական ու տնտեսական այնպիսի խնդիրների հետ, որոնք այն ժամանակներում մեզ համար անլուծելի էին: Մենք դեռ հետագայում պիտի սովորեինք բարձր ամբարտակներ կառուցել հեռավոր, սակավաբնակ վայրերում, էլեկտրականությունը հասցնել հեռու-հեռուները: Բացի այդ, Որոտանը, նույնիսկ նախագծի իրագործման դեպքում, կտար էներգիա, բայց ոչ ջուր: Միակ աղբյուրը Սևանն էր, Սևանի էներգետիկ կասկադի և ջրանցքի կառուցումը: Սխալվում են նրանք, ովքեր դեռ այսօր էլ այն կարծիքին են, թե Սևանի կասկադի կառուցումը և լճից մեծ քանակությամբ ջուր բաց թողնելը ճիշտ չէր: Առանց դրա մենք չէինք ունենա արդի արդյունաբերական և ագրարային Հայաստանը: Միանգամայն ճիշտ և այն ժամանակներում միակ ճիշտ լուծումն էր այդ:

Հետո զարգացավ տեխնիկան, զարգացավ գիտությունը, երկիրը տնտեսապես հզորացավ. դա մեզ շատ բան տվեց. այսօր հնարավոր է էներգիայի պահանջը բավարարել նաև այլ միջոցներով— ատոմակայաններ, ջերմակայաններ, բնական գազ, հնարավոր դարձավ Որոտանի կասկադի կառուցումը:

Այսօր հնարավոր է դարձել կառուցել խոշոր ջրամբարներ, փորել արտեզյան ջրհորներ, կրճատվել է ոռոգման և էներգիա ստանալու նպատակներով Սևանի ջրի պահանջը: Առաջ մենք չունեինք այդ հնարավորությունները: Եվ, վերջապես, հենց մեր այդ զարգացման շնորհի՛վ հնարավոր եղավ ձեռնարկել տեխնիկապես այնպիսի բարդ ու խոշոր նախագծի իրագործմանը, ինչպիսին մեր Արփա—Սևան ստորգետնյա ջրատարն է...

Առաջ մենք Սևանից բաց էինք թողնում օրական մինչև 1,8 միլիոն խորանարդ մետր ջուր: Դեռևս 60-ական թվականներին ջրի որոշ պակաս զգացվում էր: Այժմ Սևանն իր բալանսում ունի տարեկան 170 միլիոն խորանարդ մետր, այսպես կոչված՝ «ազատ ջուր», և 250 միլիոն կբերի Արփա—Սևանը: Եթե դրան գումարենք նաև Որոտանի ջուրը—տարեկան 200 միլիոն խորանարդ մետր—ապա Սևանի ազատ ջրերի ծավալը կհասնի 620 միլիոն խորանարդ մետրի: Այս այն դեպքում, երբ արդեն այսօր լճից բաց թողնվող ջրի քանակն իջեցրել ենք 300 հազար խորանարդ մետրի: Բոլոր հնարավորություններն ստեղծվում են լճի մակարդակն անհրաժեշտ չափով բարձրացնելու համար:

Արփա—Սևանի նշանակությունը հիմնականում տնտեսական է. գլխավորը Սևանում ջրի անհրաժեշտ ռեզերվների ստեղծումն է: Նայեցեք քարտեզին. Սևանը լեռների բարձրության վրա դրված մի վիթխարի ջրամբար է: Եվ այդ բարձր ջրամբարում մշտապես ջրի բավարար պաշարներ ունենալն ամենից առաջ տնտեսական անհրաժեշտություն է: Կասկադի էլեկտրակայանները դեռ երկար ժամանակ անհրաժեշտ կլինեն մեզ, հիմնականում օրվա էներգետիկ «պիկ» ժամերին, երբ էլեկտրաէներգիայի պահանջը հասնում է առավելագույնի: Չորային տարիներին, որ մեզ մոտ հաճախ են լինում, հողերի ոռոգման համար միշտ էլ անհրաժեշտ կլինի հսկայական քանակությամբ հավելյալ ջուր: Սևանն այսպիսով դառնում է հանրապետության էկոնոմիկայի համաչափ գործունեությունն ապահովող մի հզոր կարգավորիչ:

ՄԱՐՏՈՒՆՈՒ ՇՐՋԱՆԻ ցանկացած բնակավայրում ասացեք, թե դուք եղել եք Արփա—Սևանի շինարարության երրորդ հատուկ տեղամասում, և ձեզ անպայման կհարցնեն. «Իսկ Յուրի Գերասիմովիչին տեսա՞ք»: «Տեսա»: «Հիանալի մարդ է, այնպես չէ՞»: Խոսքը Մկրտչյանի մասին է, տեղամասի պետի:

Նա ստորգետնյա ջրատարի շինարարությունում է դեռ առաջին պայթյունից սկսած, Կեչուտի տեղամասում՝ առաջին թունելախորշի բացման օրերից: Այն ժամանակ տեղամասում չկային հանրակացարաններ, ճաշարան, դպրոց, բնակելի շենքեր. այդ ամենը հետագայում կառուցվեց: Կային տնակ-վագոններ, որոնցում տեղավորված էր վարչությունը, վրաններ, որոնց տակ ապրում էին: Դա ավելի քան տասնվեց տարի առաջ էր: Մկրտչյանը սիրում է հիշել: Թունելը նրա ապրած ավելի քան տասնվեց տարիների կյանքն է: Շատ բան, ինչ նա պատմում է Կեչուտի տեղամասից, շատ մարդկանց, որոնց հիշում է, ես գիտեմ: Նա համարյա չի փոխվել. նույն վառվռուն մարդն է, ջրատարին սիրահարված նույն էնտուզիաստը, թեև հետևում են մնացել տագնապներով, հոգսերով, պատասխանատվությամբ լեցուն այդ տարիները:

Միշտ եղել է առաջավոր գծում, այնտեղ, ուր դժվար է, ջրատարին անմնացորդ տվել է եռանդը, գիտելիքները, հմտությունը, ջղերը: Մի անգամ ես հարցրի նրան. «Յուրի Գերասիմովիչ, իսկ ի՞նչ եք մտադիր անել թունելը շահագործման հանձնելուց հետո»: «Այո՜...— մտախոհ արտասանեց նա. կարծես առաջին անգամ էին իրեն տալիս այդ հարցը, և ինքը երբեք չէր մտածել այդ մասին: — Ճիշտն ասե՞մ, գիտեք ինչ, հոգնել եմ, անկեղծ՝ հոգնել եմ: Կավարտենք կառույցը և, բավական է, կիջնեմ սարերից, կգնամ մերոնց մոտ, կտա՞ն մի հանգիստ գործ՝ կանեմ, չե՞ն տա, կհանգստանամ»: Նա ասում է, թե մի տեսակ թախիծ է պատում իրեն, երբ մտածում է, որ ահա շուտով թողնելու են շինարարների այս ավանը, թե այստեղ, հորանի վերևում այլևս չի լսվելու վերելակի ճռռոցը, թե այստեղ էլ չեն լինելու թունելագործները: «Շատ եմ սովորել այս ամենին, բայց ի՞նչ արած: Ամեն սկիզբ իր վերջն ունի»:

Հիանալի զրուցակից է. սիրում է դատողություններ անել, խորհել կյանքի, մարդկանց մասին: Իմ հարցին, թե՝ «Ի՞նչ կանեիք, եթե չլիներ Արփա—Սևանը», նա պատասխանեց. «Միևնույնն է, ես կգտնեի իմ Արփա—Սևանը»: Նրան լավ ճանաչողներն ասում են. «Արփա—Սևանը Մկրտչյանի կյանքի իմաստն է»: Դրանում ճշմարտություն կա, որը նա բացատրում է այսպես. հազարամյակների պատմություն

ունեցող մեր ժողովուրդը առաջին անգամ ի վիճակի է կյանքի կոչելու տեխնիկական մի խոշորագույն նախագիծ, որը մեր ժամանակներում կկարողանային իրագործել միմիայն ամենազարգացած տերությունները: Եվ դու այդ մեծ գործի մասնակիցն ես: Դա քիչ բան չէ, որպեսզի համարվի կյանքիդ իմաստը: Չլինեն Արփա—Սևանը, ինքը կգտներ իր ժողովրդի համար նույնքան կարևոր մի գործ և կնվիրվեր դրան:

Նայեցեք. ի՞նչ բան է կյանքը, ի՞նչ է նշանակում՝ ապրել. ապրել՝ նշանակում է գործել, ինչ-որ բան անել, որևէ բան ստեղծել: Մի՞թե այդպես չէ: Այստեղ ինքը համաձայն չէ հին փիլիսոփայի հետ: Մարդն իր գործունեությամբ գոյություն ունի: Գոյություն ունես, եթե որևէ բան ես ստեղծում: Մեծագույն բավականություն մարդն ստանում է ընդհանուրի բարօրության համար իր կառուցած գործից: Սա, իհարկե, գիտակցության բարձր մակարդակ է: Ինքը, օրինակ, երկար գլխացավանք կրեց, մինչև հաջողացրեց բանավանի վերևում, սարի վրա հեռուստատեսային վերահաղորդման աշտարակ կառուցել: Ինքը հեռուստացույց համարյա թե չի նայում, ժամանակ չի լինում, բայց, ա՛յ, բանվորները նայում են, հնարավորություն ունեցան աշխարհի անցուդարձերին տեղյակ լինելու: Առհասարակ նա հաճախ է դժգոհում. ժամանակ չի լինում գրքեր կարդալու, թերթերն աչքի անցկացնելու, իսկ հիմա լավ գրականություն է ստեղծվում, հետաքրքրական ժամանակներում ենք ապրում. «Երբեմն մտածում եմ՝ ետ եմ մնում կյանքից, բայց ի՞նչ կարող ես անել, աշխատանքն ամբողջ ժամանակը խլում է, և գոհ եմ լինում, եթե կարողանում եմ երբեմն մեկ ժամ «խլել» աշխատանքից, կարդալու համար»:

Դժվար օրերը, ժամերը երկար են հիշվում: Անհամար դժվարին օրերից, անքուն գիշերներից նա հանկարծ մտաբերում է այս մեկը. «Քաղաքում ինչ-որ խորհրդակցություն էր, ձգձգվեց, մինչև եկա տուն, հաց կերա, դե՛, ձմռանը շուտ է մթնում, տանեցիք թե՝ մի՛ գնա, ձյուն է գալիս, ճանապարհները փակված կլինեն: Չլսեցի, անհանգիստ էի, կարծես զգում էի, որ այդ գիշեր ինչ-որ բան պիտի լիներ: Մեծ դժվարությամբ տեղամաս հասանք, Վարդենիկից բարձրանալիս ձնաբուքը մեքենան կանգնեցնում էր: Եկա, անասելի հոգնած էի. պառկեցի, աչքս չէր կպել, հրում են. «Յուրի Գերասիմովիչ, թունելախորշում հեղեղ է»: Իջանք թունելախորշ. իրոք որ ջրհեղեղ. ջուրը թափվում է՝ ինչպես շատ հորդ անձրևի ժամանակ: Ինձ ասացին, թե ջրհան պոմպերից մեկը չի գործում. հասկանո՞ւմ եք, հակառակի պես չի գործում: Կանչեցի մեխանիկին և ինչպե՜ս եմ գոռգոռում նրա վրա, ինչպե՜ս եմ հայհոյում... Ջրի դեմն, իհարկե, առանք: Հասկանո՞ւմ եք, մտածում էի՝ ինչո՞ւ հայհոյեցի մարդուն, պետք չէր, կարելի էր ավելի հանգիստ ձևով և ավելի խիստ ձևով... Մի տեսակ մեղավոր էի զգում ինձ: Մտածում եմ, երևի շատ էի հոգնած այդ օրը, անքուն էի, ջղերս չդիմացան. լինում են մարդու հետ այդպիսի վթարներ...»:

Մեր ապրած օրերից, ժամերից մենք ավելի հաճախ հիշում ենք այն պահերը, որոնք մեզ դեռ հանգիստ չեն տալիս, որոնք դեռ խռովում են մեր հոգու անդորրը:

Իսկ մնացածի մասին Մկրտչյանն ասում է ընդհանրապես՝ «Թունելագործի աշխատանքը դժվար է...»:

Վերջին օրը, հրաժեշտ տալիս, ես հարցրի տեղամասի կուսկազմակերպության քարտուղար Ռազմիկ Դավթյանին. «Իսկ ի՞նչ եք կարծում, թունելն ավարտելուց հետո Յուրի Գերասիմովիչն իսկապե՞ս մտադիր է «իջնել սարերից»: «Ի՜նչ եք ասում,— խնդաց նա:— Նրա լեզուն է այդպես ասում, ես նրան լավ եմ ճանաչում: Գիտե՞ք ինչի մասին է նա երազում, ինձ խոստովանել է. «Երբ ավարտվի թունելը,— ասում է,— կգնամ Որոտան: Էլի թունել կկառուցեմ: Վատ եմ սովորել, եղբա՛յր, ուրիշ կերպ չեմ կարող»: Ես էլ կարծում եմ, որ ուրիշ կերպ չի կարող լինել»:

ԽՈՍՈՒՄ ԷԻՆՔ ԹՈՒՆԵԼԻ տնտեսական նշանակության մասին. Դավթյանն ինձ ասաց. «Արփա—Սևանի նշանակությունը միայն Սևանի պահպանմամբ չի սահմանափակվում, խոսք չկա, նրա տնտեսական, էկոլոգիական նշանակությունը մեծ է, հետագա սերունդների համար ջրատարը կլինի բնության պահպանության նպատակով մեր ժամանակակցի թափած ջանքերի ամենանշանակալի վկայություններից մեկը: Դրանում չեմ կասկածում: Բայց չպետք է մոռանալ կառույցի մի այլ նշանակություն ևս: Այն մեր հազարավոր մարդկանց համար եղել է կյանքի իսկական դպրոց: Եվ, խստապահանջ դպրոց: Ով այստեղ քնություն չի բռնել, հեռացել է, մնացել են ամենաուժեղները, որոնք այստեղ կոփել են իրենց կամքը: Կառույցը կոմունիզմի դպրոց է»:

Եվ այստեղ ես հասկացա, թե ինչու Ռազմիկ Դավթյանը ինձ խորհուրդ տվեց զրուցել Վլադիմիր Ծվեցովի հետ, բրիգադավար Ծվեցովի. այդ զրույցը լավ եմ հիշում:

Նիհար, նեղ ուսերով տղա է, բրիգադի տղաների մեջ արտաքինից ամենից քիչ աչքի զարնողը: Մյուսներն ամրակազմ են, համարյա բոլորն էլ նրանից ավելի բարձրահասակ: Հարցերիս պատասխանում էր շատ կարճ, երբեմն մեկ բառով, և զրույցը չէր ստացվում. դժվար էր այդ երիտասարդից որևէ պատմություն դուրս քաշելը: Բայց մի անգամ հարցրի նրան. «Դե, ինչպե՞ս է, բրիգադում համախմբվածություն կա՞»: Եվ այստեղ նա կարծես վերափոխվեց, «բացվեց», սկսեց պատմել, և ես հասկացա, որ մինչև հիմա պարզապես չէի կարողացել գտնել նրա համար հատկապես կարևորություն ունեցող թեման, այն, որի շուրջը, հավանաբար, նա շատ երկար էր խորհել:

— Տերնոպոլի մոտերքից եմ, Ուկրաինայից: 71-ից այստեղ եմ՝ Արփա—Սևանում, քանի՞ տարի է անում, եղել եմ տարբեր տեղամասերում, ամենատարբեր աշխատանքներ եմ կատարել, դե, հիմնականում թունելախորշում: Եվ հանկարծ ասում են՝ «Վոլոդյա, վերցրու կոմպլեքսային բրիգադը և ղեկավարիր»: Հասկանո՞ւմ եք, ինձ համար դա անակնկալ եղավ, գլխավորը՝ ո՞ւմ են հավաքել բրիգադում՝ Դավթյան Լյովային, Սարգսյան Ռուբենին, Մանուկյան Հայկին, Երդակով Ալեքսանդրին, Սարգսյան Նորիկին. տղաներին գիտեմ, լավ ճանաչում եմ, բոլորն էլ համարյա իմ տարիքին, քսանից-քսանութ տարեկան, ավելի մեծը չկա: Լավ ճանաչում եմ, բայց անհանգիստ եմ, մտածում եմ՝ կկարողանա՞մ արդյոք այդ միանգամայն տարբեր բնավորության, տարբեր խառնվածքի տեր և տարբեր հետաքրքրություններ ունեցող մարդկանցից ստեղծել ընդհանուր նպատակներով ապրող մի ամբողջական կոլեկտիվ: Դա, հասկանո՞ւմ եք, ինձ ավելի շատ մանկավարժական խնդիր էր թվում: Կզրուցեմ յուրաքանչյուրի հետ առանձին, մտածեցի, կբացատրեմ, կհամոզեմ, թե որքան կարևոր է համախմբվածությունը, երբ աշխատում ենք միասին: Բայց մյուս կողմից կասկածում էի՝ կկարողանա՞մ, արդյոք:

Հասկանո՞ւմ եք, ախր թունելախորշը շատ առանձնահատուկ աշխատանքային տեղամաս է, խիստ կարգապահություն է պահանջում և անփութության, գլուխ պահելու համար չի ներում: Երբ այս ամենի մասին պատմեցի, Դավթյանը՝ մեր կուսկազմակերպության քարտուղարը, ասաց. «Կվերցնես բրիգադը և կիջնես թունելախորշ, այնտեղ, աշխատանքի մեջ ամեն ինչ կերևա, և անելիքդ էլ պարզ կլինի»: Գնացինք հերթափոխի: Նախորդ օրը հավաքվել էինք, զրուցել, կատակել, այսքանը. առանձնապես լուրջ խոսակցություն չէր եղել: Եվ, ի՞նչ եք կարծում, աշխատանքը հիանալի առաջ գնաց, առաջադրանքը կատարեցինք, մի բան էլ դեռ ավելի և հարկ չեղավ որևէ մեկին կարգադրելու կամ հորդորելու անել այս կամ այն: Կարծես տարիներ շարունակ աշխատել էինք միասին: Իսկ ո՞րն է գաղտնիքը, կարո՞ղ եք ասել: Թունելախորշն ունի իր հաստատուն օրենքը՝ մտե՞լ ես այնտեղ, պիտի աշխատես առանց ձեռքերդ ծալելու, անես այն, ինչ պարտավոր ես և՝ բարեխղճորեն, եռանդով, հակառակ դեպքում դու այնտեղ ավելորդ ես, միայն կարող ես խանգարել գործին, նստիր վերելակն ու վեր բարձրացիր:

Ասացեք, խնդրեմ, մի՞թե կարելի է ձեռքերը ծալած կանգնել, երբ ջուրը թափվում է գլխիդ, երբ ապարը կուտակվել է ոտքերիդ տակ, իսկ վագոնիկները կանգնած են դատարկ:

Ուրեմն՝ պետք է ամրակապեր դնել, ապարը հավաքել, և որքան շուտ, այնքան լավ, պետք է բլոկները տեղադրել, ցեմենտով ամրացնել... Եթե գործը կա, պետք է արվի, թունելախորշի տրամաբանությունն այս է. եթե մտել ես թունելախորշ, պետք է ենթարկվես այս տրամաբանությանը:

Իսկ տղաներն առաջին անգամը չէր, որ թունելախորշ էին իջնում... Թունելախորշը համախմբում, կազմակերպում, միավորում է մարդկանց, նրանց մեջ կոփում աշխատելու կամք, համառություն, բարեխղճություն, մի խոսքով՝ թունելախորշը դաստիարակում է: Եվ հիմա ինչպե՞ս է. իջնում ենք, օրինակ, այնտեղ, մեզ առաջադրանք է տրված՝ թունելախորշը մաքրել ապարից, դնել բլոկները, դուրս բերել մնացած ապարը:

Ես ոչինչ չեմ ասում, տղաներից ամեն մեկը գիտե իր անելիքը, մենք կատարում ենք առաջադրանքը և դեռ ամրակապեր ենք դնում, ջուրն ենք դուրս քաշում: Ես մտածում էի, որ գործն ավելի լավ կընթանա, եթե տղաները մտերմանան իրար, ստեղծվի միասնական ընտանիքի զգացողություն. և առիթը չէի փախցնում միասին կինո գնալու, երաժշտություն լսելու, վոլեյբոլ խաղալու կամ կարդացած գիրքը քննարկելու համար: Կուլտուրական սպասարկումը մեզ մոտ լավ է կազմակերպված:

Մեր միջի վերջին ամուրին՝ Ռուբիկը, նշանվել է. շուտով կոմերիտական հարսանիք կանենք... Մեզ մոտ վթարային դեպք եղավ, երևի գիտեք: Ո՜չ, դրանից հետո ոչ ոք չհեռացավ տեղամասից, բոլորն էլ մնացին, հա՛, տարեց մեկը կար, դիմում տվեց, գնաց ուրիշ տեղամաս, շուտով թոշակի էր անցնելու: Այսպես, ուրեմն, այն բրիգադին, որը վթարի ժամանակ աշխատել էր թունելախորշում, մենք պիտի փոխարինեինք, մեր հերթն էր:

Հանգստանում էինք, իմացանք, վազեցինք դեպի հորանը, հենց որ օդափոխումն ավարտվեց, ցած իջանք: Դե՛, ի՞նչ, վթարը վթար է, տխուր բան: Այստեղ հանձնաժողովներ եղան, մի խոսքով, ինչպես որ միշտ՝ նման դեպքերում:

Հիմա, այդ ամենից հետո, եկել է ժամանակը թունելախորշ իջնելու, աշխատելու. առաջին

հերթափոխը պիտի իջնի։ Դե, հասկանալի է, վթարից հետո մարդիկ տագնապում են. ակամա մտածում ես, թե էլի ի՞նչ տհաճ անակնկալ կարող է լինել։

Պետք էր հաղթահարել տագնապի հոգեբանական արգելքը, դա շատ կարևոր էր ոչ միայն մեզ համար. կար այդպիսի տագնապ, թեև ոչ մեկն այդ մասին չէր խոսում, բայց ես զգում էի, որ կար։ Եվ այդպես էլ, առանց այդ մասին որևէ խոսք ասելու, իջանք թունելախորշ։ Երբ վերելակը մեզ տանում էր ընդերքը, տղաները նույնիսկ կատակում էին, և ես մտածեցի՝ բայց չէ՞ որ սրանք նույն տղաներն են, որոնք մի անգամ արդեն, վթարից հետո, առանց վարանման, առաջին իսկ ազդանշանով իջել էին թունելախորշ։ Եվ, առաջին անգամ զգացի, որ բրիգադը, եթե կարելի է այսպես ասել, ստեղծվել է, բրիգադը կա։

ԱՆՑՆՈՒՄ Է ՊԻԳԱՐԵՎԸ առավոտ վաղ, վագոնիկների երկաթե գծերի երկայնքով, կլոր ակնոցն աչքերին, զննում է ուշադիր։ Գծերն սկսվում են հորանից, կիսաշրջան տալիս, ապարով բեռնված վագոնիկները ռելսերի վրայով սլանում են դեպի ապարը թափելու վայրը, շրջվելով դատարկվում են, նորից շտկվում և շարունակում իրենց ընթացքը մինչև ռելսերի արանքում ցցված կեռը. այստեղից վագոնիկներին քաշում է պողպատե ճոպանը, այստեղից վերելք է, մինչև հորանի բերանը։ Վանդակը դրանց իջեցնում է գետնի խորքերը՝ թունելախորշը, երկու կիլոմետրից ավելի վազք կատարելով դրանք հասնում են թունելախորշի վերջը, ուր կատարվում է հորատանցումը։ Ահա Պիգարևի ողջ տնտեսությունը։

Պիգարևն ամեն օր անցնում է այս ամբողջ ճանապարհը, զննում, շոշափում է մետաղե անիվները, պողպատե ճոպանները, երկաթբետոնե բլոկները, ամեն ինչի նայում է կասկածոտ, ականջ է դնում մեքենաների ձայնին, գրի է առնում բազմաթիվ սարքերի ցուցումները։ Պիգարևը հսկում է թունելագործների անվտանգությանը։ Պիգարևն այդպես էլ մտածում է՝ իրեն վստահված է պահպանել ոչ թե տեխնիկայի անխափան աշխատանքը, ոչ թե թունելախորշում հորատման աշխատանքների նորմալ ընթացքը, այլ՝ մարդկանց կյանքը։ Սիրում է Պիգարևը հորանի շուրջը կառուցված շինարարների փոքրիկ ավանը, իր փոքրիկ գրասենյակը, որի պատերին, հասարակ գրասեղանի շուրջը փակցված են բազմաթիվ գծագրեր ու սխեմաներ. գրասենյակի բաց պատուհանից երևում են կանաչ սարերը։

Գիշերները այստեղ, ծովի մակերևույթից երկու հազար չորս հարյուր մետր բարձրության վրա, երկինքն առանձնապես մուգ է, աստղերը առանձնապես պայծառ են շողում, իսկ ձմեռները ոռնում է ձնահողմը... Չորրորդ հատուկ տեղամասի պետի տեղակալն է՝ անվտանգության գործով։ Քառասուն տարեկան է. մասնագետի համար դա այն տարիքն է, երբ եռանդն ու կամքը զուգակցվում են փորձի ու հմտության հետ։ Մասնագետի ամենալավ տարիքը։ Ավարտել է լեռնային տեխնիկումը, աշխատել Դոնբասի ածխահանքերում, Ժելեզնոգորսկի դրենաժային համակարգի շինարարությունում։ Արփա—Սևանում է 1970 թվականից։ Ինչպե՞ս եկավ։ «Լսել էինք թունելի մասին, կնոջս հետ վերցրինք երեխաներին, եկանք»։ Ոչ մի տարօրինակ բան չի տեսնում նրանում, որ մարդը կարող է հանկարծ թողնել տուն ու տեղը, իր ապրած վայրերը և մեկնել՝ սատանան գիտե, թե ուր։

Գործի մասին խոսում է՝ առանձին կարևորություն տալով։ «Թունելը բարդ է, հիմա աշխատում ենք թունելաշինության համաշխարհային պրակտիկայում շատ հազվադեպ պայմաններում։ Տեսեք, թե ինչպիսի՜ ճնշում է՝ 370 տոննա յուրաքանչյուր քառակուսի մետրի վրա։ Խենթանալ կարելի է։ Այստեղ ջրատարը լավ ուսումնասիրված չի եղել և տհաճ անակնկալներ լինում են մեզ մոտ էլ, հարևան տեղամասում էլ...»։

Այո՛, եղել է այս տեղամասում տհաճ անակնկալ։ Գալիս է թունելախորշի պետը թունելախորշ և ասում է. «Այս ի՞նչ է, վագոնիկների ռելսերը բարձր եք դրել»։ «Ո՛չ, ասում են հորատողները, մենք ռելսերն ուղիղ էինք դրել»։ Դա սկիզբն էր։ Ռելսերը բարձրանում էին ապարի ճնշման տակ։ Կավանման զանգվածն սկսեց ուռչել, ճնշել բոլոր կողմերից, թունելախորշի բետոնե ծածկույթն սկսեց ճաքճքել, փշուր-փշուր լինել, ինչպես ձվի կճեպ։ Կավե զանգվածն սկսեց լցնել թունելախորշը։ Աշխատանքները դադարեցվեցին։ Մինչ մարդիկ ելք էին որոնում ստեղծված վիճակից, փորված ամբողջ թունելախորշի կեսից ավելի լցվեց կավե մածուցիկ զանգվածով։

«Պատկերացրեք, թե ինչպիսի՛ վիճակ էր,— հիշում է Պիգարևը,— ապարի զանգվածն առաջ է գալիս, շարժվում, լցնում թունելախորշը, իսկ մենք նրա դեմ անզոր ենք»։ Այո՛, թվում էր, թե անելանելի վիճակ էր այս տեղամասում։ Եվ քիչ խորհելուց հետո Պիգարևն ավելացնում է. «Եվ, գիտե՞ք ինչ, այստեղ, Արփա—Սևանում ես համոզվեցի, որ մարդը բնության ուժերի հանդեպ ամենակարող է»։ Կավե զանգվածը թունելախորշից հանեցին, դրա համար հարկ եղավ տեխնիկական հնարամտությունների դիմել։ Բայց այնտեղ, թունելախորշի վերջում, ահռելի ճնշումը մնում էր, և թվում էր, թե դրա դեմ ոչինչ հնարավոր չէ անել։ Բետոնե ոչ մի շերտ չէր դիմանում, թուջից հատուկ պատրաստված տյուբինգները բարակ թիթեղի նման ծռմռվում էին։ Այն, ինչ ի վիճակի չեղավ անելու մետաղը, կատարեց երկաթբետոնը։ Հատուկ երկաթբետոնից պատրաստված սեգմենտաձև բլոկները դիմացան ահռելի ճնշմանը։ Թունելագործները վերսկսեցին հորատանցումը։ Բայց մինչ այդ՝ որոնումներով, տագնապներով, կասկածներով քանի՜-քանի օրեր, ամիսներ անցան։ Եվ եղան պահեր, երբ շինարարները մտածում էին՝ վերջ, այլևս ելք չկա, սա արդեն փակուղի է։

Այժմ, որպեսզի 9-րդ և 8-րդ թունելախորշերը միանան, և ամբողջ ստորգետնյա ջրատարը դառնա մի ամբողջություն, մնում է հորատել ընդամենը 250 մետր։ Բայց դրանք ամենադժվարին մետրերն են։ Թունելի այս հատվածի հիդրոերկրաբանորեն անբավարար հետազոտված լինելը լրջորեն խանգարում է շինարարներին։ «Այո՛,— հառաչում է Պիգարևը,— հարևան թունելախորշում թունավոր գազերի արտահոսք եղավ։ Վերջին հետազոտությունները պարզել են, որ այնտեղով, ուր մենք հիմա հորատում ենք, հսկայական տեկտոնիկ խզվածք է անցնում, այստեղ ապարների շերտերն իրար են խառնված, ճեղքվածքներ են առաջացել, այստեղ իսկական երկրաբանական շիլա-փլավ է...»։

Միութենական հանձնաժողովները հետաքննել են վթարների պատճառները, մշակել անհրաժեշտ հանձնարարականներ, մոսկովյան հատուկ արշավախումբը մանրամասն հետազոտել է հորատման շրջանի հիդրոերկրաբանական կառուցվածքն ու առանձնահատկությունները։ «Ես երկար ժամանակ լեռնային վարպետ եմ աշխատել այստեղ ու Դոնբասում և կարող եմ ասել, հորատման այն եղանակը, որ մենք այժմ կիրառում ենք, միանգամայն հուսալի է և համարյա բացառում է ամեն մի անակնկալ։ Ճիշտ է, աշխատանքներն այս դեպքում դանդաղ են առաջ գնում, բայց մարդկանց համար անվտանգ է»,— ասում է Պիգարևը։

Իսկապես գեղեցիկ է չորրորդ հատուկ տեղամասի փոքրիկ բանավանը՝ իր սպիտակ շենքերով. շրջապատի սարերը կանաչ են, ծովի մակերևույթից երկու հազար չորս հարյուր մետր բարձրության վրա գիշերները երկինքն իսկապես սև է, և աստղերը հատկապես պայծառ են։ «Կավարտվի Արփա—Սևանը, ոչ մի տեղ չեմ գնա, կմնամ այստեղ, Հայաստանն ինձ դուր է եկել,—բարձրաձայն խորհում է Պիգարևը,— թունելներ կկառուցեմ։ Ձեր լեռնոտ աշխարհում թունելները շատ են պետք»։ «Ուրեմն,— ասում եմ,— Ալեքսեյ Դանիլովիչ, պատահո՞ւմ է, որ մարդ սիրում է մի որևէ վայր և մնում է այնտեղ, էլ ուրիշ ոչ մի տեղ չի գնում»։ «Ինչպես տեսնում եք»,— ժպտում է Պիգարևը։

Երբ ես զրուցում էի Պիգարևի հետ, գրասենյակ մտավ Ռաֆիկ Ղազարյանը՝ 9-րդ թունելախորշի պետը։ Նստեց մի քիչ, լսեց մեզ, դուրս գնաց։ Հետո, դեպի հորանը գնալիս, հանդիպեցի նրան։ «Դե, խոսեցի՞ք Պիգարևի հետ»,— հարցրեց նա։ «Խոսեցի»։ «Ա՛յ թե բծախնդիր մարդ է,— ասաց նա։— Ախր շա՜տ է բծախնդիր»։ Եվ հետո ետ դառնալով ավելացրեց. «Ասենք՝ այստեղ այդպիսին պետք է լինի անվտանգության պետը»։

# ՀԱՎԱՆԱՅԻՑ ԱՌԱՋ ԵՎ ՀԵՏՈ

## (ՉՄԻԱՑԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ VI ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԱՌԹԻՎ)

**Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՉՄԻԱՆԱԼՈՒ ՇԱՐԺՈՒՄԸ երբեք իրեն չի նույնացրել մարդկությանը հուզող միջազգային քաղաքական հրատապ խնդիրների հանդեպ պասսիվ չեզոքության քաղաքականության հետ։ Այն երբեք անտարբեր չի եղել հակաիմպերիալիստական ազգային ազատագրական շարժման, պետությունների միջև արդարացի ու իրավահավասար քաղաքական և տնտեսական հարաբերությունների հաստատման, առավել ևս մարդկության համար ճակատագրական պատերազմի ու խաղաղության հարցերի նկատմամբ։

Չմիանալու շարժումը, որը ծնող այլևայլ գործոնների թվում կարևոր դեր է պատկանում նաև երկրորդ համաշխարհային պատերազմի պատմությունից կորզված ուսանելի դասերին, սկզբից ևեթ որդեգրեց աշխարհի գործերին եռանդուն ու գործուն կերպով մասնակցելու գիծը։ Հանդես գալով ռազմական բլոկների անհրաժեշտության դեմ և կտրականապես մերժելով դրանց հարելու քաղաքականությունը, չմիացած երկրների շարժումը անթույլատրելի է համարում պետությունների հարաբերություններում ուժ կամ ուժի սպառնալիք գործադրելը։ Նա պաշտպանում է մեր ժամանակի միջազգային հրատապ խնդիրների լուծման առաջադիմական, առողջ միտումները, նպաստելով դրանց կայունացմանն ու հզորացմանը։

Չմիացած երկրների Հավանայի կոնֆերանսը, որը տեղի ունեցավ սեպտեմբերի սկզբին և թվով վեցերորդն էր շարժման պատմության մեջ, վերստին հաստատեց այս իրողությունը։

Չմիանալու շարժումն սկիզբ առավ 18 տարի առաջ։ Այդ շարժման առաջին կոնֆերանսը տեղի ունեցավ 1961 թ. սեպտեմբերի սկզբին՝ Բելգրադում։ Նույն թվականի հունիսին Կահիրեում գումարված նախապատրաստական խորհրդաժողովը որոշեց կոնֆերանսի տեղը, օրակարգը և նրան մասնակցելու պայմանները։ Չմիանալու չափանիշները երկուսն էին՝ ռազմական բլոկներին չմասնակցելը և գաղութակալության ու նրա վերապրուկների պահպանմանն ուղղակի կամ անուղղակի ձևով չաջակցելը։ Այսպիսով, հակաիմպերիալիստական կողմնորոշումը ի սկզբանե դարձավ չմիանալու շարժման առավել բնորոշ հատկանիշներից մեկը։

Չմիացած երկրների առաջին կոնֆերանսին մասնակցեցին 25 պետության և կառավարության ղեկավարներ, գլխավորապես Ասիայից և Աֆրիկայից, նաև ֆրանսիական գաղութատիրության դեմ արյունալի ազատագրական պատերազմ մղող Ալժիրի ժամանակավոր հեղափոխական կառավարությունը։ Արևմուտքի իմպերիալիստական շրջանները, հատկապես Վաշինգտոնի և Բոննի կառավարողները, արտակարգ հետաքրքրություն ցուցաբերեցին կոնֆերանսի նկատմամբ։ Արևմուտքում փայփայում էին այն հակասովետական հունով տանելու լուրջ հույսեր։ Սակայն նրանց սպասում էր կատարյալ հուսախաբու-



թյուն։ Չմիացած երկրները Բելգրադում պաշտպանեցին ՄԱԿ-ում ՍՍՀՄ-ի առաջարկությունները՝ ընդհանուր և լրիվ զինաթափման ու գաղութային երկրներին անհապաղ ու անվերապահորեն անկախություն շնորհելու վերաբերյալ։ Նրանք որոշեցին օգնել և աջակցել գաղութային լծի տակ տառապող ժողովուրդներին նրանց ազատագրական պայքարում։ Կոնֆերանսը պահանջեց ուրիշ երկրներից դուրս բերել օտարերկրյա զինված ուժերը և վերացնել օտարերկրյա ռազմական բազաները։ Այն դատապարտեց գաղութատիրությունը տիրապետության նոր, ավելի քողարկված ձևերով փոխարինելու փորձերը։

Այսպիսով, չմիանալու շարժումը իր կազմով, խնդիրներով ու նպատակներով լրջորեն համալրեց հակաիմպերիալիստական պայքարի շարքերը, դառնալով արդի միջազգային զարգացման կարևորագույն գործոններից մեկը։ Հետագայում շարժման կազմը արագորեն ընդլայնվեց։ Չմիացած երկրների 2-րդ կոնֆերանսին, որը տեղի ունեցավ 1964 թ. Կահիրեում, արդեն մասնակցեց 47 պետություն, իսկ 1970 թ. Զամբիայի մայրաքաղաքում՝ Լուսակայում տեղի ունեցած 3-րդ կոնֆերանսին ներկա էին 53 պետությունների ու կառավարությունների ղեկավարներ։ Ալժիրի կոնֆերանսը (1973 թ.) 4-րդն էր և միավորում էր 75 երկիր։ Հինգերորդ կոնֆերանսը գումարվեց 1976 թ. Շրի Լանկայի մայրաքաղաք Կոլոմբոյում՝ 86 մասնակիցներով։ Եվ, վերջապես, Հավանայի կոնֆերանսում ներկայացված էին ավելի քան 100 երկրներ ու ազատագրական կազմակերպություններ։ Ներկայումս չմիանալու շարժումը միավորում է ՄԱԿ-ի անդամ պետությունների երկու երրորդին, որը նշանակում է, թե այդ առավել համապարփակ միջազգային կազմակերպության գործունեության արդյունավետությունը զգալի չափով պայմանավորված է չմիացած երկրների դիրքով։

ԵՐԿՈՒ ՏԱՍՆԱՄՅԱԿԻՑ ԷԼ ՊԱԿԱՍ ժամանակամիջոցում չմիանալու շարժումն ընդլայնվել է չորս անգամ, իսկ նրա հակաիմպերիալիստական էությունն ավելի է շեշտվել և ուժեղացել, հատկապես շարժմանը անդամագրված սոցիալիստական երկրների և ամենից առաջ Կուբայի ու Վիետնամի, ինչպես նաև ոչ կապիտալիստական ուղիով ընթացող երկրների արմատական արտաքին քաղաքականության շնորհիվ։

Ինչպես ասվեց, չմիանալու շարժման սկզբից ևեթ իմպերիալիստական տերությունները դրա նկատմամբ ցուցաբերում են չթուլացող հետաքրքրություն, ջանալով ենթարկել այն իրենց ազդեցությանը և հակադրել սոցիալիստական համագործակցությանը։ Իմպերիալիստական շրջաններն այդ նպատակով պրոպագանդիստական ու դիվանագիտական եռանդուն գործունեություն են ծավալում հատկապես շարժման կոնֆերանսների նախապատրաստման և անցկացման ընթացքում։ Ընդ որում, նրանք ճգնում են օգտագործել չմիանալու շարժման շարքերի տարասեռությունը, փորձելով ապացուցել, որ շարժման անդամ-երկրների սոցիալ-քաղաքական տարբեր, երբեմն հակադիր կողմնորոշումը և այդ պատճառով շարժման սկզբունքների տարբեր, երբեմն իրարամերժ մեկնաբանությունները ու այս կամ այն կոնկրետ դեպքում անխուսափելի տարակարծությունները նրանց միասնությունն ու համագործակցությունը արդի միջազգային հարցերի լուծման խնդրում դարձնում են անհնարին։

Իհարկե, չմիանալու շարժումը համասեռ չէ։ Դրանում մասնակցում են տարբեր հասարակարգերի պատկանող, տնտեսական զարգացման մակարդակով ու վարչակարգի բնույթով միմյանցից տարբերվող երկրներ։ Այստեղ կան պետություններ, որոնց միջև հողային վեճերը երբեմն հասնում են նույնիսկ զինված բախումների։ Առանձին երկրներ հակադրված են միմյանց, ասենք, աշխարհի այս կամ այն մասում գոյություն ունեցող կոնֆլիկտային իրադրությունների պատճառով, ինչպես Եգիպտոսը և մյուս արաբական երկրները՝ Մերձավոր Արևելքի խնդրի, Ալժիրը և Մարոկկոն՝ Արևմտյան Սահարայի հարցի կապակցությամբ։ Եվ, այնուհանդերձ, որքան էլ որ դա իմպերիալիզմին թվա անբնական, կան չմիացած երկրները միավորող զորեղ գործոններ և ընդհանուր նպատակներ։ Ինչպես նշեց Ֆիդել Կաստրոն շարժման VI կոնֆերանսի իր բացման ճառում, չմիացած երկրները համոզված հակաիմպե-

րիալիստներ, հակագաղութակալներ, հականեոգաղութակալներ, հակառասիստներ, հակասիոնիստներ, հակաֆաշիստներ են։ «Այդ սկզբունքները մեր կոնցեպցիաների բաղկացուցիչ մասն են և, ըստ էության, նրա հիմնադրման պահից ներկայացնում են չմիանալու շարժման ակունքներն ու պատմությունը։ Այդ սկզբունքներն անբաժանելիորեն կապված են նաև ժողովուրդների կյանքի և պատմության հետ, որոնց մենք այստեղ ներկայացնում ենք»,— ասաց Ֆ. Կաստրոն։

Չմիանալու շարժման միասնության պատճառները և նպատակների բնույթն ըմբռնելու համար անհրաժեշտ է հիշել, որ այն արդյունք էր ետպատերազմյան ժամանակաշրջանում ազգային ազատագրական շարժման բուռն վերելքի ու գաղութակալության կործանման։ Չմիացած երկրների միավորման համար հիմք են ծառայել նրանց պատմական ճակատագրի, սովերեն գոյության և անկախ զարգացման պայմանների ընդհանրությունը։ Կոնֆերանսում նշվեց, որ թույլ զարգացած երկրները տալիս են աշխարհում արտադրվող արտադրանքի սոսկ 15 տոկոսը և արդյունաբերական արտադրանքի 8 տոկոսը։ Չունենալով էներգիայի բնական պաշարներ, նրանք կքել են 300 միլիարդ դոլարի հասնող վիթխարի արտաքին պարտքի տակ։ Միայն նրանց արտաքին պարտքի տոկոսների վճարը տարեկան հասնում է գրեթե 40 միլիարդ դոլարի, իսկ դա հավասար է զարգացող երկրների արտահանության արժեքի 20 տոկոսին։ Մեկ շնչին ընկնող ազգային եկամուտը թույլ զարգացած երկրներում 14 անգամ պակաս է, քան զարգացած երկրներում, իսկ նրանց միայն չափահաս բնակչության մեջ կան 900 միլիոն անգրագետներ։

Այս ամենը իմպերիալիզմի դարավոր տիրապետության հետևանքն է։ Գաղութակալության խայտառակ սիստեմի կործանումից հետո էլ իմպերիալիստական տերությունները իրենց շահադիտական նեոգաղութակալական քաղաքականությամբ զարգացող երկրների համար ստեղծում են նորանոր բարդություններ և դժվարացնում նրանց առջև կանգնած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծումը։

Մինչդեռ, ինչպես գաղութակալության կործանումը, այնպես էլ ազատագրված երիտասարդ պետությունների համախմբումը չմիանալու շարժման մեջ և այլ հակաիմպերիալիստական կազմակերպություններում անքակտելիորեն կապված է համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման, նրա պատմական հաղթանակների, հօգուտ խաղաղության ու սոցիալիզմի միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության արմատական փոփոխման հետ։ Զարգացող երկրները նույնիսկ միասնաբար անկարող կլինեն իմպերիալիստական տերությունների ոտնձգությունների դեմ մղվող անհավասար պայքարում փոխհատուցել իրենց ռազմաքաղաքական ու տնտեսական թուլությունը, եթե չլինեին սոցիալիստական համագործակցության երկրների և ամենից առաջ Սովետական Միության համակողմանի օգնությունն ու աջակցությունը։ Այդ իսկ պատճառով չմիացած պետությունների ճնշող մեծամասնությունը Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրները համարում են իրենց «բնական դաշնակիցը»։ Ինչպես ճիշտ նկատել է սովետական միջազգայնագետ Ա. Կլիմովը, բլոկներին չմիանալու գաղափարի նպատակն էր գաղութային մետրոպոլիաներին և մյուս իմպերիալիստական տերություններին թույլ չտալ ազատագրված պետությունները ներքաշել իրենց բլոկների մեջ և մասնակից դարձնել Սովետական Միության դեմ սկսված «սառը պատերազմին»։ Չմիանալու շարժման և սոցիալիստական համագործակցության երկրների միջև մերձեցումը բնականոն երևույթ է և ամրապնդված է հայացքների նույնությամբ այնպիսի հանգուցային խնդիրներում, ինչպիսիք են պայքարը զինաթափման, պատերազմի պոտենցիալ օջախների վերացման համար, ընդդեմ գաղութակալության, նեոգաղութակալության, ռասիզմի ու ապարտեիդի, հանուն միջազգային տնտեսական հարաբերություններում իրավահավասարության ու արդարացիության սկզբունքների հաղթանակի։

Չմիանալու շարժման միասնությունը բազմիցս ենթարկվել է լուրջ փորձության՝ կապված միջազգային քաղաքական բարդ իրադարձությունների,



շարժման մասնակից երկրների միջև ժամանակ առ ժամանակ ծագող վեճերի ու բախումների հետ։ 1976 թ. Կոլոմբոյի կոնֆերանսից հետո շարժման համար կարևոր փորձություն եղան պատերազմը Սոմալիի և Եթովպիայի միջև, ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս պետությունների այսպես կոչված «նոր քաղաքականությունը» Աֆրիկայի հարավում, իսրայելա-եգիպտական սեպարատ գործարքը Մերձավոր Արևելքի հարցում, Վիետնամի Սոցիալիստական Հանրապետության դեմ Չինաստանի ձեռնարկած ագրեսիան, Կամպուչիի հարցը, այսպես կոչված «հնդկաչինյան փախստականների» հարցը և այլն։ Կարևոր փորձություն է նաև այն, որ նավթ արտահանող զարգացող երկրները պարբերաբար բարձրացնում են նավթի գինը, որպեսզի փոխհատուցեն Արևմուտքում մոլեգնող ինֆլյացիայի հետևանքով իրենց տրամադրության տակ եղած վալյուտային պաշարների և նավթի արտածումից ստացվող ընթացիկ եկամուտների արժեզրկումից կրած կորուստները։ Բնականաբար, այս հանգամանքը բացասաբար է անդրադառնում չմիանալու շարժման այն անդամ-երկրների բյուջեի վրա, որոնք նավթ են ներմուծում։

Իմպերիալիստական տերությունները և մաոյական Չինաստանը ոչնչի առջև կանգ չեն առնում, որպեսզի օգտագործեն շարժման ներսում ծագող վեճերն ու հակասությունները՝ այն պառակտելու ու քայքայելու նպատակով։

ԴԵՌԵՎՍ ՀԱՎԱՆԱՅԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻՑ շատ առաջ Վաշինգտոնը և Պեկինը պրոպագանդիստական կատաղի կամպանիա ծավալեցին Կուբայի, Վիետնամի, Աֆղանստանի, Եթովպիայի ու Անգոլայի դեմ։ Կուբայական ստորաբաժանումների օգնությունը Անգոլային ու Եթովպիային որակելով որպես միջամտություն Աֆրիկայի երկրների ներքին գործերին, ամերիկյան և չինական պրոպագանդան պնդում էր, որ իբր Կուբան խախտել է չմիանալու սկզբունքները և պետք է վտարվի շարժման շարքերից։ Ամենևին պատահական չէ, որ հենց կոնֆերանսի օրերին ԱՄՆ-ում հերյուրեցին Կուբայում սովետական զորամաս գտնվելու առասպելը, որից անմիջապես կառչեց Սպիտակ տունը, փորձելով դարձնել այն դիվանագիտական առուծախի առարկա։ Վաշինգտոնի սարքած այդ աղմկարարության նպատակն էր սպանել Կուբայի նկատմամբ չմիացած երկրների վստահությունը։ Անգլիական «Ֆայնենշըլ թայմսը» գրում էր, որ Հավանայի կոնֆերանսի մասնակիցների աչքում Կուբան վարկաբեկելու ԱՄՆ-ի փորձերը ձախողվեցին։ «Կուբայական ներկայացուցիչները,— գրում էր թերթը,— օգտագործեցին սենատոր Ֆ. Չերչի և պետական քարտուղար Ս. Վենսի պնդումները, որպեսզի ուշադրություն հրավիրեն Կուբայում՝ Գուանտանամոյում ամերիկյան շարունակվող ռազմական ներկայության վրա և մատնացույց անեն, որ Կենտրոնական Ամերիկայում գտնվում են մոտ 14 հազար ամերիկյան զինվորներ»։

Ամերիկյան և չինական պրոպագանդան չմիացած երկրներին հորդորում է շարժման շարքերից վտարել նաև Վիետնամին, Եթովպիային, Աֆղանստանին, Անգոլային ու Մոզամբիկին այն պատճառաբանությամբ, որ իբր նրանք, ինչպես և Կուբան, ՍՍՀՄ-ի հետ բարեկամության ու համագործակցության պայմանագրեր ստորագրելով, դադարել են չմիացած պետություններ լինել։

Չմիանալու շարժման առավել հեղափոխական, արմատական հոսանքի դեմ ուղղված այս թշնամական ելույթների իմաստը ավելի քան պարզ է։ Սկզբում իմպերիալիստները և Պեկինը ամեն ինչ արեցին ձախողելու համար VI կոնֆերանսի հրավիրումը Կուբայում՝ լատինաամերիկյան սոցիալիստական երկրում։ Իմպերիալիստները քաջ գիտակցում էին, որ դա կբարձրացնի Կուբայի և նրա քաղաքականության հեղինակությունը աշխարհում և, մասնավորապես, «երրորդ աշխարհում»։

Սոցիալիստական Կուբայի հեղինակության աճը «երրորդ աշխարհում» պայմանավորված է հակաիմպերիալիստական պայքարում Ազատության կղզու աննկուն հերոսական դիրքով։ Կուբան ավելի քան 20 տարի է, ինչ հաստատակամորեն դիմագրավում է իր նկատմամբ իմպերիալիզմի խոշորագույն երկրի՝ ԱՄՆ-ի կիրառած ագրեսիայի ու բլոկադայի քաղաքականությանը։ Այդ

հեղինակությունը պայմանավորված է զարգացող երկրներին Կուբայի անձնվեր և անկաշառ օգնությամբ: «Կուբայի ազնիվ և անձնվեր զավակները,— ընդգծեց Ֆ. Կաստրոն Հավանայի կոնֆերանսում,— զոհվել են իրենց հայրենիքից հազարավոր կիլոմետրեր հեռու, հարավաֆրիկյան ռասիստների դեմ և մարդկային արժանապատվության, եղբայրական երկրների ամբողջականության ու անկախության նկատմամբ իմպերիալիզմի այլ ոտնձգությունների դեմ մարտնչելիս: Կուբայի մասնագետները ներկայումս աշխատում են չմիանալու շարժման անդամ 28 երկրում: Այդ համագործակցությունը, մեծ մասամբ, հաշվի առնելով այդ երկրների տնտեսական խնդիրները, իրականացվում է անվարձահատույց»: Միայն տարբեր երկրներում աշխատող կուբացի բուժաշխատողների թիվը երկու անգամ ավելի է այն բուժաշխատողների թվից, որոնք զբաղված են արտասահմանում՝ Առողջապահության համաշխարհային կազմակերպության գծով: «Կուբայի զավակները,— վկայեց Ֆ. Կաստրոն,— դարձել են անաղարտության, անշահախնդրության, համերաշխության ու ինտերնացիոնալիզմի ոգու մարմնացումը, այսինքն բոլոր այն հատկանիշների, որ հեղափոխությունը կոփել է մեր ժողովրդի մեջ»:

ԱՄՆ-ի կառավարողներին սարսափեցնում է նաև այն հեռանկարը, որ կոնֆերանսի հրավիրումը Հավանայում, այն էլ հեղափոխական Կուբայի ամենաեռանդուն մասնակցությամբ և Նիկարագուայում հեղափոխության հաղթանակից հետո, նորանոր լատինաամերիկյան երկրների կդրդի անդամագրվել չմիանալու շարժմանը և այդ ճանապարհով ներքաշվել հակաիմպերիալիստական ակտիվ պայքարի մեջ:

Վաշինգտոնին և Պեկինին լրջորեն մտահոգում էին և այլ հարցեր: Բանն այն է, որ կոնֆերանսի եզրափակիչ փաստաթղթի նախագիծը կազմում է այն երկիրը, որի մայրաքաղաքում հրավիրվում է կոնֆերանսը, և ԱՄՆ-ի կառավարողների ու չինական ղեկավարության համար ցանկալի չէր, անշուշտ, որ նրանում արտացոլվեին Կուբայի տեսակետները: Իմպերիալիստները շարժմանը մասնակցող «պահպանողական» երկրներին հրահրում էին լրջորեն փոփոխել շարժման ղեկավարման կարգը: Հայտնի է, որ ըստ ընդունված կարգի կոնֆերանսը կազմակերպող պետության ղեկավարը կատարում է շարժման նախագահի պարտականությունները հաջորդ երեք տարվա ընթացքում, այսինքն մինչև նոր կոնֆերանսի հրավիրումը: Ուստի Հավանայի կոնֆերանսով այդ պարտականություններն անցնում են Կուբային, որի ներկայացուցիչները նախագահելու են նաև շարժման բոլոր մարմիններում: Իսկ դա ծայրաստիճան անցանկալի է Վաշինգտոնի և Պեկինի համար, որոնք շարժման մասնակիցներին խորհուրդ էին տալիս «դեմոկրատացնել» ղեկավարման կարգը, ընտրելով երեք փոխնախագահի և ընդլայնել կոորդինացնող բյուրոն, որը մինչև VI կոնֆերանսը բաղկացած էր 25 հոգուց:

Իմպերիալիստները և մաոյական ղեկավարությունը հույս ունեին օգտագործել Կամպուչիի խնդիրը, որպեսզի VI կոնֆերանսը վերածեն Վիետնամի դեմ ուղղված դատական ատյանի: Մարդու իրավունքների երդվյալ պաշտպանի հավակնություն ունեցող Միացյալ Նահանգների կառավարությունը և Պեկինի պարագլուխները բոլոր ուղղակի ու անուղղակի ճանապարհներով փորձեցին հասնել այն բանին, որ երեք միլիոն կամպուչիացիներ կոտորած և ժողովրդից մերժված ու տապալված Պոլ Պոտի-Իենգ Սարիի արյունարբու վարչակարգը ներկայացնի այդ երկիրը Հավանայում: Թեև Կամպուչիի ներկայացուցչության հարցը մնաց բաց և լուծվելու է ավելի ուշ, մինչև հաջորդ կոնֆերանսը, իմպերիալիստներին ու Պեկինին, այնուամենայնիվ, չհաջողվեց պոլպոտյան դահիճների համար ապահովել պատվավոր բազկաթոռ Հավանայի կոնֆերանսում:

Կոնֆերանսում կործանիչ հակահարված ստացան նաև չմիանալու շարժումը Սովետական Միությանը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրներին հակադրելու փորձերը: Ֆ. Կաստրոն կեղծոտ և անամոթ զրպարտություն անվանեց ամերիկյան բուրժուական պրոպագանդայի այն պնդումները, թե իբր Կուբան ձգտում է չմիանալու շարժումը դարձնել սովետական քաղաքականության գործիք: Կոնֆերանսի մասնակիցների մեծամաս-



նությունը մերժեց ԱՄՆ-ից և ՍՍՀՄ-ից չմիանալու շարժման «հավասար հեռացվածության» և «գերտերությունների դեմ պայքարելու» մաոյական տեսակետները, ընդգծելով, որ սոցիալիստական երկրները չմիացած պետությունների «բնական դաշնակիցն» են և չեն կարող իմպերիալիստական տերությունների հետ դրվել նույն մակարդակի վրա:

Չինաստանը գերտերություն դարձնելու հովերով տարված պեկինյան պարագլուխները ձգտում են անդունդ փորել չմիանալու շարժման ու սոցիալիստական համագործակցության երկրների միջև, այդ շարժումը ենթարկել իրենց և օգտագործել իրենց հեգեմոնիստական նկրտումները իրականացնելու համար: Անցյալում Չինաստանը շարժման մեջ մուտք գործելու փորձեր չէր անում: Եվ թեև խոսքով պաշտպանում էր այն, գործով աշխատում էր ստեղծել զարգացող երկրների նոր խմբավորում՝ իր գերիշխող ազդեցության ներքո: Եվ քանի որ այդ գործելակերպը հաջողություն չունեցավ, Պեկինը փոխեց իր վերաբերմունքը, ջանալով խեղաթյուրել շարժման բնույթը: Ձգտելով իր ազդեցությունը տարածել չմիանալու շարժման վրա, մաոյականները ցանկանում են զրկել այն իր հակաիմպերիալիստական բովանդակությունից և դրան հաղորդել շեշտված հակասովետական բնույթ:

Ավելին, կան վկայություններ, որ Չինաստանը մտադիր չէ սահմանափակվել իր ազդեցությունը շարժման վրա տարածելով ու փնտրում է նրա մեջ ներթափանցելու ուղիներ: Մասնավորապես Պեկինի հոնկոնգյան խոսափող «Դագուն բաո» թերթը նշում է, թե որոշելով չերկարաձգել Սովետական Միության հետ բարեկամության, դաշինքի և փոխօգնության պայմանագիրը, որի ժամկետը լրանում է 1980 թ., Չինաստանը հույս ունի վաստակել չմիացած երկրի համբավ և անդամագրվել չմիանալու շարժմանը:

Սակայն Պեկինի արտաքին քաղաքական կուրսը, հեգեմոնիզմը, հողային պահանջները հարևան պետություններից, կատաղի ընդդիմությունը զինաթափմանը, ՆԱՏՕ-ի ռազմական բլոկն ընդլայնելու ու հզորացնելու հորդորները, ՄԱԿ-ում և նրանից դուրս մերձեցումը իմպերիալիստական տերությունների հետ՝ ընդդեմ ՍՍՀՄ-ի և զարգացող երկրների, մասնակցությունը Անգոլայի դեմ ձեռնարկված իմպերիալիստական ագրեսիային, զինված ներխուժումը Վիետնամ, Հնդկական օվկիանոսում և Ասիայում ամերիկյան ռազմական ներկայությունը պահպանելու պահանջները, Վիետնամին «նոր դաս տալու», նաև Լաոս ներխուժելու սպառնալիքը, քաղաքականությունը Կամպուչիայում՝ իր ողբերգական հետևանքներով, խորապես հակասում են չմիանալու շարժման սկզբունքներին ու նպատակներին և բացառում Չինաստանի մասնակցությունն այդ շարժմանը:

ՀԱՎԱՆԱՅԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ կատարելապես հուսախաբ արին բոլոր նրանց, ովքեր կարծում էին, թե հնարավոր կլինի պառակտել չմիանալու շաժումը և շեղել այն հակաիմպերիալիստական պայքարի ուղուց: «Նյու Յորք թայմսը» ստիպված էր խոստովանել, որ, դատելով արդյունքներից, կոնֆերանսն այնքան էլ վատ չվերջացավ, իսկ արևմտագերմանական «Ֆրանկֆուրտեր ալգեմայնե» թերթը, ակնարկելով բարեկամական վերաբերմունքը սոցիալիստական երկրների նկատմամբ, դառնությամբ արձանագրեց, որ չմիացած երկրները դարձան «էլ ավելի միացած»:

Երկարատև ընդհանուր բանավեճից հետո, որ տեղի ունեցան պլենար նիստերում 88 պատվիրակների մասնակցությամբ (որոնցից 55-ը պետությունների ու կառավարությունների ղեկավարներ) և քաղաքական ու տնտեսական հանձնաժողովների փութաջան աշխատանքի շնորհիվ հնարավոր եղավ ընդունել կարևոր փաստաթղթեր:

Եզրափակիչ փաստաթղթի մաս կազմող քաղաքական դեկլարացիայում գոհունակությամբ նշվում են միջազգային լարվածության մեղմացման ուղղությամբ տեղի ունեցած դրական տեղաշարժերը և շեշտվում, որ խաղաղ գոյակցության սկզբունքները պետք է դառնան միջազգային հարաբերությունների անկյունաքարը: Կոնֆերանսը ողջունեց Հելսինկիի եզրափակիչ ակտի հիման վրա Եվրոպայում միջպետական հարաբերությունների և համագործակ-

ցության ամրապնդման ու ընդլայնման նպատակով գործադրվող ջանքերը, եվրոպական երկրներին կոչ անելով վիճակը մայրցամաքում դարձնել առավել կայուն:

Միաժամանակ փաստաթուղթը ընդգծեց լիցքաթափման պրոցեսը աշխարհի այլ շրջանների վրա տարածելու անհրաժեշտությունը, որն իր հերթին կնպաստի զինաթափմանը, լարվածության օջախների վերացմանը, բախումները կանխելուն: Քաղաքական դեկլարացիան ողջունեց ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ երկրորդ պայմանագրի ստորագրումը և հույս հայտնեց, որ երկու մեծ տերությունները նոր համաձայնությունների կհանգեն զինաթափման և ամենից առաջ միջուկային զինաթափման գործում:

Հավանայի կոնֆերանսի եզրափակիչ փաստաթուղթը դատապարտում է ռասիզմը, նրա տարատեսակները՝ սիոնիզմը, ապարտեիդը, գաղութակալությունն ու նեոգաղութակալությունը, ԱՄՆ-ի, Անգլիայի և արևմտյան մյուս տերությունների մանևրները Աֆրիկայի հարավում, որոնց նպատակն է Զիմբաբվեի, Նամիբիայի և Հարավ-Աֆրիկյան Հանրապետության սևամորթ բնակչությանը խանգարել իրականացնելու ինքնորոշման ու անկախության իր օրինական իրավունքը: Իմպերիալիստական տերությունները փաստաթղթում որակվում են որպես ռասիզմի ու ապարտեիդի սիստեմի, նաև Անգոլայի, Մոզամբիկի, Բոտսվանայի, Զամբիայի և Աֆրիկայի այլ պետությունների դեմ ագրեսիվ գործողությունների մեղսակից: Կոնֆերանսի մասնակիցները անօրինական անվանեցին Մուզորևայի խամաճիկ կառավարությունը Ռոդեզիայում:

Կոնֆերանսում և նրա եզրափակիչ փաստաթղթում առանձնահատուկ տեղ հատկացվեց Մերձավոր Արևելքի խնդրին: Ճիշտ է, Եգիպտոսի մասնակցությունը չմիանալու շարժմանը դադարեցնելու վերաբերյալ մի խումբ արաբական երկրների պահանջը վերջնական լուծում չգտավ և որոշվեց կոորդինացնող բյուրոյի կազմում ստեղծել հատուկ կոմիտե, որը կուսումնասիրի հարցը և իր հանձնարարականները կներկայացնի 1981 թ. Դելիում հրավիրվելիք արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությանը: Այնուհանդերձ, կոնֆերանսը վճռաբար դատապարտեց Քեմփ-Դեվիդի համաձայնությունները և իսրայելա-եգիպտական անջատ պայմանագիրը՝ որպես արաբական ժողովրդի և հատկապես Պաղեստինի արաբ ժողովրդի կենսական շահերի դեմ ուղղված գործարք: Փաստաթղթում Պաղեստինի ազատագրության կազմակերպությունը ճանաչված է պաղեստինյան ժողովրդի միակ օրինական ներկայացուցիչ: Իսրայելի քաղաքականությունը բռնագրավված հողերում գնահատվում է որպես ագրեսիվ, էքսպանսիոնիստական, խտրական և պաշտպանվում է պաղեստինցիների՝ իրենց ազգային պետությունը ստեղծելու իրավունքը:

Հարավարևելյան Ասիայի դրության վերաբերյալ կոնֆերանսն արտահայտեց այն կարծիքը, որը խաղաղությունն ու կայունությունն աշխարհի այս մասում կհաստատվի միայն միմյանց պետական ինքնությունը, անկախությունը, տերիտորիալ ամբողջականությունը հարգելու և ներքին գործերին չմիջամտելու հիման վրա:

Փաստաթուղթը վերստին հաստատեց այն իրողությունը, որ Հավանայում կոնֆերանսի հրավիրումը վկայում է Լատինական Ամերիկայի աճող դերը չմիանալու շարժման մեջ: ԱՄՆ-ից պահանջվում է վերացնել ռազմական բազաները Կուբայում և Պուերտո-Ռիկոյում և պուերտոռիկական ժողովրդին հնարավորություն տալ իրականացնելու իր ինքնորոշման իրավունքը: Կոնֆերանսը ողջունեց նաև Սոմոսայի բռնակալական վարչակարգի տապալումը Նիկարագուայում և իր համերաշխությունը հայտնեց Չիլիի դեմոկրատական ուժերին՝ Պինոչետի ֆաշիստական բռնատիրության դեմ նրա մղած պայքարում:

Տնտեսական դեկլարացիայում ասված է, որ երիտասարդ պետությունների տնտեսական զարգացման համար գլխավոր խոչընդոտը իմպերիալիզմն է, որ ներկայումս գոյություն ունեցող տնտեսական փոխհարաբերությունների սիստեմը չի նպաստում այդ պետություններում աղքատության, սովի, հիվանդությունների, անգրագիտության և սոցիալական այլ արատների վերացմանը: Հավանայի կոնֆերանսը հանդես եկավ միջազգային տնտեսական նոր, արդարացի հարաբերություններ հաստատելու օգտին:

Կոնֆերանսը որոշեց շարժման կոորդինացնող բյուրոյի կազմը ընտրել 36 հոգուց: Շարժման նախագահ ընտրվեց Կուբայի ներկայացուցիչը: Հաջորդ՝ 7-րդ կոնֆերանսը որոշվեց հրավիրել 1982 թ. Բաղդադում:

Չմիանալու շարժման նոր անդամներ դարձան Նիկարագուան, Բոլիվիան, Զիմբաբվեի հայրենասիրական ճակատը, Գրենադան, Իրանը, Պակիստանը, Սուրինամը:

ՀԱՎԱՆԱՅԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐՆ է՛լ ավելի են ընդգծում չմիացած երկրների շարժման հակաիմպերիալիստական բնույթը: Դրանք ցույց են տալիս, որ շարժումն իր գլխավոր ուղուց շեղելու բոլոր փորձերն ապարդյուն անցան: Հավանայից հետո շարժումը դարձավ է՛լ ավելի համախմբված ու հասուն, է՛լ ավելի ընդունակ դիմագրավելու իմպերիալիզմի և չինական հեգեմոնիզմի ճնշմանը, ճիշտ կողմնորոշվելու բարդ ու հակասական իրադրություններում: Ինչպես հայտարարեց Ֆ. Կաստրոն իր եզրափակման ճառում, չմիանալու շարժումը, ինչպես երբեք, միասնական է, ուժեղ, անկախ և համապատասխան մասնակիցների շահերին: Կոնֆերանսն աներկբայելիորեն հայտարարեց, որ ազգային ու սոցիալական առաջընթացի թշնամիներն են իմպերիալիզմը, ռասիզմը, պատերազմի ու հետադիմության ուժերը, գաղութակալությունն ու նեոգաղութակալությունը:

Կոնֆերանսը մեծապես նպաստեց չմիացած երկրների և սոցիալիստական համագործակցության միջև կապերի է՛լ ավելի սերտացմանը, ընդգծեց միջազգային քաղաքական կարևորագույն հարցերում նրանց մոտեցման նույնությունը:

Հավանայի կոնֆերանսը վերստին հաստատեց այն ճշմարտությունը, որ սոցիալիստական երկրները եղել և մնում են երիտասարդ զարգացող պետությունների հավատարիմ դաշնակիցը պատերազմի սպառնալիքի, գաղութակալության, նեոգաղութակալության, ռասիզմի, ապարտեիդի, իմպերիալիստական ճնշման ու շահագործման դեմ մղվող պատմական պայքարում:

## Նշանավոր տարեթվեր

# ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԸ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԸ

### (ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ս. Կ. ԴԱՐՈՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*«...Խոսքը նույնպես գործ է. այս դրույթն անվիճելի է կիրառելու համար պատմության նկատմամբ ընդհանրապես, կամ պատմության այն դարաշրջանների նկատմամբ, երբ չկա մասսաների քաղաքական բացահայտ ելույթ»:*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*



**ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ** կյանքն ու գործունեությունն (1829—1866) ընթացել են այն դարաշրջանում, երբ հայ հասարակության մեջ «մասսաների քաղաքական բացահայտ ելույթներ» չկային և հրապարակախոսի խոսքն ինքը գործ էր: Այն հատուկ նշանակություն ստացավ 50-ական թվականների վերջին և 60-ականի սկզբին, Ռուսաստանում հեղափոխական իրադրության պայմաններում, Նալբանդյանի հասարակական քաղաքական գործունեության և հրապարակախոսության առավել ակտիվ շրջանում, որը և որոշեց հարազատ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրման գաղափարներով տոգորված նրա բոցավառ, մարտական խոսքի հեղափոխական-դեմոկրատական պաթոսը: Ուստի և պատահական չէ, որ Ստ. Շահումյանն ու Ալ. Մյասնիկյանը Նալբանդյանին ամենից առաջ գնահատել են որպես կրքոտ հրապարակախոս, որը քաղաքականապես չզարգացած հայ հասարակության պայմաններում ձգտում էր արթնացնել ժողովրդական մասսաների ինքնագիտակցությունը, տարածել ժամանակի առաջադիմական գաղափարները:

Մ. Նալբանդյանը պատկանում էր հրապարակախոսների այն սերնդին, որին բնութագրել է Ն. Գ. Չերնիշևսկին իր Պ-րն Չիչերինը որպես հրապարակախոս (1859) նշանավոր հոդվածում: Հրապարակախոսի գլխավոր հատկանիշը հարցի շուրջ բանավիճելով ռուսական լիբերալիզմի լիդերներից մեկի հետ՝ Չերնիշևսկին ասել է, որ հրապարակախոսն «արտահայտում ու պաշտպանում է այն պահանջմունքները, որոնք զբաղեցնում են հասարակությանը տվյալ պահին»: Նա «հռետոր է կամ փաստաբան», նրա կրծքի տակ պետք է տրոփի «կենդանի սիրտը», որը պիտի արձագանքի իր դարաշրջանի հրատապ պրոբլեմներին:

Իր առաջին իսկ հոդվածներից մեկում՝ Նկատողությունք, տպագրված «Հյուսիսափայլ» ամսագրում (1858), Նալբանդյանն ի լուր ամենքի հայտարարեց, որ ինքը մասնակից է հրապարակախոսության այն ուղղության, որն առնչվում է «մեր ազգի ներկա հարկավորությունների և օգուտների հետ»: Այնուհետև Չերնիշևսկու նման նա ամսագրի առջև խնդիր դրեց՝ լինել դարի հասարակական առաջավոր գաղափարների արտահայտիչը:

«Հյուսիսափայլը»,— գրում էր Նալբանդյանը,— արդեն քարձրացուցել է, և դեռ ևս պիտի բարձրացնե խնդիրներ..., որոնց խորհուրդը մեծ էր մեր ազգի հառաջադիմության համար: Առանց այսպիսի խնդիրների մոտենալու օրագիրը կյանք չունի, այս կենդանի և շարժուն խնդիրները հոգի են մի օրագիր ասացյալ մատենագրական գործունեության... Ներկա ժամանակումս, մանավանդ այս դարու վերջին կեսի հատկական բնավորությունն է բարձրացնել այդպիսի խնդիրներ մարդկեղեն աշխարհի սահմանում, և վճռելով նորանց, բարվոքել մարդկության դրությունը աշխարհի երեսին...»:

Հայ հրապարակախոսի, համոզված դեմոկրատի այս կրքոտ խոսքը վկայությունն է այն բանի, որ նա պայքարել է հանուն հրապարակախոսության գործնական ուղղության՝ որպես հասարակության կենսական պահանջների հետ սերտորեն կապված ընդհանուր գրական գործի մի մաս: Ուստի և զարմանալի չէ, որ Նալբանդյանը «Հյուսիսափայլի» ոգին էր, իսկ նրա համարձակ, սրի պես հատու հրապարակախոսական հոդվածները, ֆելիետոնները, ակնարկներն ու պամֆլետները առանձին երանգ էին հաղորդում այդ ամսագրին: Ճիշտ այնպես, ինչպես 40-ական թվականներին ռուսական առաջավոր երիտասարդությունն անհամբեր սպասում էր Բելինսկու, իսկ 50—60-ական թվականներին՝ Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և Պիսարևի հոդվածներին, այդպես էլ անցյալ դարի կեսերի հայ երիտասարդությունը հուզմունքով էր թերթում «Հյուսիսափայլի» համարները, ուր «Կոմս Էմմանուել» ծածկանվամբ, Նալբանդյանը շարունակաբար տպագրում էր նշանավոր Հիշատակարանը (1858—1860), որը կարելի էր անվանել «Ժամանակակից տարեգրություն»:

Հիշատակարանում Նալբանդյանը մեծ վարպետությամբ ու սրամտորեն օգտագործել է քաղաքական սուր ու հրատապ նյութի մատուցման ձևերը, որի շնորհիվ և Հիշատակարանը թողնում է հրապարակախոսական ամբողջական երկի տպավորություն: Հիշատակարանի այդ ժանրն էլ հենց տիպական էր այն ժամանակվա հայկական հրապարակախոսությանը: Բնույթով լինելով սինթետիկ, այն համադրում էր իր մեջ գրականության գրեթե բոլոր հայտնի «փոքր ձևերը»: Նալբանդյանի Հիշատակարանը պամֆլետային ոճի և քաղաքական երգիծանքի իր առաջնակարգ դերով XIX դարի հայկական ժուռնալիստիկայի պատմության ամենափայլուն էջն է, որի որոշ տարրեր իրենց զարգացումն էին գտել Ստ. Շահումյանի և այլ ականավոր հայ մարքսիստ հրապարակախոսների ստեղծագործություններում:

Սակայն ցարական Ռուսաստանի պայմաններում դեմոկրատ հրապարակախոսների համար այնքան էլ հեշտ չէր ամեն ինչի մասին բացահայտ խոսելը: Մշտապես զգալով դաժան գրաքննության ճնշումը, նրանք հաճախ իրենց մտքերն արտահայտում էին «եզոպոսյան լեզվով», այլաբանությամբ ու ակնարկներով: Նալբանդյանն իբրև հրապարակախոս գործում էր նույնպիսի ծանր պայմաններում, ինչպես իր ռուս գրչակիցները: Նրան ևս վիճակված էր հաղթահարել գրաքննության արգելքները: Հայ իրականության երևույթները նա երբեմն փոխադրում էր արտասահման:

Ռուսական դեմոկրատական ժուռնալիստիկայում ևս այն ժամանակ լայնորեն տարածված քողարկման այս ձևը (մանավորապես «Современник»-ում, «Русское слово»-ում) ընթերցողին ակամա մղում էր համեմատելու այդ ամենը այն ժամանակ երկրում տիրող կարգերի հետ, դրանով իսկ առավելագույնս մերկացնելով այդ կարգերը: Այդ առումով հետաքրքրական է Կոմս Էմմանուելի օրագրական թերթերի «Հյուսիս» գլուխը, որը ներառված է 1859 թվականի Հիշատակարանում: Նկարագրելով հյուսիսային մի գյուղում տեղավորված «ձանձրալի» կյանքը՝ Նալբանդյանն այլաբանորեն խոսում է Հյուսիսի մասին, որպես «մի տխուր աշխարհի», «մի ցուրտ ու անհրապույր աշխարհի», որը ողողում է «խստաշունչ» ծովը, կաշկանդված «սառցապատ բանտերի մեջ»: Այստեղ «բնակվում է ցրտաշունչ և դաժան Բորեասը, որ խլում է աղքատ շինականների տան ծածկը»: Եթե Հյուսիսում կարճատև ամառը «բուսուցանում է մի պարզ ծաղիկ, մյուս օրը ահա Բորեասը յուր մահաշունչ բևեռային սառնությամբ կտրում է այդ ողորմելի բուսականի կյանքը»: Կարդալով «Հյուսիսի» այդ «աշխարհագրական» նկարագրությունը, տեղեկանալով նրա «կլիմայի» առանձնահատկություններին, ընթերցողը կռահում է, որ այստեղ խոսքը ցարական ինքնակալության՝ այդ «մահաշունչ և ցրտաշունչ Բորեասի» մասին է: Մի այլ տեղում Նալբանդյանն ասես ի միջի այլոց գրում է, որ, ըստ ժողովրդական ավանդության, «Մասյաց ոտքումը կա մի փոս, դժոխք անվանված հնումը», և որ այդ փոսը «շատ անգամ ընկնում են մարդիկ»: Հիշատակարանի հեղինակը տվյալ դեպքում ակնարկում էր սուլթանական Թուրքիայում տիրող դժոխային կարգերը:

Մ. Նալբանդյանն առաջինը հայ գրականություն մուծեց ֆելիետոնի ժանրը: Իր ֆելիե-

դափար,—գրել է Նալբանդյանը...—Այդ աշխատության մեջ մարմին է առել ազգի հոգին, ազգի ներկա վիճակը, ազգի հասկացողությունը»: Քննադատ-հրապարակախոսը շեշտել է Աբովյանի վեպի ջերմ հայրենասիրությունն ու մարդասիրական պաթոսը, պայքարի կոչը մարդու ամեն տեսակ ճնշման դեմ, ձգտելով արձագանք գտնել ժամանակակից երիտասարդության շրջանում: Այսպիսով Մեռելահարցուկի հեղինակի հրապարակախոսային շեղումը Վերք Հայաստանի պատմավեպի սոսկ ծանոթագրությունը չէր: Թեև այնտեղ նկարագրված իրադարձությունները վերաբերում են XIX դարի առաջին քառորդին, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու ժամանակաշրջանին, Աբովյանի գիրքը սաստիկ հուզեց Նալբանդյանին իր հայրենասիրությամբ, ազատասիրությամբ, ժողովրդի կյանքի ճշմարտացի արտացոլմամբ և հայրենիքի ճակատագրի համար ունեցած տագնապով: Վերք Հայաստանի պատմավեպը քննադատ-հրապարակախոսի կողմից ընդունվեց որպես խիստ այժմեական:

Հայ գրականության մեջ Միքայել Նալբանդյանը հանդիսացավ գեղարվեստական հրապարակախոսության հիմնադիրը: Նալբանդյան-հրապարակախոսի ինքնատիպությունը հրապարակախոսությունը գեղարվեստականի հետ զուգակցելն է: Հրապարակախոսությունը, բառիս բուն իմաստով, օրգանապես ձուլված է նրա արձակին (Մինին՝ խոսք, մյուսին՝ հարսն, Մեռելահարցուկ): Կրքոտ հրապարակախոսությամբ է տոգորված նրա քաղաքացիական պոեզիան (Ազատություն, Մանկության օրեր, Ապոռնին): Գեղարվեստական պատկերավորությունը բնորոշ է նրա Հիշատակարանին, գրական քննադատական հոդվածներին, քաղաքական-հասարակական թեմաներով մյուս հոդվածներին և, նույնիսկ՝ նամակներին:

Նալբանդյանի ստեղծագործության մեջ հեղափոխական-դեմոկրատական հրապարակախոսության վառ նմուշներ են Փարիզում հրատարակված նրա Երկու տող (1861) և Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ (1862) աշխատությունները: Առաջինում շարադրված է պայքարի այն ծրագիրը, որը և դարձավ հայ հեղափոխական դեմոկրատների ծրագիրը.

«Մենք ազատակամ նվիրեցինք մեզ հասարակ ժողովրդի իրավունքը պաշտպանելուն: Մեր անձը և գրիչը չնվիրեցինք հարուստներին, նոքա յուրյանց արծաթի թումբերի տակ միշտ անխոցելի են, նաև բռնակալների իշխանության մեջ:

Բայց այն խեղճ հայը, այն հարստահարված, ողորմելի, աղքատ, մերկ և քաղցած հայը, ո՛չ միայն ճնշված օտարներից և բարբարոսներից, այլև յուր հարուստներից, յուր հոգևորներից և կիսագրագետ, ուսումնական կամ փիլիսոփա ասվածներից, ահա այն հայը ամենայն արդարացի իրավունքով գրավում է մեր ուշադրությունը և նորան դարձյալ, առանց և վայրկենական երկմտության, նվիրեցինք մեր բոլոր կարողությունը:

Պաշտպանել այն հայի առաթուր կոխված իրավունքը է մեր կյանքի բուն խորհուրդը և նպատակը: Եվ այս նպատակին հասնելու համար չէ պիտո ընկերկինք ոչ բանտի և ոչ աքսորի առաջև, ոչ միայն բանիվ և գրչով, այլև զենքով և արյունով, եթե մի օր արժանի լինինք զենք առնուլ մեր ձեռքը և մինչև այժմ քարոզած ազատությունը նվիրել և սրբել մեր արյունով:

Ահավասիկ մեր դավանությունը, որի մեջ տեսանում ենք ազգի փրկությունը»:

Հեղափոխական պաթոսով տոգորված այս կոչն է հնչում Նալբանդյանի Ազատություն բանաստեղծության վերջին մասում, որը դարձել է Երկու տող գրքույկի բնաբանը.

*— Ազատությո՜ւն,— գոչեցի,—*
*Թո՛ղ որոտա իմ գլխին*
*Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,*
*Թո՛ղ դավ դնե թշնամին,*
*Ես մինչ ի մահ, կախաղան,*
*Մինչև անարգ մահու սյուն,*
*Պիտի գոռամ, պիտ կրկնեմ*
*Անդադար ազատությո՜ւն:*

Այստեղ ակնբախ է Նալբանդյանի պոեզիայի և հրապարակախոսության ագիտացիոն-պրոպագանդիստական տոնի ընդհանրությունը, նրա վառ արտահայտված քաղաքացիությունը: Նալբանդյանն ապրել ու ստեղծագործել է Ռուսաստանում ազատագրական շարժման այն էտապում, երբ Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, «յուրաքանչյուր սոցիալիստ բանաստեղծ էր և յուրաքանչյուր բանաստեղծ՝ սոցիալիստ» (ԵԼԺ, հ. 1, էջ 327):

Հայկական հրապարակախոսության և հասարակական մտքի պատմության մեջ հատուկ տեղ է գրավում Նալբանդյանի Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ նշանավոր աշխատությունը: Այնտեղ առավել ցայտուն են արտահայտվել Նալբանդյանի հեղափոխական հայացքները: Աշխատությունը հիմնականում գրվել է Լոնդոնում, ռուս հեղափոխական վտարանդիներ Գերցենի, Օգարյովի, Բակունինի և այլոց միջավայրում. այդ, անշուշտ, իր ազդեցությունն է գործել հայ հրապարակախոսի ու մտածողի ստեղծագործության վրա: Գրքույկի նախաբանում կա «Կոլոկոլի», «Կանչում եմ ողջերին» մարտական բնաբանին համահնչուն հետևյալ միտքը. «Կենդանության նվիրված այս փոքրիկ գործի ճակատը,— գրել է



Նալբանդյանը,— կենդանի մարդերի անունով ցանկացա պսակել... Թողե՛ք մեռելներին թաղել յուրյանց մեռելները, նոցա արևը մտած է, իսկ դուք կենդանի եք, և ապագայի արշալույսը ձեր գլխի վերա է բացվում»: Դեռևս «Կոլոկոլի» 1-ին համարում (1.7.1857 թ.) Գերցենը ոգևորությամբ ասում էր. «...Մենք կանչում ենք կենդանի մարդկանց Ռուսաստանում ամեն տեսակ հնոտիության, իր դարն ապրածի, սրիկայի ու խայտառակի, ստրկականի ու անգիտության հուղարկավորությանը»: Մ. Նալբանդյանը մեկն էր նրանցից, ով, որսալով կոլոկոլյան կանչը, «պայքարի կոչեց կենդանի մարդկանց»՝ հանուն Հայաստանի վերածնության:

Այդ նույն առաջաբանում, որն ուղղված է հայ երիտասարդներին, նա ասում էր. «...այն մարդը, որ զգում է յուր անձը կենդանի, պիտի հարի ձեզ, որովհետև կյանքի հոսանքը միայն մի ընթացք ունի— դեպի հառաջ... Հառա՛ջ... այնտեղ միայն կարող ենք հանդիպել մեր ազգի կենսանորոգ և որոտընդոստ հարության...»:

Կենդանի գործ անվան տակ Նալբանդյանը, ինչպես և ռուս հեղափոխական դեմոկրատները, ամենից առաջ հասկանում է գյուղացիական, տնտեսական հարցի լուծումը հեղափոխության միջոցով: Ուշադրությամբ հետևելով Ռուսաստանում նախառեֆորմյան իրադարձություններին, Երկրագործության մեջ նա ոչնչացնող քննադատության է ենթարկում ինքնակալությանը, մերկացնում 1861 թ. փետրվարի 19-ի ցարական ռեֆորմի հակաժողովրդական էությունը: Եթե Չերնիշևսկուն և նրա հետևորդներին Ռուսաստանում հարկ եղավ ակնարկներով խոսել ցարական ռեֆորմի «նողկալիության» մասին, ապա Նալբանդյանը, ինչպես և Գերցենը, Օգարևը, Ն. Սեռնո-Սոլովյովիչը, օգտագործելով արտասահմանյան լեգալ մամուլը, բացահայտորեն հանդես եկավ «այն ափից» և հուժկու հարվածներ հասցրեց ինքնակալությանն ու ճորտատիրությանը: Այս է նրա պատմական մեծ ծառայությունը:

Միքայել Նալբանդյանը մեկն էր այն մարդկանցից, ով լավ էր հասկանում, որ Ռուսաստանում հասունանում է հեղափոխական պայթյունը: Ահա թե ինչ է գրում նա այդ առիթով իր Երկրագործությունում.

«Բայց այս ջերմախտական և լարյալ վիճակը անհնար է, որ լինի երկարատև: Եթե, վաղօրոք, խելք գործ չդրվի, ստրուկը յուր հողով հանդերձ կատարելապես ազատ չքարոզվի, և այս կերպով այն կնճիռը չլուծվի, ստրուկը կացինով կվճռե գործը»: Նախազգալով գյուղացիական մոտալուտ ապստամբությունը՝ նա ավելացնում է. «Ժամանակը շատ մոտեցած է և կարծվածից ավելի մոտեցած...» (բազմակետը հեղինակինն է,— Ս. Դ.):

Նալբանդյանն այստեղ օգտագործում է «կացնի» օրինակը, որ այն տարիներին հաճախ էր հանդիպում ռուս հեղափոխական դեմոկրատների հրապարակախոսության մեջ, և մասամբ էլ՝ «Կոլոկոլի» 1860 թ. մարտի 1-ի համարում տպագրված Նամակ գավառից հոդվածում: Հայ հրապարակախոսի հեղափոխական լավատեսությունը սնվել է այն բարեբար միջավայրում, որում ստեղծվեց նրա քաղաքական մանիֆեստը՝ Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ:

Մերկացնելով ցարական ինքնակալությունը՝ Նալբանդյանը խորապես հավատում էր ճնշված ժողովուրդների ազատագրման գործում Ռուսաստանի պատմական միսիային: Նա մարգարեաբար ասում էր. «Ռուսիո մեջ խմորված ազատությունը համարձակ կարելի է մարդկային ազատություն անվանել, վասնզի ազատությունը հողի վրա կհիմնվի... Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերությամբ, մե՜ծ խորհուրդ ունի...» (Ընդգծումը մերն է— Ս. Դ.):

Երկրագործությունում Նալբանդյանն անողոքաբար խարազանում է ազգային խտրականության քաղաքականությունը, պաշտպանում բոլոր ժողովուրդների իրավահավասարությունը:

Նալբանդյանի մտքերն ու գաղափարները, որ շարադրված են նրա հրապարակախոսական հիմնական աշխատության՝ Երկրագործության մեջ, տոգորված են պատմական լավատեսությամբ և ջերմ արձագանք գտան Ռուսաստանում ու Թուրքիայում ապրող հայ առաջավոր մտավորականության շրջանում: Այս աշխատությունն ուներ ծրագրային-տեսական բնույթ: Այստեղ զարգացվում էր հետամնաց Հայաստանի համար կիրառելի «համայնքային սոցիալիզմի» տեսությունը, որն արդեն պրոպագանդվում էր Ռուսաստանում և արտասահմանում: Նալբանդյանի Երկրագործությունը հսկայական ազդեցություն ունեցավ XIX դարի երկրորդ կեսի հայ գյուղագիրների վրա:

Նալբանդյան-հրապարակախոսը հավատարիմ մնաց իր հեղափոխական-դեմոկրատական սկզբունքներին նույնիսկ Պետրոպավլովյան ամրոցում: Օգտագործելով Գերցենի հիանալի արտահայտությունը, նրա մասին կարելի է ասել. «Խոսքը, եթե նույնիսկ շղթայված էր, ապա մտքերը շղթայված չէին, կան նաև այնպիսի խոսքեր ու մտքեր, որոնք չեն գնի ոչ մահով՝ Գողգոթայում, ոչ էլ Ալեքսեևյան ռավելինում թաղվելով»:

«Չոր գիլիոտինից» ընկճված՝ Նալբանդյանն ամրոցի հաստ պատերի միջից լսում էր հա-

բազատ ժողովրդի հառաչանքը: Նրան հուզում էր երկու մասի բաժանված Հայաստանի ճակատագիրը: Ամրոցում գրած իր հոդվածներից մեկը նա այդպես էլ անվանեց— Ազգային թշվառություն (1864): Կալանավոր-հրապարակախոսը անհուն վշտով ու ցավով էր գրում սուլթանական լծի տակ հեծող իր ազգի անհամար տանջանքների ու թշվառության մասին: «Մենք սարսափում ենք, երբ աչք ենք ձգում այն անշքացած, անապատացած աշխարհի վերա, ուր... այժմ մեր խեղճ, անտեր ու անօգնական ժողովուրդը միլիոնավոր բազմությամբ թշվառության, հարստահարության և հուսահատության մինչև հնարավոր ծայրը հասած, փոխանակ արտասուքի, արյուն է քամում աչքերից, երբ լաց է լինում, և ուր, դարձյալ, հայակերպ և գիշերադեմ վամպիրները տակավին չեն կշտանում անմեղ զոհի— խեղճ ժողովրդի— արյունը ծծելուց»:

Իր մեկ ուրիշ՝ Նկատողություն ոչ մեծ հոդվածում (1864) Նալբանդյանը մերկացնում է ամերիկյան միսիոներների ռեակցիոն դերը Թուրքիայում: Նա հիշեցնում է Ռոբերտ Օուենի թշվառ ճակատագիրը: Վերջինս հալածվեց բողոքական եկեղեցու կողմից միայն այն բանի համար, որ ձգտում էր սարսափելի աղքատությունը վերացնել՝ իր հիմնած բանվորական դպրոցների ու ֆաբրիկաների օգնությամբ: «Ամերիկայի մեջ դարձյալ,— գրել է Նալբանդյանը,— ինչե՞ր չքաշեց նա քվեքըրների ձեռքից... Ռոբերտ Օուենի գերեզմանի հողը տակավին թարմ է, այս իրողությունքը գրեթե մեր աչքի առաջև անցան: Երանի՜ թե միայն սոքա լինեին:

Ի՞նչ է կարծում պարոնը, ամերիկյան միսիան լինելով Նյու-Յորքի մեջ, պաշտո՞ւմ է նո՛ւյն ազատությունը, որ ոգի է տալիս Միացած Նահանգներին: Կարծո՞ւմ է, թե միսիոնարները՝ Ամերիկայի մեջ կամ Անգլիա կամ ուր և իցե, մի կրոնական թշվառ դպրոցում ստանալով մի որպիսի և իցե կրթություն՝ շերեփներո՞վ էին խմում ազատությունը: Քա՛վ լիցի»:

Որքա՜ն այժմեական են հնչում հրապարակախոսի այս ցասումնալից խոսքերը: Արևելքի երկրների, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների միսիոներները, միայն այլ կերպարանք առած, բայց էությամբ նույնը՝ ցանկանում են խեղդել գաղութատիրության ճիրաններից փրկված ժողովուրդների ազատությունը:

Արևմտահայերի ճակատագիրը հուզում էր Նալբանդյանին նրա ողջ կյանքում: Աշխարհաբարի քերականության ներածությունում (1863) նա արծարծում էր միացյալ լեզվի հարցը, որպես հայոց ազգի հիմնական առաջընթացի պայման: Նա հայերենի երկու հիմնական ճյուղերի՝ արևմտահայերենի և արևելահայերենի մերձեցման խնդիր էր դնում, չնայած հասկանում էր, որ դրանց լիովին միաձուլումը հազիվ թե հնարավոր լինի: Բայց նա ենթադրում էր, որ այդ հետագա մերձեցման մեջ կարևոր դեր կխաղա արևելահայերենը: «...Անհնար է,— ասում էր Նալբանդյանը,— եթե լեզուն հեղափոխվելով ազգի ավելի առաջ գնացած մասին մեջ անփոփոխ մնա մյուս մասին վերաբերությամբ, աննմար է թե այդ հեղափոխությունը ազդեցություն չանե, շատ կամ սակավ, այդ այլ խնդիր է և կախվում է խմորոցի որակությունից, հասարակաց լեզվի վրա...»: «Ազգի ավելի առաջ գնացած մաս» ասելով Նալբանդյանը նկատի ուներ ռուսական պետության մեջ ապրող հայերին, որովհետև Ռուսաստանն իր սոցիալ-տնտեսական ու կուլտուրական հարաբերությունների առումով անհամեմատ ավելի բարձր էր կանգնած սուլթանական Թուրքիայից, որը, անշուշտ, կնպաստեր արևելահայերի առավել արագ զարգացմանը՝ արևմտահայերի համեմատությամբ:

Հայ ազգի և նրա կուլտուրայի համախմբման գործում Արևելահայաստանի գերակշիռ դերի մասին Նալբանդյանի տեսակետը պատմականորեն արդարացավ: 1915 թվականի հայկական ահավոր գենոցիդից հետո Արևելահայաստանը հայերի միակ հույսն էր, ազգը, կուլտուրան և լեզուն պահպանողը:

Այս միտքը բնորոշ է Պետրոպավլովյան ամրոցում Նալբանդյանի գրած մյուս գործերին ևս— Հեգելը և նորա ժամանակը (1863) և Կրիտիկա Սոս և Վարդիթերի (1864): Լուծելով փիլիսոփայական կամ գրականագիտական պրոբլեմներ՝ Նալբանդյանն ամենուրեք մնում է հրապարակախոս և ոչ թե խիստ գիտական պրոբլեմների շրջանակում փակված նեղ մասնագետ: Նրա բոլոր դատողությունները բխում էին ազատագրական պայքարի խնդիրներից: Այսպես, Հեգելը և նորա ժամանակը աշխատության մեջ, առանց հեղինակին վկայակոչելու, նա մեջբերումներ է անում Չերնիշևսկու՝ Համայնքային տիրությունների դեմ փիլիսոփայական նախապաշարմունքների քննադատությունը նշանավոր հոդվածից («Սովրեմեննիկ», 1858, № 12): Նալբանդյանի համար շատ կարևոր էր Չերնիշևսկու այն հանճարեղ կռահումը, թե որոշակի մի ժողովուրդ ավելի զարգացած մի ժողովրդի ազդեցությամբ իր զարգացման մեջ կարող է շրջանցել միջակա բանական մոմենտները և հասնել զարգացման բարձր աստիճանի: Այս միտքը վերաբերում էր նաև Ռուսաստանի տնտեսապես հետամնաց ժողովուրդներին, այդ թվում՝ նաև հայերին:



Չերնիշևսկին, իսկ նրանից հետո Նալբանդյանը, ելնելով հասարակության զարգացման վերոհիշյալ օրինաչափությունից, հնարավոր էին համարում Ռուսաստանում շրջանցել (կամ գոնե կրճատել) կապիտալիզմի տանջալից ստադիան, օգտագործելով Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական առաջավոր երկրների զարգացման արդյունքները և, այսպիսով, գյուղական համայնքի միջոցով, որը կստեղծվի գյուղացիական հեղափոխության ճանապարհով, անցնել ուղղակի սոցիալիզմի: Նման պլանն անշուշտ ուտոպիական էր, բայց դեպի սոցիալիզմ հետամնաց երկրների պատմականորեն յուրօրինակ զարգացման այդ գաղափարն արգասավոր էր ու հեռանկարային:

Խոսելով ռուսական զարգացման յուրօրինակության մասին՝ Վ. Ի. Լենինը գրել է.

«Քաղաքակրթված և... ամբողջ Արևելքի երկըրների, ոչ եվրոպական երկրների սահմանում կանգնած Ռուսաստանը, պետք է դրսևորեր որոշ ինքնօրինակություն, որն ընկած լիներ համաշխարհային զարգացման ընդհանուր գծի վրա, բայց որը տարբերեր նրա հեղափոխությունը արևմտաեվրոպական բոլոր նախորդ երկրներից»: Նա այն միտքը հայտնեց նաև, որ հետագա հեղափոխությունները «Արևելքի երկրներում... անկասկած, ավելի շատ յուրատեսակություն հանդես կբերեն, քան ռուսական հեղափոխությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 33, էջ 571): Լենինյան այս դրույթներն իրականացան մեր օրերում, երբ Աֆրիկայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի երկրներն անցնում են սոցիալիզմին, ընթանալով իրենց ուղիով, բայց հաշվի առնելով նաև աշխարհում առաջին սոցիալիստական պետության հարստացույն փորձը:

---

Ահա թե ինչու Մ. Նալբանդյանն իր հուսալի հայացքը հառել էր մարտնչող հեղափոխական Ռուսաստանին և նրա առաջավոր մտածողներին ու հրապարակախոսներին: Հեգելը և նորա ժամանակը աշխատության մեջ, անդրադառնալով Անգլիայի ու Ֆրանսիայի (բայց ենթադրելով Ռուսաստանը և Հայաստանը) գյուղացիության դրությանը, նա գրում է. «Մընում է մեջտեղը որպես միակ բարերար ելք հասարակական սկզբունքը (общинное начало), որ կա Ռուսիո մեջ»: Եվ ավելացնում է. «Բայց ո՛վ գիտե թե երբ կարող են զարթնել Անգլիո և Ֆրանսիո գրակխոսները»: Այսինքն՝ գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական օրինտացիայի վերափոխման համար անհրաժեշտ է հեղափոխություն: Ավելի պարզ, իհարկե, չէր կարող ասել կալանավորը...

Միքայել Նալբանդյանի անվան հետ է կապված հայ գրականության և հասարակական մտքի պատմության մի ամբողջ դարաշրջան: Հայ ականավոր գրողների, հրապարակախոսների և հասարակական գործիչների շատ սերունդներ են դաստիարակվել նրա հեղափոխական-դեմոկրատական և ռեալիստական ավանդույթներով: Իրավամբ նրա ժառանգության հետևորդներ են համարել իրենց հայ բոլշևիկներ և մարքսիստ-հրապարակախոսներ Ստ. Շահումյանը, Ալ. Մյասնիկյանը:

Վերածնված հայ ժողովուրդն այժմ նշում է իր փառապանծ զավակի, ազատության աննկուն մարտիկի հիշատակը, որի սիրտը լի էր հարազատ ժողովրդի վշտերով, ողջ կյանքը՝ ուղեկցված տառապանքներով: Նա մոտ ու հարազատ է մեր ժամանակներին:

# ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ ԵՎ ԱՐԵՎՄՈՒՏՔԸ

**Վ. Զ. ՊԱՐՏԻԶՈՒՆԻ**
*Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

**ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ, ՌՈՒՍ ԵՎ ՀԱՅ** գրականությունների մեջ շատ են բուրժուական Արևմուտքի քննադատությանը նվիրված երկերը, արևմտյան «երկրային դրախտի» իսկական իրականությունը պատկերող էջերը:

Հայ գրականության մեջ այդ թեմային փայլուն էջեր է նվիրել Նալբանդյանի անմիջական նախորդ, մեծ լուսավորիչ-դեմոկրատ Խ. Աբովյանը: Արևմուտքի քննադատությունը Աբովյանից հետո շարունակվեց և նոր ու բարձր աստիճանի հասավ հեղափոխական դեմոկրատ Մ. Նալբանդյանի երկերում: Դրան մեծապես նպաստեց այն, որ մեծ հեղափոխականն ու ամեն կարգի բռնության թշնամին Արևմուտքը գիտեր ոչ թե «ի լրո», ոչ միայն գրքերով, այլև ականատեսի լավատեղյակությամբ: Տարբեր առիթներով ու նպատակներով լինելով Եվրոպայի բազմաթիվ երկրներում (Անգլիա, Ֆրանսիա, Գերմանիա, Ավստրիա, Իտալիա, Լեհաստան, Բելգիա և այլն), ինչպես և Հնդկաստանում, Եգիպտոսում, Թուրքիայում և շատ այլ երկրներում, նա տեսավ և՛ Արևմուտքի գաղութատեր երկրները, և՛ նրանց տիրապետության հետևանքները ճաշակած երկրները ու, ռուս հեղափոխականների հետ միասին, անհուն նողկանքով և բուռն զայրույթով նշավակեց Արևմուտքն ու նրա «քաղաքակրթական» միսիան:

Մ. Նալբանդյանի երկրորդ անգամ արտասահմանում եղած ժամանակ (1860 թ. նոյեմբեր—1862 թ. մայիս) եվրոպական շատ երկրներում բռնկվել էր տնտեսական ճգնաժամ: Եվ Նալբանդյանը, իրեն հատուկ նպատակապացությամբ, 1862-ին Փարիզում հրատարակած Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ երկը սկսում է ժամանակի համաշխարհային մասշտաբի ամենակարևոր իրադարձության ու նրա հետևանքների քննությունից: Իրադարձությունը Ամերիկայի հյուսիսային և հարավային նահանգների միջև մղվող պատերազմն էր: Առայժմ հետաձգելով այդ պատերազմի հարցի քննությունը, անդրադառնանք նրա հետևանքներին: Ամենածանր հետևանքն արդեն հիշատակված տնտեսական խոր ճգնաժամն էր, որն ամբողջ դաժանությամբ ծանրացել էր աշխատավոր ժողովրդի ուսերին. «Ամերիկան պատերազմ ունի յուր մեջ, չէ կարող բամբակ տալ Անգլիային, նորա բամբակեղենի ապրանքի գործարանքը փակվում են, գործարանատերքը սնանկանում և անգործ մնացած բյուրավոր գործավորքը օրական հացի կարոտ և վերջին հուսահատության մեջ... Մեր աչքի առջև են բյուրավոր անգործ գործավորք, որ տանջվում են սովից և վերջին հիգն են թափում, պատերազմելով մի ծայրացյալ աղքատության հետ»:

Իրերի վրա «վեր ի վերո նայողների» և միայն «արտաքին կեղևը» քննողների համար, ասում է Նալբանդյանը, այս տեսակ աղքատությունը եթե ուրիշ երկրների համար կարող է բնականոն համարվել, ապա Անգլիայի համար «զարմանալի» է: Սակայն ովքեր հետամուտ են երևույթների «բոլոր ծնուցիչ պատճառքը» իմանալ, նրանց համար պարզ է, որ «միմիայն Անգլիո մեջ և ըստ մասին Ֆրանսիո մեջ կարելի է այդպիսի աղքատություն»*):

Սխալվում են Անգլիայի ջատագովները, ասում է Նալբանդյանը, ճիշտ չեն նրա հասցեին հնչող «հազարավոր գովեստները, բյուրավոր երանիները», «սոսկալի աղքատությունը» Անգլիայի մեջ ստացել է «անհարկու կերպարանք»:

Հետաքրքրական է, որ ռուս հեղափոխական դեմոկրատների պարագլուխ Ն. Չերնիշևսկին նույնպես մերկացրել է եվրոպական «երկրային դրախտի» առասպելը. «... Ճանապարհորդները,— գրել է նա,— ոգևորվելով Արևմտյան Եվրոպա այնտեղ երկրային դրախտ գտնելու ակնկալություններով, վերադառնում են հիասթափված»: Ընդ որում և՛ Չերնիշևսկին, և՛ Նալբանդյանը «հասարակ ժողովրդի» ծանր վիճակի պատճառը կենսամիջոցների սակավությամբ չեն բացատրել, այլ նրանց անարդարացի բաժանմամբ: «Ո՞րտեղ հարկավոր է որոնել ոսկին և արծաթը,—հարցնում է Նալբանդյանը և առանց հապաղելու պատասխանում: — Նախ մի քանի երևելի մոնոպոլիստ սեղանավորների մոտ, որ աշխարհը խեղդում են պարտքի մեջ, և երկրորդ՝ հողատերերի մոտ»: Իսկ սեղանավորները (բանկիրները) և հողատերերը ազգ չեն: «Անգլիական ազգը ամեն ազգից աղքատ է», որովհետև «ազգ ասելով պիտի իմանալ հասարակ ժողովուրդը և ո՛չ նորա միջից, նորա քրտինքով և նորա արյունով հառաջացած մի քանի մեծատունք»: Անգլիական երկրները, շարունակում է Նալբանդյանը, ազնվականների մասնավոր սեփականություն է, հասարակ ժողովուրդը «մի հատ ցից զարկելու հող չունի»: «Այժմ հարցնում ենք, հարո՞ւստ է անգլիական ազգը, եթե մի քանի գործարան փակվելով, կամ մի ժապավեն գործածութենից դուրս ընկնելով բյուրավոր մարդիկ և բյուրավոր գերդաստանք, դառն աղքատության հետ պատերազմելով, կարող են սովամահ կորսվիլ... Չէ՛, հարուստ չէ, ասում ենք, և այն, դրականապես»:

«Տերությունքը» ևս ազգ չեն, ասում է Նալբանդյանը, որովհետև պետությունները, իրենց ամենատարբեր ձևերով, նույնիսկ սահմանադրություն ունեցող երկրներում, արտահայտում են վերնախավերի շահերը, կոչված են պահպանելու «բաների ամենօրյա ընթացքը» և ճնշելու իրենց իշխանությունը «շատ թե քիչ սասանեցնելու» յուրաքանչյուր փորձ:

Նալբանդյանը խորին դառնությամբ ու զայրույթով ստիպված է հավաստել, որ այս հանգամանքը երբեմն չի գիտակցվում, որ «մարդը դեռևս թողված է, կառավարությանց բռնանքը դեռևս ազդում են նորա վերա»: Եվ կառավարությունները, նկատելով այդ, տեսնելով, որ ազգերը «ինքյանք յուրյանց մեջ» ազատ չեն ու «սնոտի նախապաշարմունքներ, փտած սկզբունքներ և առհասարակ գլխիվայր հասկացողությունք պաշտելի են նոցա», դիմում են խորամանկության, օգտագործում են նրանց թուլությունն ու մոլորությունը և իրենց շահերը ներկայացնում են իբրև հայրենիքի, ազգի, ժողովրդի շահեր. երբ պետությունը պատերազմ է ուզում մղել, նա դիմում է ազգին ճառերով և «բորբոքեցուցիչ հորդորներով». «ա՛զգ, զինվոր տո՛ւր, ա՛զգ, դրամ տո՛ւր, ա՛զգ, կյանքդ տո՛ւր քո հայրենիքը պահպանելու և նորա պատիվը տեղը բերելու կամ առավել ևս փառավորելու համար»*): Եվ խեղճ ազգը կրում է ծանր հարկեր, զոհում է յուր առույգ զավակները թշնամին վանելու համար, ոգևորվում է հաղթությամբք, տաղեր է երգում, և գործը ավարտելուց հետո ուրախ-ուրախ վերադառնում է յուր տեղը, կարծելով և հավատալով, թե մեծ գործ կատարեց, հայրենիքը փրկեց, հողը փրկեց և պատիվը պահեց»: Վերադառնում է... և կրկին նույնը, ինչ էր մինչև պատերազմը, նորից նա պիտի քարշ տա իր ողորմելի գոյությունը, նորից պիտի «հարկ տա ազնվականին» այն հողի համար... որ ազատելու համար արյուն թափեց, որդուն, հորը կամ եղբորը կորցրեց, «խեղացավ, ջարդվեցավ»: Ավելի «կոպիտ և խոշոր հեգնություն» անհնար է երևակայել,— ասում է Նալբանդյանը և իր ասածը հիմնավորելու համար դիմում է պատմությանը: «Վերջին անգամ գոռաց նա, «կեցցե՛ ազատություն, կեցցե՛ հավասարություն, կեցցե՛ եղբայրություն»: Խոսքը ֆրանսիական բուրժուական հեղափոխության հռչակած հայտնի լոզունգին է վերաբերում, որի համար ազգը, ժողովուրդը անասելի զրկանքներ կրեց, արյուն հեղեց և ինչ... Երբ արդեն ազատությունը, հավասարությունը և եղբայրությունը նըստել էին «արքայական գահի վերա», պարզվել էր, որ ազգը, հասարակ ժողովուրդը «վարատական և անհող, հարկադրվեցավ դարձյալ յուր օրական հացը ճարել ստրկանալով ուրիշին»: Սա բուրժուական «դեմոկրատիայի» ամենաբնորոշ օրինակներից մեկն է, մի «դեմոկրատիա», որին Նալբանդյանը անդրադարձել է նաև մամուլի և ընտրական սիստեմի մասին խոսելիս: «Մամուլի ազատությունը» Նալբանդյանը ծաղրել է՝ բացահայտելով բուրժուական մամուլի «ըստ հանգամանաց» կողմնորոշումը—պատեհապաշտությունն ու վաճառվածությունը, իսկ ընտրական սիստեմին անդրադառնալիս ցույց է տվել այդ դեմոկրատիայի սահմանափակությունն ու կեղծիքը:

Նալբանդյանը, մերկացնելով Արևմուտքի բուրժուական հարաբերությունների շատ կողմեր, սուր աչքով դիտելով և հասարակական դատաստանին ներկայացնելով կապիտալիստական սիստեմի հատուկ արատները, բացառիկ հետևողականություն է հանդես բերել մասնավորապես բուրժուական երկրների գաղութատիրական քաղաքականությունը մերկացնելիս ու դատապարտելիս: Հեղափոխա-

*) Ֆ. Էնգելսը *Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում* աշխատության մեջ նկարագրել է անգլիական բանվորության անասելի ծանր, «թշվառ դրությունը»:

* Չակերտների մեջ առնված բառերը վերցված են Ն. Օգարյովի «Что нужно народу?» հոդվածից:

կան դեմոկրատի սրաթափանց աչքից չէր կարող վրիպել, թե ինչպես նոր երկրներ նվաճելու մոլուցքով բռնված գաղութատիրական երկրները իրենց աշխարհակալական նկրտումները արդարացնելու նպատակով դիմում էին «քաղաքակրթություն տարածելու», «վայրենությունը քաղաքակրթելու» դեմագոգիային և իրենց ամենահակամարդկային քաղաքականությունը փորձում էին ներկայացնել իբրև «մարդասիրություն»: «Ուրիշ աշխարհների տիրելու, ուրիշ ազգությունք սպանելու» իրենց պլանները արդարացնելու համար «բռնակալ աշխարհակալությունքը», ասում է Նալբանդյանը, դիմում են «մի սուտ փաստի», որը այսօր չի կարող ո՛չ արդարացվել և ո՛չ էլ «մարդկային բանականության դիմանալ»: «Ի՛նչ էր այդ փաստը,— հարցնում է Նալբանդյանը և ինքն էլ ծաղրով պատասխանում: — Այն, թե հզոր կառավարությունքը տիրում են զանազան աշխարհների, զանազան ազգերի, միմիայն վայրենությունը քաղաքակրթելու համար»:

«Այսպես, ուրեմն,— շարունակում է Նալբանդյանը,— Անգլիան Հնդկաստանի մեջ մի որոշյալ կշիռ ափիոն գնում է ժողովրդից 25 լիբրե ստերլինգի, իսկ ինքը նույն կշիռը վաճառում է 250 լիբրեի... «Քաղաքակրթություն է տարածում»:

— Անգլիան ամիսը երեք շոգենավ ափիոն բռնությամբ ներս է տանում Չինաստան, թունավորում է մարդկությանը և այդ թույնի փոխարեն ամիսը երեք շոգենավ արծաթ է ստանում. այս անբարոյականություն է:

«Քաղաքակրթություն է տարածում»:

— Իռլանդիան, յուր աշխարհագրական դրությամբ, յուր բնական սահմաններով, յուր կրոնքով, սովորությամբ և ավանդությամբ բոլորովին հեռի է Անգլիայից... Բայց Անգլիան հակառակ նորա կամքին, պահում է նորան յուր ձեռքի մեջ, և «Թայմսը» շատ ժամանակ չէ, որ հրատարակեց, թե Իռլանդիո անկախության աշխատողքը իբրև տերության ընդդեմ ապստամբք, կարո՛ղ են դատապարտվիլ դեպի թիարան...

«Քաղաքակրթություն է տարածում»:

«Դեպի թիարան» սպառնալիքով... քաղաքակրթություն տարածել:

Նալբանդյանը բուռն զայրույթով է խոսում Մարքսի արհամարհանքին արժանացած «Թայմս» թերթի մասին, որը ցինիկաբար դիմեց Լեհաստանին. «Ի՛նչ ես արել, որ ես համակրություն ցույց տամ քեզ, որ ես խոստովանիմ քեզ կենդանի»: Նալբանդյանը նախ միամտություն է համարում այս կամ այն կառավարության ասածին հավատալը: Պարզամիտ մարդիկ «կարող են հավատալ,— գրում է նա,— որ եթե հիրավի՛, Լեհաստանը արժանի լիներ անգլիական համակրության և անա լրացած էր ամենայն բան»: Եվ ապա խորին զայրույթով ու զզվանքով է խոսում «արյունլվա նահատակի» անգլիական համակրության արժանանալու մասին. «Ի՛նչ ասել է համակրություն. ուրիշը իրավունք ունի երկրագունդի վերա ապրելու, լեհացին չունի՞: Սա իբրև ողորմությո՞ւն պիտի ստանա ուրիշից այն, ինչ որ ուրիշը ունի...»:

Գաղութատիրական քաղաքականությունը հատուկ է ոչ միայն Անգլիային: Զբաղվելով գերազանցապես բուրժուական Անգլիայի քննադատությամբ և ցույց տալով բուրժուական կարգերի արատները, Նալբանդյանը կատարում էր ընդհանրացումներ և բացահայտում սիստեմին հատուկ գծերը, այսինքն քննադատում էր առհասարակ բուրժուական Արևմուտքը: Ընդ որում Արևմուտքի քննադատությունը Նալբանդյանի համար չի եղել «ժամանակավոր թեմա», չի սահմանափակվել, ասենք, միայն Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ երկով: Այլևայլ առիթներով նա և՛ մինչ Երկրագործությունը..., և՛ Երկրագործությունից... հետո գրած երկերում լրացնում ու ամբողջականացնում է պրոբլեմի քննությունը: Նալբանդյանը բազմիցս է անդրադարձել Ֆրանսիայի աշխարհակալական պլաններին և ցույց է տվել, որ նրա ու Անգլիայի միջև այդ հարցում տարբերություններ չկան և Ֆրանսիան ամենաակտիվ գործողությունների է դիմում աֆրիկյան ժողովուրդներին ստրկացնելու, իսկ «Պրուսիան, Լեհաստանի մահվան առաջին պատճառը, հափշտակել է նորա Պոզնայնի դքսությունը և խեղդում է...», նույնպես քաղաքակրթություն է տարածում:

Նալբանդյանի զայրույթն իր բացառիկ շիկացմանն է հասնում, երբ խոսում է Անգլիայի ու Ֆրանսիայի կրտսեր գործընկեր Ավստրիայի մասին: Այդ Ավստրիան է, որ «բռնացել է Լոմբարդիո վերա և չէ կամենում Վենետիկը ձեռքից թողուլ»:

«Քաղաքակրթություն է տարածում»:

— Մորթել է Հունգարիան, խեղդել է Գալիցիան, Դալմատիան, Բոհեմիան և այլ գավառներ ու ազգեր:

«Քաղաքակրթություն է տարածում»: Այն երկրների վրա, ուր սրբապիղծ ձեռքով տընկված է «ավստրիական անպարծանք դրոշը», ասում է Նալբանդյանը, բնակվում է 35 միլիոն մարդ: Ասել է թե՝ մոտավորապես «8 միլիոն հոգի բռնացել է 27 միլիոն օտար ժողովրդի վերա և ապրում է ծծելով նոցա արյունը, նոցա կենսական ուժը և զորությունը»:

Արևմուտքի մասին մինչև այժմ մեր ասածը, ինչ խոսք, վերաբերում էր նաև Ծչեդրինի արտահայտությամբ ասած «հեռավոր Արևմուտքին», Ամերիկային: Երկրորդ անգամ Նալբանդյանի Եվրոպայում եղած ժամանակ և մասնավորապես Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ հրապարակախոսական փայլուն երկը գրելիս, ինչպես արդեն ասել ենք, կար Ամերիկային վերաբերող մի հարց, որ հուզում էր աշխարհին: Խոսքը Հյուսիսի և Հարավի միջև ծագած պատերազմի և դրա հետևանքով Ամերիկայի և Անգլիայի ծայրահեղորեն լարված՝ պատերազմի եզրին գտնվող հարաբերությունների մասին է:

Նալբանդյանին պատիվ է բերում, որ նա այդ նշանակալից իրադարձության պատճառների քննության ու գնահատության հարցերում գտնվել է ժամանակի ամենաառաջավոր մտքի ներկայացուցիչների դիրքերում:

Հյուսիսային Ամերիկան, գրում է Նալբանդյանը, պատերազմ է սկսել Հարավայինի դեմ, որովհետև վերջինս չի ուզում վերացնել «յուր միջից մարդկության նախատինքը, մարդավաճառ ստրկությունը: Այն ո՛ր սիրտն է, որ համակրություն չունի դեպի Հյուսիսային Ամերիկայի այս դյուցազնական անձնազոհությունը, ո՛ր խղճմտանքն է, որ հաշտ կարող է մնալ Հարավային Ամերիկայի մինչև այժմ բռնած ընթացքի հետ»:

Հակառակ «դյուցազնական անձնազոհության», «ազատ երկիր» հռչակված Անգլիան ցնծում է, երբ պատերազմում հաջողություն է ունենում «մարդը իբրև անասուն գործածող» Հարավը և ընդհակառակը՝ «Անգլիո սրտին» ծանր է նստում Հյուսիսային Ամերիկայի հաղթանակը: Բանը հասնում է այնտեղ, որ Անգլիան ինքն է ուզում պատերազմ հայտարարել Հյուսիսային Ամերիկային—անգլիական բուրժուազիան այդ է պահանջում իր կառավարությունից: Նալբանդյանը, հասու և խորամուխ դեպքերի ընթացքին, գմայլանքի արժանի խորաթափանցությամբ է բացատրում երևույթները. Անգլիան պաշտպանում է Հարավին ոչ «կառավարության հաճույքից», նա «ստիպված է»: Երբ խոսքը վերաբերում է «կենսական» շահերին, անհնար է դառնում շարունակել դեմոկրատիա խաղալ կամ շաղակրատել դեմոկրատական ազատությունների մասին. «Մենք ստրկություն չենք սիրում, բայց մենք բամբակի կարիք ունենք»,— հայտարարեց անգլիական մի քաղաքագետ՝ ենթաբնագիրը թաքցնելով: Իսկ ո՞րն է ենթաբնագիրը՝ սեփական շահն է ստիպում պաշտպանել ստրկատիրական Հարավին:

Զայրույթով քննադատելով գաղութատիրությունը, Արևմուտքի բուրժուական պետությունների աշխարհակալական նկրտումները, Նալբանդյանը, ասել ենք, հատկապես խիստ է արտահայտվել սեփական շահերը իբրև մարդասիրություն ներկայացնելու մասին: Նկատի ունենալով «վայրենությունը քաղաքակրթելու» դիմակով հանդես եկող գաղութարարներին, Նալբանդյանը գրել է. «Սոքա ամենքը, իբրև բռնի վարժապետ, քաղաքակրթություն են տարածում, և ոչ ոք չէ հարցնում աշակերտի կամքը, կամի՞ արդյոք ուսանել թե ոչ... Բանդերն են նոցա դպրոցները, ոստիկանք և ժանդարմը՝ դաստիարակները, շղթան՝ հրահանգիչ գիրքը, աքսորը՝ բարոյականությունը վերին աստիճանի կազդուրելու մարզարան, կախաղանը և գլխապարտության խայտառակ սյունը՝ «դուռն ճշմարիտ, որ տանի ի կեանս հավիտենականս...»:

«Կեցցե՛ կատուն, որ յուր փորի համար մուկ է բռնում»: Անհնար է չհիշել Աբովյանին՝ «Էս էլ քո լուսավոր եվրոպացին»—«սպիտակ տեսլեամբ թշնամին դաժան»:

Նալբանդյանը ո՛չ միայն դատապարտել է գաղութատիրությունը, այլև գրել է նրա դեմ պայքարելու ուղիների ու միջոցների մասին և եկել այն եզրակացության, որ «Այսօր, ճընշված մարդերի համար, ազգությունն է նոցա միակ դրոշը, որ կարող է բացվիլ բռնակալության ընդդեմ»: Եթե վաղը «բոլոր երկրագունդի վերա» տիրի «հավասար իրավունք» և պետական սիստեմները ոչնչանան, գրել է նա, ազգության հարցը ևս ինքնին կվերանա: Բայց քանի որ հեռու են այդ ժամանակները, և շարունակում է իշխել «սահմանք բաջաց, զէնք իւրեանց» սկզբունքը, քանի որ մի ազգ ճնշում ու հարստահարում է մյուսին, «մեր կարողությունքը ուղղում ենք մեր ազգությունը պաշտպանելու համար»: «Ազատության զինվորը» դատապարտել է ազգային խտրականությունը, «ազգությունը կույր ֆանատիկոսություն դարձնելը». «Հերիք է, որչափ կույր և ֆանատիկական ազգությունը*) ունի յուր եսական կողմերը. հերի՛ք է, ասում ենք, որ մի ազգություն յուր մի շամփուր խորովածի համար մորթում է մյուս ազգության եզը...»: Այդպիսի ազգությունը Նալբանդյանը համարում է «վնասակար, անիրավ» ու կործանման դատապարտված: Ազգությունը «հարկավոր է և օգտակար», երբ հեռու է ֆանատիզմից, ուրիշներին նվաճելու մարմաջից և պահանջում է բոլոր ազգերի «հավասար իրավունք»: Ավելի տխուր բան չկա, ասում է մեծ ազատասերը, քան

* *Նալբանդյանը ազգ ասելով երբեմն նկատի է ունեցել պետությունը՝ պետությունն է «մյուս ազգության» եզը մորթողը, նրան նվաճողն ու ստրկացնողը: Այդ նույն պետությունն է, որ «համատեղությամբ» ստրկացնում է նաև «սեփական» ազգի մարդկանց:*

տեսնել, թե ինչպես մի ազգություն կործանվում է «մի այլ ազգության ճնշողութենից»: Բայց ավելի «սարսափելին» ազգուրացությունն է: Այդ խնդրի մասին խոսելիս Նալբանդյանը ընտրում է ամենախիստ, ամենածանր որակումները՝ դատապարտությանը ավելի կշիռ հաղորդելու համար. «Բայց մի աննկարագրելի վատաբախտություն, մի սարսափելի տեսարան է, եթե մի ազգի անդամք ինքյանք հրաժարվում են յուրյանց ազգութենից և, մտանելով մասնավորության կործանական դրոշակի տակ, ընդհանուր մարդկային հարգ ու արժանավորություն տեսանել համարում են մի մեծ, բայց օտար ազգի ազգության մեջ: Ի՛նչ ողորմելի փիլիսոփայություն, ի՛նչ արտասվելի վարդապետություն: Թո՛ղ ամենայն ազգ պահպանե յուր ազգության կերպարանքը, թո՛ղ ազատ և պայծառ ծաղկի ամենայն ազգություն մարդկեղեն աշխարհի մեջ. դոքա միայն զորություն և հոգի են տալիս ազգերի ընդհանուր աշխատությանը»: «Աննկարագրելի վատաբախտություն», «սարսափելի տեսարան», «ողորմելի փիլիսոփայություն», «արտասվելի վարդապետություն»—յուրաքանչյուր բառը շեշտակի և մանավանդ այսօր իսկ ճշմարտացի: Նալբանդյանը դատապարտել է նաև ազգային սնապարծությունը, ժամանակին ու ազգի կենսական պահանջներին «ընթացակից» լինելու անհրաժեշտությունը չգիտակցողներին և «երանելի անցյալի» փառքով իրենց մխիթարողներին:

Ավանդելով պահել ազգությունը, ազգային սրբությունները և ազգությունը իբրև դրոշ պարզել ընդդեմ բռնակալության, Նալբանդյանի պես պողպատյա տրամաբանությամբ օժտված մտածողը, ինչ խոսք, պիտի բարձր գնահատեր գաղութատիրության դեմ մղվող ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները: Այդ խնդրին նա անդրադարձել է և՛ «Եվրոպա—Ասիա» հարցը քննելիս, և՛ առանձին երկրների ազգային-ազատագրական պայքարի մասին խոսելիս: Նրան խորապես խորթ էր գիտության ու մշակույթի առաջընթացը միայն Եվրոպայի հետ կապելու բավական տարածված, սակայն արատավոր ավանդույթը, որը, ի դեպ, նաև ձեռնտու էր գաղութարարական նվաճումներին «բռնաբարության կերպարանք» չտալու միտումին: Ի պատասխան այս միտումների, Նալբանդյանը ամենատարբեր առիթներով ու բազմիցս նշել է, որ ասիական ու արևելյան ժողովուրդները իրենց նշանակալից լուման են մուծել մարդկության ստեղծած գիտության ու մշակույթի գանձարանը: Ասիայում, «մարդկության այդ օրրանում է» սկիզբ առել լուսավորությունը, գրում է Նալբանդյանը: Նա փորձում է խորամուխ լինել նաև գալիքի ծալքերը ու այնտեղ մեծ ապագա է տեսնում Ասիայի համար. պիտի գան այնպիսի ժամանակներ, երբ Ասիան պիտի «մանկանա» և սկսի իր նոր շրջանի պատմությունը. «... Ասիո ապագան ավելի մեծ է, ավելի լայն է տնտեսական խնդրի վերաբերությամբ, քան թե Եվրոպիո ապագան»: Ինչպես Ասիայի գիտական ու մշակութային ձեռքբերումների, այնպես էլ Եվրոպայի ու Ասիայի ապագաների մասին Նալբանդյանի ասածներում կարելի է գտնել անճիշտ ու վիճելի առանձին արտահայտություններ, սակայն էականը այս դեպքում դա չէ, այլ այն ազնիվ միտումն ու նպատակը, որ առաջնորդել է մեծ մարդասերին ու հեղափոխականին՝ մերկացնել ռասաների բիոլոգիական ոչ հավասարարժեքության, «ընտիր» և «ստոր» ռասաների ռեակցիոն ու ժողովուրդների ստրկացումն արդարացնող տեսությունները: Բոլոր ժողովուրդների իրավահավասարության սկզբունքի կրքոտ պաշտպանը խորապես համոզված էր, որ ճնշված ժողովուրդներն ազատ կլինեն, եթե տապալվեն բուրժուական պետությունները և հաղթանակի դեմոկրատական հեղափոխությունը:

Բացառիկ ջերմ է Նալբանդյանի վերաբերմունքը իտալական ժողովրդի, նրա մղած ազգային-ազատագրական պայքարի և այդ պայքարի ազգային հերոսներ Գարիբալդիի ու Մաձինիի նկատմամբ: 1861 թվականի հունվարի սկզբներին Նեապոլից գրած մի նամակում նա հայտնում է, որ նավահանգստում տեսել է «մի անագին բազմություն աշխույժ երիտասարդների, որոնց կարմիր շապիկը վկայում էր, թե պատկանում են իտալական Հերոսին՝ Գարիբալդիու բանակին: Այդ վառվռուն երիտասարդների դեմքի վերա գծագրված էր ուրախություն և խղճի հանգստություն. նոցա ճակատը փայլում էր արժանավոր պարծանքով:

Կեցցե՛ Իտալիա, կեցցե՛ Գարիբալդի, անլուռ աղաղակում էր հասարակ ժողովուրդը»: Այնուհետև, վերլուծելով երեք տարբեր շերտերի (հասարակ ժողովուրդ, «միջնակարգ ժողովուրդ», ազնվականություն) դեպի ազատագրական պայքարն ունեցած վերաբերմունքը և ամենից ջերմ արտահայտվելով հասարակ ժողովրդի մասին, Նալբանդյանն անզուսպ զայրույթով է խոսում «մարդկության անունի անարգություն» ազնվականության մասին, ավստրիական լծի դեմ մղվող պայքարի հիմնական ուժը համարելով իտալական աշխատավոր հասարակ ժողովրդին: Անցում կատարելով դեպի իր հայրենիքին հուզող հարցերը, Նալբանդյանը խորին ցավով ստիպված է նշել, որ իր ժողովուրդը չի մտածում անցնել «այն փրկության կամուրջը, որից անցնում են ուրիշ ազ-



գեր»: Եվ ապա՝ սահմանազծվելով «հայ չմարդներից» (այլ անգամ՝ «չհայ» մարդկանցից), նա ողջունում է նրանց, որոնց «կուրծքի մեջ զարկում է ստուգապես հայկական սիրտ»: «Չեմ նախանձում Իտալիայի ազատության,— գրում է Նալբանդյանը,— դորա հակառակ առ ի սրտե ուրախ եմ. սակայն տեսանելով նորա ազատությունը և իմ ազգի տկարությունը, կըրծում է սիրտս և այրում է հոգիս... Էտնան և Վեզուվին ծխվում են. Արարատի հին վուլկանի մեջ միթե՞ կրակ կմնա իսպառ... մահաբեր մտածություն»: Իտալիայի ազգային-ազատագրական պայքարի նկատմամբ Նալբանդյանի ջերմ համակրանքի մասին բազմաթիվ փաստերից բերենք նաև մեկը: Խոսքը «Իտալացի աղջկա երգը» բանաստեղծության մասին է, ուր գովերգվում են «յուր ազգի ազատության» համար զոհվելու հերոսականությունն ու իտալական ժողովրդի ազատագրական պայքարն ընդդեմ բռնակալ Ավստրիայի:

Մի բավական հետաքրքրական պրոբլեմ է Արևմուտքի նկատմամբ հայ հասարակական տարբեր խավերի վերաբերմունքի հարցը: Հայ վերնախավերի հետադեմ ներկայացուցիչները հանդես էին գալիս եվրոպական օրիենտացիայի ջերմ պաշտպանությամբ և առաջարկում էին «Եվրոպայի պետությանց քաղաքականության հետևիլ»: Նրանք իրենց հույսերը կապում էին Արևմուտքի երկրների արևելյան քաղաքականության հետ և համակրանքով էին արտահայտվում հունիսյան ապստամբության դահիճ Կավենյակի մասին: Բնորոշ է, օրինակ, որ Նալբանդյանի կատաղի հակառակորդ, ռեակցիոներ, դևերի գոյության մասին ցնդաբանող Չամուռճյանը իր խմբագրած «Երևակ» հանդեսում ներբողներ էր գրում սրբազան միության և Մետտերնիխի մասին:

Կ. Մարքսը նկատել է, որ Թուրքիայում հայ բուրժուազիան կապված էր գերազանցապես ֆրանսիական ու անգլիական կապիտալի հետ և ստորաքարշում էր այդ պետությունների առաջ՝ ճգնելով իր ծառայական կեցվածքով ու վարքագծով արժանանալ նրանց ողորմածությանը և ուշադրությանը: 1860-ական թվականներին Արևմտահայաստանում ուժեղացած ֆրանսիական օրիենտացիայի կողմնակիցները հորդորում էին հանդես գալ «Գաղղիո դրոշակին ներքո»: Ընդ որում՝ ֆրանսիական պետությունն էլ իր հերթին ընդառաջում էր այդ մտայնությանը և, իր գործակալների միջոցով ամենահրապուրիչ խոստումներ շռայլելով, փորձում էր իր կողմը գրավել ժողովրդին:

Խիստ բնորոշ է, որ բուրժուական Արևմուտքի անողոք քննադատ Մ. Նալբանդյանն անարգանքի սյունին է գամել այդպիսի մի հայ գործակալի՝ «շառլատան», արկածախնդիր, «հայկական գահի» ինքնակոչ հավակնորդ Լ. Լուսինյանին: Նալբանդյանը տեսել է ու մերկացրել բուրժուական պետությունների միջամտությունների նաև այլ մեթոդները: Նա անգլիական պետության կողմից կաշառված և Անգլիայի շահերին ծառայող Դ. Բալտազարյանին «վաճառկան սրիկա» է կոչել: Նալբանդյանը մերկացրել է նաև կաթոլիկ ու բողոքական միսիոներներին, որոնք ըստ էության Արևմուտքի պետությունների նվաճողական պլանների պրոպագանդիստներն էին՝ հավատի ծառայի դիմակով:

Սակայն հայ ժողովրդի դեմոկրատական խավերը Թուրքիայում և Ռուսաստանում հակված էին դեպի Ռուսաստանը: Հայ առաջավոր մտածողներն ավելի հեռուն էին գնում՝ նրանք կողմնորոշվում էին դեպի ռուս ժողովուրդն ու ռուսական դեմոկրատական շրջանները: Այդ մտայնության ամենաականավոր ներկայացուցիչը ռուս հեղափոխական դեմոկրատներ Չերնիշևսկու, Գերցենի և մյուսների բարեկամ ու զինակից Մ. Նալբանդյանն էր, որ հայ իրականության մեջ առաջին անգամ որոշակիորեն տեսավ հեղափոխական Ռուսաստանը և հայ ժողովրդի ազատագրության հարցը կապեց ռուսական հեղափոխության հաղթանակի հետ:

Նալբանդյանը զգաց այն ճշմարտությունը, որ եվրոպական օրիենտացիայի էությունը հայ և մյուս ժողովուրդներին եվրոպական բուրժուական պետությունների ստրկության մատնելն էր: «Պարզամիտ» մարդիկ միայն, ասում է նա, կարող են հավատալ Արևմուտքի գաղութատիրական «այս կամ այն կառավարության» բարի կամքին ու խոստումներին: Իր սեփական շահերին հետամուտ և աշխարհակալական նկրտումներով ղեկավարվող բուրժուական պետությունները, որոնց համար բնորոշ է ազգեր նվաճելն ու ստրկացնելը, չեն կարող ճնշվածի իրավունքը պաշտպանել: Եթե իսկապես Անգլիան պետք է հայերին ազատեր ուրիշի լծից, թող ազատեր իր լծից Բրիտանական կայսրության ստրկացրած բազմաթիվ ազգերի, թող ազատեր Հնդկաստանը: Արևմուտքի հզոր ու «հայասեր» պետությունների զենքի հաջողության հետ հույսեր կապածներին Նալբանդյանը հասցնում է վերջին հզոր ու շառաչուն ապտակը. Եվրոպական տերությունները, գրում է նա, մշտապես օգնում են Թուրքիային, որ նա «դիմանա և չկործանվի: Որպեսզի Թյուրքիո ստրկացած հայ, սլավոն և հույն ժողովուրդը քաղաքակրթիչ հոգաբարձվից չզրկվի»: Ավելի լավ անհնար է ասել. եվրոպական պետությունները ոչ թե մտահոգված են փոքր ժողովուրդների ազատագրությամբ, այլ Թուրքիային օգնելով, որ ավելի կուռ լինեն այդ ժողովուրդների շղթաները: Թե ինչ

զարհուրելի հետևանքներով էր հղի եվրոպական պետությունների դիվանագիտական այդ նենգ ու ստոր խաղը մյուս ժողովուրդների և մասնավորաբար հայերի համար, հայտնի դարձավ տարիներ անց: Մի կողմից «հայասիրական» սուտ ու պատիր ճառեր, մյուս կողմից «քաղաքակրթիչ հոգաբարձու» Թուրքիայի ցեղասպան հրեշավոր պլաններ՝ եվրոպական պետությունների լուռ համաձայնությամբ ու թողտվությամբ: Արևմուտքի նկատմամբ Նալբանդյանի վերաբերմունքը ողջախոհ է ու համակողմանի: Բուրժուական Արևմուտքի անողոք քննադատը, մերկացնելով հանդերձ բուրժուական հասարակության արատներն ու հակասությունները, միաժամանակ տեսնում էր Արևմուտքում արագորեն զարգացող տեխնիկայի նվաճումները և անհրաժեշտ էր համարում, որ իր հայրենիքում ևս մանր արհեստավորական ձեռնարկությունների փոխարեն ստեղծվեն խոշոր գործարաններ ու փաբրիկաներ, օգտագործվեն գահավեժ հոսող գետերի ուժը, աշխատանքը հեշտացնող մեքենաները:

Դատապարտելով Արևմուտքի պետությունների գաղութատիրական քաղաքականությունը, Նալբանդյանը, գիտենք, սիրով ու ջերմությամբ է խոսել նաև այդ երկրների «հասարակ» ժողովրդի մասին, պաշտպանել է նրա սոցիալ-քաղաքական ու ազգային-ազատագրական շարժումները և բարձր է գնահատել Արևմուտքի հեղափոխական գործիչներին (Գարիբալդի, Մաձինի և ուրիշներ):

Այլ է Նալբանդյանի վերաբերմունքը, երբ նա խոսում է Արևմուտքի երկրների ամեն կարգի բռնակալների ու ռեակցիոն գործիչների մասին: Այս դեպքում պատմական առաջընթացի հեղափոխական մարտիկը հանդես է գալիս դատապարտության խոսքով՝ հաճախ նաև զայրույթով ու զզվանքով: Նապոլեոնին, օրինակ, նա համարում է «հանդուգն բռնավոր», «ապերախտ բռնակալ», «քաղաքական դարանագործ», որ «արտաքին հաղթությունների պարծանքով ճնշել և անհետ է կացուցանել ներքին ազատության ցանկությունը ֆրանսիական ազգի մեջ»: Պրուսական կայսր Ֆրիդրիկոս II «բռնակալ է և ժողովրդի համար շղթա դարբնող», ավստրիական կանցլեր Մետտերնիխը՝ «ընդհանրական և մասնավորապես ավստրիական բռնակալության ջերմեռանդ քուրմ», Անգլիայի թագավոր Կարլ I-ը՝ անգլիական ժողովրդի դավաճան և այլն:

Արևմուտքի երկրների մշակույթի ու գիտության գնահատության հարցերում ևս Նալբանդյանը եղել է միանգամայն ճիշտ դիրքերում: Նա, ինչպես և ռուս հեղափոխական դեմոկրատները, Արևմուտքի առաջավոր գիտության ու մշակույթի ամենակրքոտ պաշտպաններից ու պրոպագանդիստներից էր: Քննադատելով ու մերժելով այն ամենը, ինչ դեմ էր առաջընթացին, նա սիրով պաշտպանել է այդ գիտության ու մշակույթի ականավոր ներկայացուցիչներին: Նալբանդյանի երկերը ցույց են տալիս, որ հայ իրականության մեջ նա աննախընթաց հետաքրքրություն է հանդես բերել Եվրոպայի հոգևոր կյանքի, նրա «քաղաքակրթության պատմության» նկատմամբ: Հիշենք նրա «Հենրիկոս Թովմաս Բոքլի հիշատակին» բանաստեղծությունը՝ նվիրված Անգլիայի քաղաքակրթության պատմություն գրքի հեղինակին:

1861-ին արտասահման կատարած երկրորդ ճանապարհորդության ժամանակ նա, ի պատասխան իրեն ներկայացված այնպիսի մեղադրանքների, թե ինքը «սոցիալիստ է», «կարմիր հասարակապետական», «Ժ. Ժ. Ռուսսոյի դրությունքը ընդունող», գրել է. «Հարգել և պատվել հանճարը և բանականությունը ուսած լինելով վաղուց, անունից երկյուղ չունինք, ո՛չ Ռուսսոյի և ո՛չ Վոլթեռի, այո՛, պարտական իսկ ենք մեծարել և հարգել հանճարը և բանականությունը, այն աստվածային քուրաները, որոնցից առաջին անգամ դուրս թռան ազատության կայծերը:

Այո՛, գիտենք հարգել ոչ միայն Օուենը, Պրուդոնը, Ֆուրիեն և Ֆոհթը, այլև Շիլլերը, Գյոթեն, Ֆիխտեն, Կանտը և Հեգելը, ճնշված մարդկության այն անմահ բարեկամքը և անտարակույս, պ. Չամուռճյանի աչքում հերետիկոսները և հերձվածողները»: Ավելին՝ Նալբանդյանը իր համար «երջանկություն և փառք» է համարում մարդկության այդ անմահ բարեկամների հետ լինել և նրանց հետ միասին անհավատ ու հերետիկոս կոչվել, «քան թե բաց աչքով մեր մարդկությունը, մեր մարդկային ազատությունը և իրավունքը ուրանալով, պ. Չամուռճյանի հետ բռնվիլ բարոյական հարինքից և ճոճալ մի տղայամտութենից դեպի մյուս սոփեստությունը, մի սխոլաստիկականութենից դեպի մյուս աբեղայամտությունը»:

Ե՛վ Եվրոպայում եղած ժամանակ, և՛ Ռուսաստանում Նալբանդյանը մոտիկից ծանոթացել է Արևմուտքի գիտության ու մշակույթի նվաճումներին, հասարակական-քաղաքական ու փիլիսոփայական ուղղություններին, կրել է ազդեցություններ, սակայն մինչև կյանքի վերջը նրա համար հիմնականը մնաց հեղափոխական դեմոկրատիզմը:

Նալբանդյանի մեր նշած «երկակի գիծը» (Արևմուտքում և՛ դրական, և՛ բացասական երևույթներ տեսնելը), սակայն, երբեմն չի գիտակցվել, երբեմն էլ, դիտավորությամբ, դատապարտվել է (սա հակառակորդների բաժինն է): Միագիծ, Եվրոպայում միայն լավ կամ միայն վատ կողմեր որոնողները մեղադրում էին Հյուսիսափայլ ամսագիրը, թե նա նյութեր ընտրել չգիտե և «շատ անգամ տպում է եվրոպական վեպեր, որ բնավ մեզ, մեր ազգին վերաբերություն չունին: Հյուսիսափայլը աստղաբաշխության վրա է խոսում, ֆիզիոլոգիայի վրա, կամ ուրիշ այս ու այն գիտությանց վրա, որ մեր ազգին անհասկանալի են... Հյուսիսափայլը ազգային նյութեր չունի իր մեջ, այլ ինչ կա չկա եվրոպական լեզուներից է առնված»:

Այդ դիտողությունների հեղինակներին Նալբանդյանը կոչում է «ցախավելով հավաքած իմաստակներ», որոնք «աջ ու ձախ բրդում են» առանց հասկանալու իրենց պահանջների հնարավոր հետևանքները: Մի այնպիսի ազգի մարդկանց, ասում է նա, որոնք կամ ոչինչ չեն կարդում կամ կարդում են Պղնձե քաղաքի պատմությունը (հիշենք Աբովյանին, որ այդ գիրքը գնահատեց «հիմար» բառով), պետք է տալ ոչ թե «ձախ ու ծուռ թարգմանությունք, դարերով հետ մնացած գաղափարք և խավար ֆանատիկոսություն», այլ գնալ ժամանակի հետ, «փարատել» կույր և մարդատյաց մոլեռանդության խավարը և դրա փոխարեն քարոզել սեր, խղճի ազատություն, «մարդկային բանական արժանավորություն»: Այս սկզբունքից ելնելով, Նալբանդյանը Հյուսիսափայլը վեր է դասում ժամանակի բոլոր հայ պարբերականներից և պաշտպանության տակ է առնում ամսագրի «եվրոպամոլությունը»: Նալբանդյանն ըստ էության կռվում է ազգային սահմանափակության, առաջավոր ժողովուրդների գիտական ու մշակութային նվաճումներից սահմանանգծվելու միտումի դեմ՝ հանուն նորին, առաջավորին հաղորդակցվելու:

Մի առանձին թեմա է «Նալբանդյանը և արևմտաեվրոպական գրականությունը», որը, բարեբախտաբար, ենթարկվել է հանգամանալից ուսումնասիրության: Շատ է գրվել նաև Նալբանդյանի հասարակական-քաղաքական և փիլիսոփայական հայացքների մասին: Այս հանգամանքը և հոդվածի անձուկ սահմանները թելադրում են բավարարվել ասածով՝ հավելելով երկու խոսք. Նալբանդյանը բացառիկ սիրով ու խորին երախտագիտությամբ է արտահայտվել եվրոպական գրականության ու մշակույթի ականավոր դեմքերի մասին՝ մանավանդ առանձնացնելով Ռուսսոյին («Քեզ պատվում է հայի որդին»), Շիլլերին («հոգին ազատության, հոգին հայրենասիրության, հոգին զգալու բարին և վսեմականը» զարթեցնող ու սնուցող), Գյոթեին («ճնշված մարդկության անմահ բարեկամ»), Բայրոնին («հոյակապ լորդ Բայրոն», «հայոց ազգի բարոյական բարձրությունը» վկայող, ճնշված ժողովուրդների պաշտպան), էնցիկլոպեդիստներին («լայն հոգու, լայն սրտի և բազմակողմանի հայացքի» տեր մտածողներ), Հյուգոյին, Վոլտերին, Բերանժեին, Հայնեին, Վերդիին:

Արևմուտքի նկատմամբ ոչ միագիծ վերաբերմունքի վառ արտահայտություններ են «թարգմանության պրոբլեմի» նալբանդյանական դիտարկումները: Նա, օրինակ, դժգոհել է, որ փոխանակ հայ ժողովրդի համար շատ կարևոր նշանակություն ունեցող Ագապի վեպը տաճկերենից թարգմանելու, ֆրանսերենից թարգմանել են Ալ. Դյումայի Գոթական տաճարը, մի երկ, որի մասին բարձր կարծիքի չէին նաև Բելինսկին ու Չերնիշևսկին: Առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում Նալբանդյանի դիտողությունները Լամարտինի Les Harmonies ժողովածուի հայերեն թարգմանության մասին (թարգմանիչ Խ. Գալֆայան): Ընդ որում՝ այդ մասնակի թվացող հարցը նա այնքան խորը և համակողմանի է քննում, որ դուրս է գալիս մի գրքի մասին հարցի սահմաններից և շոշափում կարևորագույն պրոբլեմներ: Նալբանդյանը Լամարտինի Les Harmonies ժողովածուի թարգմանությունը «հին լեզվով»—գրաբարով, համարում է «ազգի համար» «մեռած գործ»: Նա, սակայն, ասել ենք, ավելի կարևոր է համարում թարգմանվելիք գործի ընտրության հարցը, ինչպես և այն նկատումը, թե ում համար է թարգմանվում: Որևէ գործ կարող է «արժանավորություն» ունենալ առհասարակ, բայց պիտանի չլինել մեր ժողովրդին, ավելին՝ վնասակար լինել: Նալբանդյանը վկայում է, որ իսկապես Լամարտինը Եվրոպայի արժանավոր բանաստեղծներից մեկն է, որ նրա գործերը արժանացել են «լուսավորյալ աշխարհի համակրությանը»: Սակայն, ավելացնում է նա, «մեզ օրինակ չէ այս դիպվածում եվրոպացին». «... Լամարտինի գործերը առաջին հարկավոր բաները չեն մի ազգի համար, որի մատենագրական չքավորությունը բարձրացած է մինչև ի Կոկյուսոն հայոց»: Ապա նա ավելի որոշակի է հայտնում իր միտքը. «Լամարթինի Les Harmonies տաղերգությունների յուրաքանչյուր տողերից փչում է միստիկականություն, որ ոչ միայն օգտակար չէ, այլ շատ և շատ վնասակար է, եթե Առողջ բանականությամբ աչքի տակ ձգենք մեր ազգի վիճակը»: Հետաքրքրական է, որ Լամարտինի այդ բանաստեղծությունների մասին գրեթե նույնպիսի գնահատական է տվել նաև Բելինսկին. Les Harmonies-ը հյուսված է «հառաչանքներից, ախերից, ամպերից, մշուշներից, գոլորշիներից, ստվերներից և ուրվականներից...»:

Նալբանդյանը մատերիալիզմի դիրքերից քննադատել է գերմանական իդեալիստական փիլիսոփայությունը և այն բանից, թե ինչն է

գնահատել ու ինչը մերժել, երևում է, որ նա ընթանում էր դեպի իր ժամանակի փիլիսոփայական մտքի ամենաառաջավոր բնագծերը: Բարձր գնահատելով Հեգելին («սքանչելի փիլիսոփա») և մասնավորաբար նրա դիալեկտիկան, Նալբանդյանը տակավին 1860-ին որոշակիորեն ձևակերպել է իր վերաբերմունքը գերմանական իդեալիստական փիլիսոփայության նկատմամբ: Սահմանազծվելով այդ փիլիսոփայությունից, նա ակնարկում է, որ այն դոգմա չէ և չի կարող պարտադրել անքննադատ վերաբերմունք: Ընդ որում և՛ ռուս հեղափոխական դեմոկրատները, և՛ Նալբանդյանը ցույց են տվել Հեգելի ուսմունքի ռեակցիոն կողմերը մանավանդ սոցիոլոգիայի ու քաղաքականության բնագավառներում:

Նալբանդյանը խիստ է արտահայտվել գաղութատիրության տեսաբանների, գաղութատերերի գիշատիչ մագիլները թավշյա ձեռնոցներով թաքցնելու ճիգերի դեմ: Նա արգահատանքով է գրել անգլիացի տնտեսագետքահանա Մալթուսի՝ ֆաշիզմի մարդատյաց «փիլիսոփայության» այդ հեռավոր նախահայրերից մեկի մասին, որը փորձում էր տեսականորեն հիմնավորել պատերազմների, համաճարակների ու մասսայական թշվառության անխուսափելիությունը երկրագնդի բնակչության որպես թե գերաճով և կենսամիջոցների թերաճով: Նալբանդյանի զայրույթը դուրս է հորդում ափերից, երբ բանտում կարդում է Մալթուսի հետևորդ բելգիացի տնտեսագետ Գ. Մոլինարիի Քաղաքատնտեսության դասընթաց գիրքը: Ազատության համար բանտ նետված հեղափոխականին նողկանք են պատճառում մարդկության «կրճատման» անհրաժեշտությունը, ինչպես և անազատությունն ու անարդարությունը հիմնավորելու նրա ճիգերը, և հեռևում է գնահատականը. «Իմ կյանքում այս երկից ավելի հիմար և ավելի ստոր գիրք հազիվ թե երբևէ կարդացած լինեմ»:

Հայ մեծ հեղափոխական դեմոկրատը և ազատության կրքոտ տրիբունը Արևմուտքի մասին խոսելիս ևս հանդես է եկել իբրև ամեն կարգի բռնակալության թշնամի և ազատության մարտիկ: Հայ իրականության մեջ նա առաջինը նկատեց, որ Արևմուտքը «հիվանդ է կապիտալիզմով»: Ու թեև իրենից անկախ պատճառներով նա չհասավ պրոլետարիատի դերի ըմբռնմանը, սակայն պատկազերծեց բուրժուական Արևմուտքի «երկրային դրախտի» առասպելը և բացահայտեց կապիտալիստական սիստեմի արատներն ու հակասությունները, նրա աշխարհակալական քաղաքականության ողջ հակամարդկային էությունը: Բարձր գնահատելով Արևմուտքի երկրների «մարդկության մեծ բարեկամ» գործիչներին ու մտածողներին, Նալբանդյանը խորին զայրույթով անարգանքի սյունին է գամել գաղութատիրությունն ու սարկացումն արդարացնող գիշատիչ և ռեակցիոն գաղափարախոսություններն ու նրանց ներկայացուցիչներին: Նալբանդյանի մտքերն ու քննադատությունը շատ տեսակետից պահել են իրենց ուժն ու արդիականությունը: Եվ այսօր, մեծ հեղափոխականի ու մտածողի ծննդյան 150-ամյակի օրերին, դժվար է չհիշել նրա իմաստուն խոսքը. «... հալածակա՞ն և աքսորակա՞ն են... ապագայի մարգարեքը և առաքյալքը»: Ինքը Նալբանդյանը ևս, իբրև ապագայի մարգարե ու առաքյալ, եղավ և՛ հալածական, և՛ աքսորական: Սակայն անբեկանելի է ապագայի սահմանած վճիռը՝ առաջընթացի թշնամիներին արգահատանք ու մոռացում, իր համար ընկած մարտիրոսներին՝ պաշտամունք ու հավերժություն:



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 03241 Պատվեր 2231 Թղթի չափսը 70×108¹/₁₆: Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 4/X—1979 թ.*

# Նոր գրքեր

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալիստական շինարարության մեջ կուսակցության ղեկավար դերի մասին: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ժողովրդական վերահսկիչի տեղեկատու: *«Հայաստան» հրատ., 1979:*

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը սովետական հասարակության սոցիալ-դասակարգային զարգացման հիմնական տենդենցների մասին: *ԵՊՀ հրատ., 1979:*

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը ազգային-ազատագրական շարժումների նոր վերելքի մասին: *ԵՊՀ հրատ., 1979:*

Ա. ՆԱԶԱՐՅԱՆ— ՀՍՍՀ մեքենաշինության տեխնիկատնտեսական մակարդակի բարձրացման հարցեր: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ե. ՄԱԿԱՐՅԱՆ— Աշխատանքի կազմակերպման մակարդակի քանակական գնահատումը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ— Հայ գրական քննադատությունը 19-րդ դարի 70—80-ական թվականներին: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Խ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ— Բնության պահպանության հիմնական խնդիրները: *«Հայաստան» հրատ., 1979:*

Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին: Բյուզանդական աղբյուրներ— Գ: Հովհաննես Սկիլիցես: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Գ. ՏԵՐ-ՄԿՐՏՉՅԱՆ— Հայագիտական ուսումնասիրություններ: *Գիրք Ա: ԵՊՀ հրատ., 1979:*

Ս. ՍԱՐԻՆՅԱՆ— Գեղարվեստական գրականության պատմականությունը: *Ե., «Սովետական գրող», 1979:*

В. И. ЛЕНИН — **Экономика и политика в эпоху диктатуры пролетариата.** М., Политиздат, 1979.

**Переписка В. И. Ленина и руководимых им учреждений РСДРП с партийными организациями 1905—1907 гг.** Сборник документов В 5-ти томах, т. I, книга I, М., «Мысль», 1979.

Н. ВИНОГРАДОВ — **Коммунисты в Советах.** М., Политиздат, 1979.

А. ВЛАСОВА — **Забота о действенности партийной учебы.** М., «Московский рабочий», 1979.

**Материалы лектору, пропагандисту, агитатору,** М., «Знание» 1979.

**Социальная психология личности.** Коллектив авторов. М., «Наука», 1979.

А. ЦЕПИН и А. ЩИГЛИК — **Государство и профсоюзы в развитом социалистическом обществе.** М., Профиздат, 1979.

**Демократия и право в развитом социалистическом обществе.** М., «Мысль», 1979.

Л. КАРАПЕТЯН —**Научное управление и демократия.** М., Политиздат, 1979.

**Критика современных мелкобуржуазных экономических теорий.** М., «Экономика», 1979.

В. ФЕРЕНЦ — **Путь маоистов.** (Критика буржуазной идеологии и ревизионизма). Перевод с венгерского. М., «Прогресс», 1979.

**Территориальные притязания Пекина: современность, история.** Сборник статей. М., Политиздат, 1979.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՆԱՍՆԱԲՈՒՅԺԻ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՕԳՆԱԿԱՆԸ

*Լեհաստանի գյուղատնտեսական ակադեմիայի գիտնականները Վարշավայի պոլիտեխնիկական ինստիտուտի աշխատակիցների հետ մշակել են խոշոր եղջյուրավոր անասունների մոտ սպիտակարյունության վաղ ճանաչման սարքեր և մեթոդիկա։ Այդ հիվանդության զարգացման սկզբնական փուլում անասունների բջիջներում կատարվում են որոշակի փոփոխություններ, որոնք և որսում են էլեկտրոնային սարքերը։*

*Անասնաբույժ-գիտնականների հայտնագործությունը գրավել է նաև բժիշկների ուշադրությունը. չի բացառվում, որ այդ մեթոդիկան և սարքերը կարելի է կիրառել մարդու մի շարք հիվանդությունների վաղ ախտորոշման դեպքում։*

## ԱՎՏՈՄԱՏ ԿԱԹՆԱԳՈՐԾԱՐԱՆ

*Շվեդիայում կառուցված ավտոմատ կաթնագործարանի տարեկան արտադրողականությունը 100 միլիոն լիտր է։ Մեկ դիսպետչեր-օպերատորը կառավարում է բոլոր գործողությունները՝ սկսած հում կաթի ընդունումից մինչև թղթե տուփերում պաստերիզացված կաթի առաքումը։*

*Գործարանում կիրառվում է «Ալֆա-Լավալ» ֆիրմայի կառավարման սիստեմը։ Օպերատորի պուլտի վրա կա ստեղնաշար՝ հրամանը ԷՀՄ-ին հաղորդելու համար, որն այդ հրամանի համաձայն ազդանշաններ է տալիս կատարող մեխանիզմներին և այլ սարքերի։ Պատրաստի արտադրանքի փոխադրումն ու պահեստավորումը ևս կատարվում են առանց մարդու անմիջական մասնակցության։ Էլեկտրասայլակները կառավարման ազդանշանները ստանում են օդային անտենայի և հատակին մոնտաժված հաղորդիչների փակ շղթայի միջոցով։ Միկրո-ԷՀՄ-ները էլեկտրասայլակների վրա կարգավորում են շարժման արագությունը, որոշում սայլակի տեղը և օպերատորական պուլտին հաղորդում պատրաստի արտադրանքի փոխադրման ու տեղավորման մասին։*

*Ավտոմատ գործարանի շահագործման փորձը ցույց է տալիս, որ արտադրության նման եղանակը, սովորականի համեմատությամբ, փաստորեն պահպանում է կաթի մաքրությունը, դրա սննդարար հատկությունները և կրճատում պաստերիզացման ու փաթեթավորման միջև ընկած ժամանակը։*

## ՀՍԿԱ ԷՔՍԿԱՎԱՏՈՐ

*Արևմտագերմանական Կրուպպ մեքենաշինական ֆիրման նախագծել ու արտադրում է ռոտորային նոր էքսկավատոր՝ փորման աշխատանքների և բաց եղանակով քարածուխ արդյունահանելու նպատակով։ Աշխարհում այդ խոշորագույն մեքենան նախատեսված է քարածխի արդյունահանման և համապատասխան վայրում այն բեռնաթափելու համար։ Դրա արտադրողականությունը մեկ հերթափոխում 240 հազար խոր. մետր է։ Մեքենայի բարձրությունն է 84 մ, երկարությունը՝ 225 մ, բանող անիվների տրամագիծը՝ 21 մ, քաշը՝ 13.000 տոննա։ Այն աշխատում է 110 էլեկտրաշարժիչներով, 16.600 կիլովատ ընդհանուր հզորությամբ։*

## ՆՈՐ ՊԱՏՐԱՍՏՈՒԿ

*Խարկովի քիմիադեղագործական գիտահետազոտական ինստիտուտի մասնագետները արագարուժիչ, հակաբորբոքային, հականեխային, վիտամինային և ցավազերծ միջոցների հիման վրա ստեղծել են աէրոզոլային լիվիան պատրաստուկը՝ այրված վերքերի բուժման համար։ Փորձարկումները ցույց են տվել նոր միջոցի բուժական մեծ ակտիվությունը։ Պատրաստուկը 2—3 անգամ օգտագործելուց հետո այրվածքի տեղում առաջանում է չոր կեղև, և վերքն արագորեն բուժվում է։*